ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

11

ՆՈՅԵՄԲԵՐ

ԵՐԵՎԱՆ 1957



ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 11
ՆՈՅԵՄԲԵՐ
1957 Թ.

★

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ — ТЕОРЕТИЧЕСКИЙ И
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXIV
ՏԱՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

СОДЕРЖАНИЕ







# ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ԼՈՒՍԱՎՈՐ ՈՒՂԻՆԵՐՈՎ

*Քառասուն տարի առաջ մարդկության ամենառևոլյուցիոն ջոկատ ռուսական պրոլետարիատը լենինյան պարտիայի առաջնորդությամբ, վերջին և վճռական մարտն սկսեց բուրժուական կեղեքման և անարդարության վրա հիմնված հասարակարգի դեմ։ Հիմնիվեր խորտակելով կալվածատերերի ու կապիտալիստների դարավոր լուծը՝ հաղթանակած Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան մարդկության ընթացքն ուղղեց նոր, մինչ այդ բոլորովին անհայտ հունով։ Բոլշևիկյան պարտիայի անվեհեր մարտիկների և տասնյակ միլիոնավոր աշխատավորների գրոհով կործանվեց իմպերիալիզմի ռուսական բաստիոնը ու աշխարհի մեկ վեցերորդ մասում հիմնվեցին սովետական կարգեր։*

*Սովետական իշխանության աշխարհաշեն կոչերը և դեկրետները (խաղաղության, հողի և այլնի մասին) կայծակնաթափ տարածվեցին մեր Հայրենիքովը մեկ, հանդիսացան չարքաշ ժողովուրդների սոցիալական, ազգային և հոգևոր իղձերի, շահագործման ու թշվառության կապանքներից ազատագրվելու խորհրդանիշները։ Ազդարարելով համաշխարհային իմպերիալիզմի կործանման և սոցիալիզմի դարագլխի սկիզբը, հոկտեմբերյան թեժ մարտերում ծնված պրոլետարիատի դիկտատուրան՝ բանվորների և աշխատավոր գյուղացիների առաջին իշխանությունը մարդկությանը ցույց տվեց իմպերիալիստական սպանդից դուրս գալու ելքը։ Պատմության մեջ ամենաարմատական, ամենավիթխարի ռևոլյուցիան ոչ միայն ազդարարեց, այլև սկսեց կենսագործել սոցիալիզմի, ժողովուրդների կատարյալ իրավահավասարության, խաղաղ աշխատանքի թագավորության վեհ գաղափարները։*

*Մեր երկրում տապալված կալվածատերերին ու կապիտալիստներին անհապաղ օգնության հասան միջազգային իմպերիալիզմի արյունախում հորդաները։ Ռևոլյուցիայի նորածին հսկային «օրորոցում խեղդելու» մոլուցքով տարված՝ բուրժուական տասնչորս տերություն մահվան օղակ նետեցին հաղթանակած ժողովրդին։ Սակայն ձեռնարկված բոլոր արշավանքներն ու բլոկադաները հիմնովին ջախջախվեցին զինված ժողովրդի, Կարմիր Բանակի կողմից։ Օտարերկրյա իմպերիալիստների և սպիտակգվարդիականների հարձակումներն ու մեքենայությունները ի դերև ելան ոչ միայն Սովետական ռեսպուբլիկայի աշխատավորների անձնազոհ պայքարի, այլև բոլոր երկրների բանվոր-գյուղացիների և առաջադեմ մտավորականության անմիջական օգնության շնորհիվ։*

*Անլուր տառապանքների, անհամար զոհերի և անպատում սխրագործությունների ճանապարհով ռուսական արի պրոլետարիատը մեծ Լենինի առաջնորդությամբ հիրավի դարձավ նոր կյանքի անպարտելի ռահվիրան և իր հիմնած սովետական կարգով ուղիներ հարթեց ամբողջ մարդկության առաջխաղացման համար։*

*Իր նպատակների վեհությամբ, զանգվածների ընդգրկման ծավալով և թափով իրոք միջազգային սոցիալիստական ռևոլյուցիայի կենսաբեր ղողանջները դարավոր նիրհից ոտքի հանեցին իմպերիալիզմի գաղութային ստրուկներին, սկսվեց իմպերիալիզմի սիստեմի փլուզումը։*

*Կոմունիստական պարտիան Հոկտեմբերի նավը վարելով իմաստուն Լենինի կանխագծած ուղիով, հանգեցրեց նրան, որ կազմավորվեց սոցիալիստական ազգությունների մի կուռ միություն, որը ջախջախելով արյունարբու ֆաշիզմը, է՛լ ավելի արագացրեց կապիտալիզմի մայրամուտը։ Մեծ Հոկտեմբերի կենսատու ճառագայթներով ողողված՝ սոցիալիզմի հունը մտան Չինաստանն ու Չեխոսլովակիան, Ալբանիան և Հարավսլավիան, Լեհաստանն ու Ռումինիան, Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկան, Կորեական Ժողովրդա-Դեմոկրատական Ռեսպուբլիկան, Բուլղարիան, Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկան և Վիետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկան։ Այսպիսով, սոցիալիստական ռևոլյուցիան, որի դրոշի ներքո կանգնեց ավելի քան 900 միլիոն մարդ, հզորանալով դարձավ համաշխարհային մի սիստեմ, որը հաջողությամբ մրցում է կապիտալիզմի հետ։ Վաղուց ի վեր սոցիալիստական լագերը դարձել է անպարտելի մի բանակ, որն ուղղություն և լիցք է տալիս ամբողջ մարդկությանը՝ կապիտալի ստրկությունից ազատագրվելու համար մղվող պայքարում։*

*Հանդիսանալով մարքսիզմ-լենինիզմի վեհ գաղափարների միջազգային հաղթանակը՝ Հոկտեմբերյան ռևոլյուցիան հաստատեց այն ճշմարտությունը, որ պատմության շարժիչ զսպանակը, սոցիալիստական կյանքի բուն պրոգրեսի խթանող ուժը նյութական բարիքներ կերտող աշխատավորական հոծ զանգվածներն են։*

*Սոցիալիստական ռևոլյուցիան մեր երկրում չէր հաղթանակի, եթե պարտիան անողոք պայքար չմղեր բուրժուական-նացիոնալիստական, էսէռական ու մենշևիկյան և այլ մանր-բուրժուական պարտիաների ու հոսանքների դեմ, եթե չմերկացներ ու չհաղթահարեր բանվորական շարժման ներսում առաջացած օպորտունիստական, ռևիզիոնիստական, աղանդավորական և այլ տարատեսակները։ Պահպանելով պարտիայի պողպատյա միաձուլությունը, ընթանալով իր մեծ առաջնորդի՝ Լենինի նշած ուղիով՝ ՍՄԿՊ-ն պատվով հաղթահարեց թե՛ աջերի և թե՛ «ձախ»-երի դիմադրությունը և մեր երկիրը դրեց սոցիալիզմի մայրուղու վրա։*

*Այսօր, երբ ամբողջ աշխարհի բանվոր դասակարգն ու աշխատավորությունը մեզ հետ միասին բուռն ոգևորությամբ տոնեցին Մեծ Հոկտեմբերի քառասնամյակը, որքա՜ն իմաստալի և որքա՜ն հարազատ են հնչում ռևոլյուցիայի մեծագույն վարպետի խոսքերը.*

*«...Մենք իրավունք ունենք հպարտանալու և հպարտանում ենք նրանով,— ասել է Վ. Ի. Լենինը,— որ մեզ երջանկություն բաժին ընկավ սկսելու Սովետական պետության կառուցումը, սկսելու դրանով համաշխարհային պատմության նոր դարաշրջան, այն նոր դասակարգի տիրապետության դարաշրջանը, որը ճնշված է բոլոր կապիտալիստական երկրներում և ամենուրեք գնում է դեպի նոր կյանք, դեպի հաղթանակ բուրժուազիայի դեմ, դեպի պրոլետարիատի դիկտատուրան, դեպի մարդկության ազատագրումը կապիտալի լծից, իմպերիալիստական պատերազմներից» (Երկեր, հատ. 33, էջ 42)։*



*Հոկտեմբերի պատմական հաղթանակից դեռ մի քանի տարի առաջ Լենինը մարգարեական կանխատեսությամբ ազդարարեց իմպերիալիստական պատերազմի փակուղուց մարդկության օրինաչափ ու սոցիալիստական ելքը։*

*«Պատերազմը ստեղծել է այնպիսի անընդգրկելի ճգնաժամ, այնպես է լարել ժողովրդի նյութական ու բարոյական ուժերը, այնպիսի հարվածներ է հասցրել արդի ամբողջ հասարակական կազմակերպությանը,— գրել է Լենինը,— որ մարդկությունը կանգնել է մի ընտրության առջև՝ կա՛մ կործանվել, կա՛մ իր բախտը հանձնել ամենառևոլյուցիոն դասակարգին՝ ամենաարագ ու ամենաարմատական ձևով արտադրության ավելի բարձր եղանակի անցնելու համար» (Երկեր, հատ. 25, էջ 466)։*

*Ինչի՞ց էր բխում Լենինի այս գիտական կանխատեսությունը։ Այն բանից, որ ըստ իմպերիալիզմի նրա հոյակապ վերլուծության, քսաներորդ դարում, ֆինանսական օլիգարխիայի գերիշխանության ժամանակաշրջանում, տեխնիկայի մեծ զարգացումը, արտադրության համակենտրոնացումն առաջ բերին ոչ միայն աշխատանքի արտադրողականության վիթխարի աճ և նյութական արժեքների աճելի կուտակում, այլև մոնոպոլիա, որի բռնացող իշխանության ներքո ծայր աստիճան սրվել էին իմպերիալիզմի բախումները։ Տարված գերշահույթներ կորզելու մոլուցքով՝ մարդկության պրոգրեսը կասեցնող մի խումբ իմպերիալիստներ միջազգային պրոլետարիատին և գաղութային ժողովուրդներին հասցրել են խոր թշվառության։ Պարբերաբար կրկնվող ճգնաժամերը, գործազուրկների բանակի հորդումը, կրկնվող պատերազմների աղետներն ու սարսափները մոնոպոլիստական կապիտալիզմի փուլում մարդկությանը մոտեցրին սոցիալիզմի շեմքին։*

*Ելնելով իմպերիալիզմին ներհատուկ տնտեսական ու քաղաքական անհամաչափ զարգացման իր իսկ հայտնագործած օրենքից՝ Լենինը գիտականորեն հիմնավորեց սկզբում մի քանի կամ նույնիսկ առանձին վերցրած մեկ երկրում սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթության հնարավորությունը։ Ռուսաստանն էլ այն երկիրն էր, որն իմպերիալիզմի ծվատող հակասությունների առավել խճճված կծիկն էր կազմում. բոլոր տեսակի ճնշումների զուգորդումը ցարական ինքնակալության ռուսիկանական դեսպոտիզմի հետ նոր ուժով և խորությամբ սրեց դասակարգային կռիվը Ռուսաստանում։ Դառնալով XX դարի միջազգային ռևոլյուցիոն շարժման մրրիկների օրրան՝ Ռուսաստանը 1905—1907 թթ. ռևոլյուցիոն հուժկու ալիքով ազդարարեց կապիտալիզմի «խաղաղ» զարգացման ավարտը և սոցիալիստական ռևոլյուցիայի նոր դարագլուխը։*

*1917 թվականի փետրվարին բռնկված բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիան կործանեց ցարական ինքնակալությունը։ Ստեղծված ժամանակավոր ռեակցիոն կառավարությունը շարունակեց իմպերիալիստական պատերազմը, տանջահար ժողովրդին չտալով ո՛չ խաղաղություն, ո՛չ հող և ո՛չ էլ հաց։ Մենշևիկների և էսէռների դավաճանական քաղաքականության շնորհիվ երկրում ստեղծված Սովետները դարձան ժամանակավոր կառավարության սատարող օրգաններ, դադարելով բանվորների, զինվորների և գյուղացիության շահերի թարգմանը լինելուց։ Մեր պարտիայի ջանքերը՝ ռևոլյուցիան մղել խաղաղ ճանապարհով՝ չպսակվեցին հաջողությամբ։ Սովետներում մեծամասնություն կազմող էսէռներն ու մենշևիկները, աջակցելով կալվածատերերին ու բուրժուազիային, հասան այն ամոթալի վիճակին, երբ Պետրոգրադի բանվոր-*

*ների խաղաղ ցույցը գնդակոծվեց, որով և ավարտվեց երկիշխանության շրջանը։*

*Բուրժուա-կալվածատիրական ժամանակավոր կառավարության վարած ռեակցիոն քաղաքականությունը, կոռնիլովյան խռովությունն ու սանձարձակ ռեակցիան մի քանի ամսում ցրեցին մասսաների մանր-բուրժուական պատրանքները, բարձրացրին նրանց ռևոլյուցիոն գիտակցությունն ու ցասումը։ Մասսաներն սկսեցին ըմբռնել, որ ռուսական բուրժուազիան անսքող գործարք է կնքում գերմանական իմպերիալիզմի հետ և փորձում է կայզերական զորքերի սվիններով ջախջախել ռևոլյուցիոն Պետրոգրադը։ Անցնելով ծանր փորձությունների և հիասթափությունների բովից՝ աշխատավորական հոծ զանգվածներն անվերապահորեն փարեցին բոլշևիկյան դրոշին։ Պետրոգրադի և Մոսկվայի Սովետներում ստանալով ձայների մեծամասնություն՝ մեր պարտիան սոցիալիստական ռևոլյուցիայի իրագործման կուրսը որդեգրեց։*

*Առաջնորդվելով Լենինի հստակ ցուցումներով՝ պարտիայի VI համագումարը վճռեց պատրաստվել զինված ապստամբությամբ գրավելու իշխանությունը։ Փշրելով հակառևոլյուցիոն ուժերի և կապիտուլյանտների, թերահավատների (Պրեոբրաժենսկու, Զինովևի, Կամենևի) կատաղի դիմադրությունը, բոլշևիկների պարտիան զինեց ու կոփեց ռևոլյուցիայի գնդերը մոտալուտ գոտեմարտերի համար։*

*Եվ ահա, 1917 թվականի հոկտեմբերի 25-ի (նոյեմբերի 7-ի) պատմական օրը, մեր երկրի բանվորներն ու զինվորները տապալելով բուրժուական դիկտատուրան, սովետական կարգ հաստատեցին։ Նորաստեղծ բանվորա-գյուղացիական կառավարության գլուխը կանգնեց նրա ստեղծողն ու հիմնադիրը՝ Վ. Ի. Լենինը։ Հողի և հաշտության դեկրետների անհապաղ կենսագործմամբ իրականացավ միլիոնավոր աշխատավորների դարավոր իղձը։ Մի քանի շաբաթվա ընթացքում ամբողջ երկրում հաղթանակած սոցիալիստական ռևոլյուցիան ապացուցեց իր խոր ժողովրդական բնույթը։ Ակտիվորեն նպաստելով ռևոլյուցիոն պրոլետարիատի դիկտատուրայի՝ Սովետների ամրապնդման մեծ գործին, Ռուսաստանի բոլոր ազգերն ու ժողովուրդները իրենց փայլուն ապագայի հիմքերը դրին։*

*Լինելով մասսաների ռևոլյուցիոն ստեղծագործության մարմնացումը՝ Սովետները, իբրև աշխարհի ամենառևոլյուցիոն և ամենադեմոկրատիկ իշխանություն, արտադրության սոցիալիստական եղանակի արմատավորման ու հաղթության հզորագույն միջոցը դարձան։ Հենվելով աշխատավոր գյուղացիության հետ անխախտ դաշինքի վրա՝ հաղթանակած պրոլետարիատը հանրային սեփականություն դարձրեց արտադրամիջոցները. վերացնելով մարդու շահագործումը, լայն ուղիներ հարթեց սոցիալիստական արտադրահարաբերությունների զարգացման համար։ Սովետների հաստատմամբ մարդկությունը թևակոխեց պրոլետարիատի քաղաքական տիրապետության դարաշրջանը, որը նշանավորվեց ոչ միայն սոցիալիստական տնտեսության ծաղկմամբ, այլև ամենաբարձր դեմոկրատիայի կիրառմամբ, կուլտուրական խոր ռևոլյուցիայով։ Ամբողջ աշխարհով մեկ Լենինն ազդարարեց.*

*«Պրոլետարական դեմոկրատիան ճնշում է շահագործողներին, բուրժուազիային—և դրա համար էլ չի կեղծավորում, ազատություն ու դեմոկրատիա* չի խոստանում նրանց — *իսկ աշխատավորներին տալիս է* իսկական դեմոկրատիա» *(Երկեր, հատ. 28, էջ 120—121)։*



*Միջազգային բուրժուազիայի պնակալեզների վայրահաչոցները սովետական դեմոկրատիայի դեմ՝ բնավ չեն կարող հերքել այն ճշմարտությունը, որ Մեծ Հոկտեմբերը մեր երկրում իշխանության ու հարստության տեր ու տնօրեն կարգեց բանվորներին և աշխատավոր գյուղացիությանը, որի հիման վրա էլ ծաղկում է նրա դեմոկրատիան։ Սոցիալիստական դեմոկրատիայի գերազանցության օգտին է խոսում բոլոր ազգությունների սերտ եղբայրությունը, ազգային ատելության վերացումը և իրական հավասարությունը ՍՍՌ Միության բազմաթիվ ազգերի միջև։ Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիան մեր երկիրը դարձնելով սոցիալիզմի անառիկ ամրոց, ՍՍՌՄ բոլոր ժողովուրդներին անքակտելի կապերով միավորեց եղբայրական մի ընտանիքում։*

*Հաղթելով քաղաքացիական արյունահեղ մարտերում, ջախջախելով իմպերիալիստների բոլոր հարձակումները, հենված իր անպարտելի Կարմիր Բանակի ուժին, միջազգային ռևոլյուցիոն ուժերի օգնությամբ մեր երկրի աշխատավորությունը ձեռնարկեց սոցիալիստական խաղաղ շինարարության վեհ գործին։*

*Անցած քառասուն տարիները եկան հաստատելու Լենինի մարգարեական խոսքերը մեր ռևոլյուցիայի անպարտելիության մասին։*

*«Երբեք չեն հաղթի այն ժողովրդին, որի մեջ բանվորներն ու գյուղացիներն իրենց մեծամասնությամբ իմացել, զգացել և տեսել են, որ իրենք պաշտպանում են իրենց, Սովետական իշխանությունը՝ աշխատավորների իշխանությունը, որ պաշտպանում են այն գործը, որի հաղթանակը իրենց և իրենց զավակների համար կապահովի կուլտուրայի բոլոր բարիքներից, մարդկային աշխատանքի բոլոր ստեղծագործություններից օգտվելու հնարավորությունը» (Երկեր, հատ. 29, էջ 386)։*

*Անհամար փորձություններ և դժվարություններ հաղթահարելով, քայլ առ քայլ ամրապնդելով սոցիալիստական կարգերը՝ ՍՍՌՄ հրաշագործ ժողովուրդներն իրենց կրծքով հարթեցին կոմունիզմի ուղին և այդպիսով նոր հասարակության կառուցման իրենց հարուստ փորձով այլ երկրների համար սոցիալիզմի կերտման որոշ ու պայծառ ուղիներ հարթեցին։ Բռնելով երկրի արագ ինդուստրացման ուղին՝ ՍՄԿՊ լենինյան ղեկավարության շնորհիվ մեր ժողովուրդներն իրենց ստեղծարար աշխատանքով երկիրը դարձրին հզոր և անպարտելի։ Կենսագործելով Հայրենիքի էլեկտրիֆիկացման լենինյան պլանը, մենք ունեցանք խոշորագույն մեքենաշինություն և առհասարակ վիթխարի տեխնիկա, առաջավոր գիտություն և կյանքը վերափոխող միլիոնավոր և տասնյակ միլիոնավոր բարձրորակ կադրեր։*

*Երկրի էլեկտրիֆիկացման հոյակապ ծրագրի բաղկացուցիչ մասն էր ոչ միայն մասնատված 25 միլիոն գյուղացիական տնտեսությունների սոցիալիստական վերափոխումը, այլև կուլտուրական ռևոլյուցիան։ Այս երկու վիթխարի հարցերն էլ վաղուց լուծվել են մեծ հաջողությամբ։ Տապալված շահագործող դասակարգերի վայրագ դիմադրության, կապիտալիստական օղակման և կուլակային խռովությունների պայմաններում իրոք դժվարին էր սոցիալիզմի կառուցումը։ Այդ դժվարությունը սաստկանում էր ոչ միայն այն պատճառով, որ հին մասնագետների որոշ մասը թշնամաբար դիմավորեց սոցիալիզմին, այլև նրա համար, որ մեր պարտիայի ներսում կային լենինիզմին թշնամի հոսանքներ (տրոցկիստներ, բուխարինականներ, նացիոնալ-ուկլոնիստներ), որոնք կատաղի դիմադրում էին մեր առաջընթացին։ Ջախ-*

ջախելով բոլոր կարգի հակալենինյան հոսանքները՝ պարտիան ապահովեց մեր երկրին համաշխարհային հաղթանակ։

Բնորոշ է, որ այն տարիներին, երբ ԱՄՆ-ը ծանր ճգնաժամի հետևանքով կորցրին 300 միլիարդ դոլարի հարստություն (1929—1933 թթ.), երբ կապիտալիստական ողջ աշխարհի արտադրանքը կրճատվեց 44 տոկոսով, երբ գործազուրկների քաղցած բանակը հասավ 25 միլիոն մարդու, ՍՍՌՄ-ն ունենալով զարգացման բարձր տեմպեր՝ ընթացավ մեծ վերելքի ուղիներով։ Տակավին առաջին հնգամյակում տնտեսական-տեխնիկական նորագույն բազայի հիման վրա մեկընդմիշտ ամրացավ հաղթանակած կոլտնտեսային կարգը, մեր ռևոլյուցիայի դժվարագույն խնդիրը լուծվեց հօգուտ սոցիալիզմի։ Հանրային սեփականության բուռն զարգացման պայմաններում կուլակությունը վերացվեց իբրև դասակարգ և սոցիալիզմը հաղթեց գյուղում վերջնականապես։

Կարճ ժամանակամիջոցում մեր երկիրը դպրոցների, բարձրագույն ուսումնական հաստատությունների, կուլտուր-լուսավորական տասնյակ հազարավոր հիմնարկների ցանցով պատվեց։ Բարձրացավ ամբողջ ժողովրդի կուլտուրական մակարդակը։

Այսպիսով, Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի գլխավոր արգասիքը սոցիալիզմի կառուցումն է մեր երկրում:

Սոցիալիստական կացութաձևի վերջնական հաղթանակը գյուղում հանրային տնտեսության բուռն աճման նոր հեռանկարներ ստեղծեց։ Վերացնելով մարդու շահագործումը՝ սոցիալիստական ռևոլյուցիան հսկայական չափերով առաջ մղեց ժողովրդական տնտեսությունը, բարձրացրեց աշխատավորության կենսամակարդակը, խթանեց ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրայի ծաղկմանը։ Մեծ չափով բարձրացավ սովետական բանվորության տեխնիկական որակավորումը և կուլտուրական մակարդակը։ Նա դարձավ իրոք նոր դասակարգ, որը ժողովրդի հետ միասին առաջ է մղում մեր սոցիալիստական Հայրենիքը։ Մեր բանվորների և կոլտնտեսականների ծոցից գոյացավ նոր, սովետական ինտելիգենցիա, որը հավատարմորեն աքնում է հանուն մեր ժողովրդի բարօրության ու երջանկության։

Դասակարգային կառուցվածքի արմատական փոփոխությամբ մեր երկրում ամրապնդվեց բանվորների և գյուղացիության դաշինքը, ժողովուրդն իր բարոյա-քաղաքական միասնությամբ դարձավ անպարտելի և հրաշագործ ուժ, որը սոցիալիստական կարգի զարգացման փայլուն առհավատչյան է այսօր և առմիշտ։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակի անգնահատելի արգասիքներից մեկն էլ այն է, որ վերջնականապես լուծվեց ազգային, այդ թվում և «հայկական» հարցը։ Կարճ ժամանակամիջոցում ռուս ժողովրդի անշահախնդիր օգնությամբ վերացավ ՍՍՌՄ բոլոր ազգերի տնտեսական, կուլտուրական հետամնացությունը, հաստատվեց ազգերի կատարյալ իրավահավասարություն և երբեմնի բուրժուական ազգերը դարձան սոցիալիստական ազգեր։ Ժողովուրդների եղբայրության հիման վրա է՛լ ավելի հզորացավ ու գեղեցկացավ մեր մեծ Հայրենիքը։

Սոցիալիզմի հաղթության հետևանքով մեծ չափերով աճեց մեր ժողովրդի բարեկեցությունը։ Իրագործվեց քաղաքացիների աշխատանքի, կրթության, հանգստի, ապահով ծերության ռեալ իրավունքը։ Ազատագրելով կնոջը դարավոր կապանքներից՝ Հոկտեմբերը նրա զարգացման համար անսահման



հնարավորություններ ստեղծեց։ Հանդիսանալով մարդկանց հասարակական կեցության վիթխարի հեղաբեկում՝ սոցիալիստական ռևոլյուցիան խորապես փոխեց նաև մարդկանց գիտակցությունն ու հոգեբանությունը։ Ծնվեց նոր կյանք կերտող սովետական մարդը, որի կերպարի բնորոշ գծերն են՝ սովետական հայրենասիրություն, ինտերնացիոնալիզմ, սոցիալիստական վերաբերմունք հանրային սեփականության և աշխատանքի հանդեպ։ Այդ սոցիալիստական գիտակցության վառ մարմնացումն է մեր երկրում վաղուց արմատավորված սոցիալիստական մրցությունը, որը մեր զարգացման հզորագույն խթանն է։

Հայտնի է, որ մեր երկրի սոցիալիստական խաղաղ շինարարությունն ընդհատվեց իմպերիալիստական ֆաշիստական Գերմանիայի ռազմական հարձակմամբ, որի պատճառով մեր ժողովուրդը անհամար աղետներ կրեց։ Տասնյակ միլիոնավոր մարդկանց տանջանքների և վիթխարի զոհերի միակ պատասխանատուն համաշխարհային իմպերիալիզմն է՝ հիտլերյան հրոսակախմբերին սնուցողը։

Հայրենական պատերազմը մեր երկրի ապրած ամենադաժան կռիվն էր։ Սակայն հենց այդ պատերազմի տարիներին վառ կերպով դրսևորվեց մեր ժողովրդի քաջակորով ոգին, նրա անկոտրում կամքը և նվիրվածությունը սոցիալիզմի գործին։ Հայրենական Մեծ պատերազմում մի անգամ ևս երևացին սոցիալիստական կարգի արմատական և բարոյա-քաղաքական մեծ առավելությունները։

Սոցիալիստական ռևոլյուցիայի ալեծուփ օրերին, թե քաղաքացիական կռիվների և ինտերվենցիայի բախտորոշ տարիներին, սոցիալիստական ինդուստրացման, կոլեկտիվացման, թե ֆաշիզմի դեմ մղվող մահու և կենաց ճակատամարտերում՝ Լենինի կոփած Կոմունիստական պարտիան էր, որ իմաստուն ու համարձակ վարում էր մեր նավը դեպի սոցիալիզմի ափը։ Հայրենական պատերազմի տարիներին մի անգամ ևս երևաց պարտիայի սերտ կապը ժողովրդի հետ, ժողովուրդ, որը միշտ էլ անձնվիրաբար է արձագանքել իր հարազատ պարտիայի կենսատեղծ կոչերին։ Ֆաշիստական հրեշի ջախջախումը ավելի բարձրացրեց Սովետական Միության հեղինակությունը ողջ աշխարհում, նրա վճռողական դերը միջազգային կյանքում։

Սովետական ժողովուրդը կարճ ժամանակամիջոցում բուժելով պատերազմի ծանր վերքերը՝ արագ կերպով վերականգնեց տնտեսությունը և յոթ մղոնանոց քայլերով առաջ մղեց սոցիալիզմի կառուցման գործը։

Հաջողությամբ կենսագործելով չորրորդ և հինգերորդ հնգամյա պլանները, ՍՍՌՄ-ը գերազանցեց արտադրության նախապատերազմյան մակարդակը։ Այսպես, օրինակ, 1956 թվականին մեր երկրի արդյունաբերության արտադրանքը 3,5 անգամ ավելի էր 1940 թվականից, իսկ 1913 թվականի համեմատությամբ այն գերազանցեց 33 անգամ։ Բավական է նշել, որ արտադրամիջոցների արտադրությամբ ՍՍՌՄ-ն 1957 թվականին 77 անգամով գերազանցեց 1913 թվականի ծավալը։ Եթե 1913 թվականին արտադրամիջոցների արտադրության տեսակարար կշիռը կազմում էր 33 տոկոս, ապա 1956 թվականին այն հասավ 70 տոկոսի։

Սովետական Միության մեքենայական արդյունաբերության բուռն զարգացումը լայն և արդիական բազա ապահովեց ժողովրդական սպառման առարկաների արտադրության ծավալման համար, որը 1913 թվականի համե-

ջախելով բոլոր կարգի հակալենինյան հոսանքները՝ պարտիան ապահովեց մեր երկրին համաշխարհային հաղթանակ։

Բնորոշ է, որ այն տարիներին, երբ ԱՄՆ-ը ծանր ճգնաժամի հետևանքով կորցրին 300 միլիարդ դոլարի հարստություն (1929—1933 թթ.), երբ կապիտալիստական ողջ աշխարհի արտադրանքը կրճատվեց 44 տոկոսով, երբ գործազուրկների քաղցած բանակը հասավ 25 միլիոն մարդու, ՍՍՌՄ-ն ունենալով զարգացման բարձր տեմպեր՝ ընթացավ մեծ վերելքի ուղիներով։ Տակավին առաջին հնգամյակում տնտեսական-տեխնիկական նորագույն բազայի հիման վրա մեկընդմիշտ ամրացավ հաղթանակած կոլտնտեսային կարգը, մեր ռևոլյուցիայի դժվարագույն խնդիրը լուծվեց հօգուտ սոցիալիզմի։ Հանրային սեփականության բուռն զարգացման պայմաններում կուլակությունը վերացվեց իբրև դասակարգ և սոցիալիզմը հաղթեց գյուղում վերջնականապես։

Կարճ ժամանակամիջոցում մեր երկիրը դպրոցների, բարձրագույն ուսումնական հաստատությունների, կուլտուր-լուսավորական տասնյակ հազարավոր հիմնարկների ցանցով պատվեց։ Բարձրացավ ամբողջ ժողովրդի կուլտուրական մակարդակը։

Այսպիսով, Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի գլխավոր արգասիքը սոցիալիզմի կառուցումն է մեր երկրում:

Սոցիալիստական կացութաձևի վերջնական հաղթանակը գյուղում հանրային տնտեսության բուռն աճման նոր հեռանկարներ ստեղծեց։ Վերացնելով մարդու շահագործումը՝ սոցիալիստական ռևոլյուցիան հսկայական չափերով առաջ մղեց ժողովրդական տնտեսությունը, բարձրացրեց աշխատավորության կենսամակարդակը, խթանեց ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրայի ծաղկմանը։ Մեծ չափով բարձրացավ սովետական բանվորության տեխնիկական որակավորումը և կուլտուրական մակարդակը։ Նա դարձավ իրոք նոր դասակարգ, որը ժողովրդի հետ միասին առաջ է մղում մեր սոցիալիստական Հայրենիքը։ Մեր բանվորների և կոլտնտեսականների ծոցից գոյացավ նոր, սովետական ինտելիգենցիա, որը հավատարմորեն ծառայում է հանուն մեր ժողովրդի բարօրության ու երջանկության։

Դասակարգային կառուցվածքի արմատական փոփոխությամբ մեր երկրում ամրապնդվեց բանվորների և գյուղացիության դաշինքը, ժողովուրդն իր բարոյա-քաղաքական միասնությամբ դարձավ անպարտելի և հրաշագործ ուժ, որը սոցիալիստական կարգի զարգացման փայլուն առհավատչյան է այսօր և առմիշտ։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակի անգնահատելի արգասիքներից մեկն էլ այն է, որ վերջնականապես լուծվեց ազգային, այդ թվում և «հայկական» հարցը։ Կարճ ժամանակամիջոցում ռուս ժողովրդի անշահախնդիր օգնությամբ վերացավ ՍՍՌՄ բոլոր ազգերի տնտեսական, կուլտուրական հետամնացությունը, հաստատվեց ազգերի կատարյալ իրավահավասարություն և երբեմնի բուրժուական ազգերը դարձան սոցիալիստական ազգեր։ Ժողովուրդների եղբայրության հիման վրա է՛լ ավելի հզորացավ ու գեղեցկացավ մեր մեծ Հայրենիքը։

Սոցիալիզմի հաղթության հետևանքով մեծ չափերով աճեց մեր ժողովրդի բարեկեցությունը։ Իրագործվեց քաղաքացիների աշխատանքի, կրթության, հանգստի, ապահով ծերության ռեալ իրավունքը։ Ազատագրելով կնոջը դարավոր կապանքներից՝ Հոկտեմբերը նրա զարգացման համար անսահման



հնարավորություններ ստեղծեց։ Հանդիսանալով մարդկանց հասարակական կեցության վիթխարի հեղաբեկում՝ սոցիալիստական ռևոլյուցիան խորապես փոխեց նաև մարդկանց գիտակցությունն ու հոգեբանությունը։ Ծնվեց նոր կյանք կերտող սովետական մարդը, որի կերպարի բնորոշ գծերն են՝ սովետական հայրենասիրություն, ինտերնացիոնալիզմ, սոցիալիստական վերաբերմունք հանրային սեփականության և աշխատանքի հանդեպ։ Այդ սոցիալիստական գիտակցության վառ մարմնացումն է մեր երկրում վաղուց արմատավորված սոցիալիստական մրցությունը, որը մեր զարգացման հզորագույն խթանն է։

Հայտնի է, որ մեր երկրի սոցիալիստական խաղաղ շինարարությունն ընդհատվեց իմպերիալիստական ֆաշիստական Գերմանիայի ռազմական հարձակմամբ, որի պատճառով մեր ժողովուրդը անհամար աղետներ կրեց։ Տասնյակ միլիոնավոր մարդկանց տանջանքների և վիթխարի զոհերի միակ պատասխանատուն համաշխարհային իմպերիալիզմն է՝ հիտլերյան հրոսակախմբերին սնուցողը։

Հայրենական պատերազմը մեր երկրի ապրած ամենադաժան կռիվն էր։ Սակայն հենց այդ պատերազմի տարիներին վառ կերպով դրսևորվեց մեր ժողովրդի քաջակորով ոգին, նրա անկոտրում կամքը և նվիրվածությունը սոցիալիզմի գործին։ Հայրենական Մեծ պատերազմում մի անգամ ևս երևացին սոցիալիստական կարգի արմատական և բարոյա-քաղաքական մեծ առավելությունները։

Սոցիալիստական ռևոլյուցիայի ալեծուփ օրերին, թե քաղաքացիական կռիվների և ինտերվենցիայի բախտորոշ տարիներին, սոցիալիստական ինդուստրացման, կոլեկտիվացման, թե ֆաշիզմի դեմ մղվող մահու և կենաց ճակատամարտերում՝ Լենինի կոփած Կոմունիստական պարտիան էր, որ իմաստուն ու համարձակ վարում էր մեր նավը դեպի սոցիալիզմի ափը։ Հայրենական պատերազմի տարիներին մի անգամ ևս երևաց պարտիայի սերտ կապը ժողովրդի հետ, ժողովուրդ, որը միշտ էլ անձնվիրաբար է արձագանքել իր հարազատ պարտիայի կենսասաեղծ կոչերին։ Ֆաշիստական հրեշի ջախջախումը ավելի բարձրացրեց Սովետական Միության հեղինակությունը ողջ աշխարհում, նրա վճռողական դերը միջազգային կյանքում։

Սովետական ժողովուրդը կարճ ժամանակամիջոցում բուժելով պատերազմի ծանր վերքերը՝ արագ կերպով վերականգնեց տնտեսությունը և յոթ մղոնանոց քայլերով առաջ մղեց սոցիալիզմի կառուցման գործը։

Հաջողությամբ կենսագործելով չորրորդ և հինգերորդ հնգամյա պլանները, ՍՍՌՄ-ը գերազանցեց արտադրության նախապատերազմյան մակարդակը։ Այսպես, օրինակ, 1956 թվականին մեր երկրի արդյունաբերության արտադրանքը 3,5 անգամ ավելի էր 1940 թվականից, իսկ 1913 թվականի համեմատությամբ այն գերազանցեց 33 անգամ։ Բավական է նշել, որ ար- տադրամիջոցների արտադրությամբ ՍՍՌՄ-ն 1957 թվականին 77 անգամով գերազանցեց 1913 թվականի ծավալը։ Եթե 1913 թվականին արտադրամի- ջոցների արտադրության տեսակարար կշիռը կազմում էր 33 տոկոս, ապա 1956 թվականին այն հասավ 70 տոկոսի։

Սովետական Միության մեքենայական արդյունաբերության բուռն զարգացումը լայն և արդիական բազա ապահովեց ժողովրդական սպառման առարկաների արտադրության ծավալման համար, որը 1913 թվականի համե-

մատությամբ 1957 թվականին կաճի 13 անգամ։ Այս թիվը մեր ռևոլյուցիայի մեծագույն առավելության պերճախոս վկան է։ Հագեցած լինելով նոր տեխնիկայով՝ մեր արդյունաբերությունը շարունակում է իր առաջընթացը։

Կոլեկտիվ տնտեսությունների իր առաջավոր սիստեմով ՍՍՌՄ-ը աշխարհի ամենաառաջավոր գյուղատնտեսություն վարողն է այսօր։ Բավական է հիշատակել, որ դեռ այս տարվա սկզբին մեր գյուղատնտեսությունն ուներ 1,577 հազար տրակտոր (փոխադրված 15 ուժանոցի), 385 հազար հացահատիկային կոմբայն, 631 հազար բեռնատար ավտոմեքենա և միլիոնավոր զանազան գյուղատնտեսական մեքենաներ։ Բոլոր կուլտուրաների ցանքատարածությունը 1913 թվականի համեմատությամբ ընդարձակվել է ավելի քան մեկ ու կես անգամ, իսկ տեխնիկական կուլտուրաներինը՝ ավելի շատ։ Անցած քառասուն տարիներին մեր երկրում զարգացավ հողամշակման կուլտուրան և ավելացավ բերքատվությունը։

Սովետական տնտեսության և տեխնիկայի զարգացման գործում մեծ ներդրում կատարեց սովետական գիտությունը, որը շատ կարճ ժամանակամիջոցում նվաճեց աշխարհի գիտական մտքի ամենաառաջավոր դիրքերը։ Արդյունաբերության, մեխանիկայի, ֆիզիկայի, քիմիայի, էլեկտրոնիկայի, մեքենաշինության, մետալուրգիայի, ռադիոտեխնիկայի, ավտոմատիկայի, հեռուստատեսության և բազմաթիվ այլ բնագավառներում սովետական գիտնականները հոյակապ և բարդ պրոբլեմների լուծումով առաջ մղեցին մեր երկիրը։ Ոչ միայն աշխարհի առաջին ատոմային էլեկտրակայանի գործարկումով, այլև երկրագնդի արհեստական արբանյակների բաց թողումով, սոցիալիստական երկրի գիտության մշակները իրենց մեղվաջան գործունեությամբ նոր դարաշրջան բացեցին մարդկային մտքի զարգացման առջև։

Անցած քառասուն տարում ՍՄԿՊ-ի վարած ճիշտ քաղաքականության շնորհիվ միայն, մեր երկիրն այսօր իր արդյունաբերական արտադրանքով բռնում է Եվրոպայում առաջին տեղը և աշխարհում երկրորդ տեղը։ Եթե 1913 թվականին մեր երկրի բնակչության մեկ շնչին ընկնող արդյունաբերական արտադրանքը 13—14 անգամ պակաս էր քան ԱՄՆ-ում, ապա այս տարի պակաս է միայն 2,6 անգամ։ Այս հսկայական թռիչքը կատարվել է ընդամենը մի քանի տասնամյակներում, որը փայլուն կերպով հաստատում է Լենինի կանխատեսությունը, թե մենք «ձեռք կբերենք այն, որ կհասնենք մյուս պետություններին այնպիսի արագությամբ, որի մասին նրանք մինչև անգամ չեն երազել» (Երկեր, հատ. 33, էջ 464)։

Սոցիալիստական ռևոլյուցիայի մեծագույն նվաճումներից մեկն էլ, աշխատավորական միլիոնավոր զանգվածների նյութական և կուլտուրական մակարդակի բարձրացումն է։ Մեր երկրում վաղուց ի վեր չկա գործազրկություն։ Այժմ մեր բանվոր-ծառայողների թիվը կազմում է 52,5 միլիոն մարդ, չորս անգամ ավելի, քան 1913 թվականին էր։ Տարունակ բարձրանում է բանվորների և ծառայողների ռեալ աշխատավարձը։ Ջրի ուսման և ձրի բժշկության, կենսաթոշակների, նպաստների և պետության հաշվին տրված այլ վճարումների գծով ծախսված գումարները մի քանի անգամ գերազանցում են 1913 թվականի մակարդակը։ Միևնույն համեմատությամբ խոշոր չափերով աճել են և աշխատավոր կոլտնտեսականների եկամուտները։ Վերջին մի քանի տարում կիրառված մի շարք լուրջ միջոցառումների շնորհիվ սովետական մարդիկ սկսել են ավելի լավ սնվել, ավելի լավ հագնվել, ավելի կուլտուրապես



ապրել։ Նպաստների, կենսաթոշակների և աշխատավորության բարեկեցու-
թյան նպատակով արված հատկացումներն այս տարի կազմում են 192 մի-
լիարդ ռուբլի։ 1956 թվականին սանատորիաներում և հանգստի տներում բուժ-
վել և հանգստացել են 5 միլիոն աշխատավորներ։ Արմատապես բարելավվել
է աշխատավորության բուժսպասարկումը։

Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ իրագործելով կուլտուրա-
կան ռևոլյուցիան, մեր երկիրը հասավ անօրինակ ծաղկման։ Փարթամորեն
աճեցին ու զարգացան բոլոր ժողովուրդների ձևով ազգային, բովանդակու-
թյամբ սոցիալիստական կուլտուրաները։ Վերացնելով մասսայական անգրա-
գիտությունը մեր երկրում, այժմ ՍՍՌՄ-ում կիրառվում է յոթնամյա պար-
տադիր ձրի ուսուցում և այս հնգամյակում քաղաքներում և գյուղերում իրա-
կանացվելու է ընդհանուր միջնակարգ կրթություն։ 1956—1957 ուսումնական
տարում ուսման բոլոր տիպի հաստատություններում սովորել են 50,4 միլիոն
մարդ։ Հետևաբար, այսօր մեր չորս քաղաքացուց մեկը ուսանում է։ Եթե ցա-
րական Ռուսաստանում ուսումը գլխավորապես տարվում էր ռուսերեն լեզվով,
ապա այժմ այն տարվում է 59 լեզուներով։ Պետք է ընդգծել, որ Մեծ Հոկ-
տեմբերի շնորհիվ 40 ժողովուրդներ, որոնք անցյալում չունեին գիր ու գրակա-
նություն, այժմ ունեն։ Եթե մինչև ռևոլյուցիան Հայաստանը, Ադրբեջանը,
Կիրգիզիան, Բելոռուսիան, Տաջիկիստանը, Ղազախստանը և Թուրքմենիան
չունեին ոչ մի բարձրագույն ուսումնական հաստատություն, ապա դրանք այժմ
ունեն այդպիսիք՝ պահանջվող քանակությամբ։ Մեր երկրի բուհերը 1918—
1957 թվականներին պատրաստել են 3,8 միլիոն մասնագետներ բարձրագույն
կրթությամբ, իսկ տեխնիկումները և մյուս միջնակարգ մասնագիտական
դպրոցները տվել են 6,2 միլիոն մասնագետ կադրեր։

ՍՍՌՄ-ում անցած ժամանակաշրջանում ստեղծվել է գիտական հիմնար-
կությունների հսկայական ցանց, 9,5 անգամ ավելի, քան 1913 թվականին։
1956 թվականին մեր երկրում կային 9,8 հազար գիտության դոկտորներ և
85,7 հազար թեկնածուներ։ Բոլոր ռեսպուբլիկաներն ունեն իրենց ակադեմիա-
ները։ Գիտական աշխատողների բանակը մեզ մոտ այժմ կազմում է 240 հա-
զար մարդ։ Միայն այս տարի երկիրն ստացավ 770 հազար բարձրագույն և
միջնակարգ կրթությամբ մասնագետներ։

Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիան կյանքի կոչեց միանգա-
մայն նոր, սոցիալիստական գրականություն և արվեստ, որոնց նվաճումները
հայտնի են ամբողջ աշխարհին։ Հարյուրավոր միլիոն աշխատավորների կո-
մունիստական դաստիարակության վեհ գործին են ծառայում մեր գրականու-
թյունն ու արվեստը։

Հսկայական քայլերով առաջ է ընթանում մեր քաղաքների ու գյուղերի
բարեկարգումը։ Սովետական իշխանության տարիներին կառուցված և շահա-
գործման է հանձնված 507 միլիոն քառակուսի մետր բնակարանային տարա-
ծություն։ Առաջիկա 10—12 տարիներին մեր երկրում կվերանա բնակարանա-
յին կարիքը։

Ավարտելով սոցիալիզմի կառուցումը մեր երկրում, ՍՍՌՄ ժողովուրդ-
ները կերտում են կոմունիզմի հոյակապ պալատը, ուր յուրաքանչյուր ոք
կաշխատի ըստ իր ունակության ու կստանա ըստ իր պահանջի։ Այս վեհ
խնդրի լուծման համար անհրաժեշտ է ոչ միայն մարդկանց գիտակցությունից
հաղթահարել անցյալի մնացուկները, այլև նոր թափով առաջ մղել աշխա-

տանքի արտադրողականությունը, որպեսզի բարիքների լիակատար առատություն լինի։ Վեր է ամեն կասկածից, որ մոտ ապագայում մեր ժողովուրդը պատվով կկատարի կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման մեծ ծրագիրը և յուրաքանչյուր շնչին ընկնող արտադրանքի թողարկումով մենք կհասնենք ու կանցնենք առաջավոր կապիտալիստական երկրներից։

Արդյունաբերության և շինարարության վերակառուցումը հսկայական ու նոր հնարավորություններ է տալիս հաջողությամբ իրագործելու պարտիայի XX համագումարի պատմական որոշումները և ժամկետից շուտ ավարտելու վեցերորդ հնգամյա պլանը։

Վերջին տարիներին երկրի գյուղատնտեսության շեշտակի վերելքի ուղղությամբ պարտիայի կիրառած արմատական միջոցառումները փայլուն արդյունքներ տվին։ Միայն 36 միլիոն հեկտար խամ ու խոպան հողերի յուրացումը և հսկայական քանակությամբ ապրանքային հացի ստացումը մեծ չափով նպաստեցին ժողովրդի կենսամակարդակի բարձրացմանը։ Պարտիայի կոչը՝ մոտակա տարիներին հասնել ԱՄՆ-ին բնակչության մեկ շնչին ընկնող կաթի, մսի և յուղի արտադրությամբ, մեր հերոսական ժողովրդի ջանքերով կիրագործվի շատ շուտով։ Արդեն այս տարվա նախնական արդյունքները խոր հավատ են ներշնչում, որ այդ կարևորագույն խնդիրը առաջիկա մի քանի տարում կլուծվի հաջողությամբ։

Արագորեն արմատավորելով առաջավոր տեխնիկան ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում, մեծ թափ հաղորդելով աշխատանքի արտադրողականությանը և սոցիալիստական մրցությանը, մեր Հայրենիքի աշխատավորները այսուհետև է՛լ ավելի բարձր կծածանեն լենինյան ինտերնացիոնալ դրոշը, հաստատ գիտենալով, որ ինչպես անցյալում, այնպես էլ այսօր ու ապագայում պարտիայի մղած վիթխարի պայքարի ուղն ու ծուծը մեր ժողովրդի նյութական ու կուլտուրական վիճակի, նրա բարօրության անկանգ բարգավաճումն է։

Անշեղորեն կենսագործելով ՍՄԿՊ Կենտկոմի 1957 թվականի Հունիսյան և Հոկտեմբերյան պլենումների որոշումները, մեր պարտիան իր հաղթական երթուղուց մի կողմ վանելով բոլոր նրանց, ովքեր փորձել են ու կփորձեն որևէ ձևով սասանել մեր շարքերի լենինյան միասնությունը՝ այսուհետև ևս ջանքեր չի խնայի ժողովրդի բարօրության առավել բարձրացման, մեր Հայրենիքի պաշտպանունակության է՛լ ավելի ամրապնդման համար։

Ընթանալով Մեծ Հոկտեմբերի լուսավոր ուղիներով՝ ՍՍՌՄ ժողովուրդները եղբայրական կուռ շարքերով շարունակում են իրենց երթը լենինյան պարտիայի դրոշի ներքո, դեպի կոմունիզմի վեհ բարձունքները։

---

# ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՆ ՈՐՊԵՍ ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ԿԱԶՄԱԿԵՐՊԻՉ

Լ. ԲԱԲԱՅԱՆ

Փետրվարյան բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիան վերջ տվեց ցարական ինքնակալության բազմադարյան արյունարբու տիրապետությանը։ Սակայն, իշխանության հարցը, որն ամեն մի ռևոլյուցիայի հիմնական հարցն է, փետրվարյան ռևոլյուցիան լուծեց միանգամայն հակասական ձևով։ Ցարական միապետության դեմ Ռուսաստանի բանվոր դասակարգի հերոսական, անձնազոհ պայքարի հաղթանակի պտուղները քաղեց ռուսական բուրժուազիան, որը ինչպես 1905—1907 թվականների ռևոլյուցիայի, այնպես էլ 1907—1914 թվականների կոնտրռևոլյուցիայի տարիներին և առանձնապես 1914—1917 թվականների համաշխարհային իմպերիալիստական առաջին պատերազմի ժամանակ չափազանց արագ կազմակերպվեց քաղաքականապես և, հեշտությամբ օգտագործելով ցարիզմին հասցված առաջին իսկ հարվածները, հասավ իշխանության։

«Իմպերիալիստական պատերազմը,— գրել է Լենինը,— ուժերի աներևակայելի լարում պահանջելով, այնպես արագացրեց հետամնաց Ռուսաստանի զարգացման ընթացքը, որ մենք «միանգամից» (իրականում՝ կարծես թե միանգամից) հասանք Իտալիային, Անգլիային, համարյա Ֆրանսիային, ստացանք «կոալիցիոն «ազգային» (այսինքն՝ իմպերիալիստական սպանդի գործը վարելու և ժողովրդին խաբելու հարմարեցրած) «պառլամենտական» կառավարություն» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 23, էջ 406)։

Իմպերիալիստական պատերազմը օբյեկտիվ անխուսափելիությամբ չափազանց արագացրեց և չտեսնված չափով սրեց պրոլետարիատի դասակարգային պայքարն ընդդեմ բուրժուազիայի։ Պայքարը թշնամի դասակարգերի միջև պետք է վերածվեր քաղաքացիական պատերազմի, որի սկիզբը Ռուսաստանում դրվեց 1917 թվականի փետրվարյան ռևոլյուցիայով։ Փետրվարյան ռևոլյուցիայից հետո երկրի քաղաքական դրությունը հետևյալ պատկերն էր ներկայացնում. ցարական կառավարությունը ջախջախված էր։ Երկրում ստեղծվել էր երկիշխանություն, մեկը բուրժուա-կալվածատիրական Ժամանակավոր կառավարությունն էր, որը հարկադրված էր ժողովրդին խոստանալ ազատությունների ու փշրանքների մաքսիմում, որոնք համատեղելի լինեին այն բանին, որ այդ կառավարությունը պահպաներ իր իշխանությունը ժողովրդի վրա և հնարավորություն ունենար շարունակելու իմպերիալիստական սպանդը։ Մյուսը՝ պրոլետարիատի և գյուղացիության իշխանությունը՝ բանվորների, զինվորների և գյուղացիների դեպուտատների Սովետների ձևով, որն իրենից ներկայացնում էր բանվորական իշխանության սաղմը, հանդիսանում

էր բնակչության 9/10 մասի շահերի ներկայացուցիչը, արտահայտում էր աշխատավորական մասսաների շահերն ու ձգտումները, այն է՝ խաղաղություն, հաց և ազատություն։

Հենվելով մանր-բուրժուական պարտիաների՝ մենշևիկների և էսեռների ակտիվ աջակցության վրա, ժամանակավոր բուրժուական կառավարությունը վարում էր հակաժողովրդական քաղաքականություն, նա չէր կարող ժողովրդին տալ ո՛չ խաղաղություն, ո՛չ հաց և ո՛չ ազատություն։

«Պատերազմը ստեղծել է այնպիսի անընդգրկելի կրիզիս, այնպես է լարել ժողովրդի նյութական ու բարոյական ուժերը, այնպիսի հարվածներ է հասցրել արդի ամբողջ հասարակական կազմակերպությանը, որ մարդկությունը կանգնել է մի ընտրության առջև՝ կա՛մ կործանվել, կա՛մ իր բախտը հանձնել ամենառևոլյուցիոն դասակարգին՝ ամենաարագ ու ամենաարմատական ձևով արտադրության ավելի բարձր եղանակի անցնելու համար» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 25, էջ 466)։

Ինչպես ամենուրեք, Ռուսաստանում հատկապես, ամենառևոլյուցիոն դասակարգը բանվոր դասակարգն էր, այն դասակարգը, որը կոփվել էր 1905—1907 թվականների ռևոլյուցիայի մարտերում, այն դասակարգը, որը դաշնակցել էր բազմամիլիոն աշխատավոր գյուղացիության հետ։ Նա էր գլխավորում երկրում ծավալված ռևոլյուցիան, իր մարտական ավանգարդի՝ բոլշևիկյան պարտիայի ղեկավարությամբ։

Բանվորների և գյուղացիների, ռևոլյուցիոն մասսաների ղեկավարը, ոգեշնչողը և կազմակերպիչը Կոմունիստական պարտիան էր, բոլշևիկների պարտիան՝ նոր տիպի մարքսիստական պարտիան։ Մարքս-լենինյան տեսությամբ զինված, միջազգային բանվորական շարժման ամբողջ լավագույն փորձը ներծծած, բանվոր դասակարգի թշնամիների դեմ մղված մարտերում կոփված, իր միասնությամբ ուժեղ, աշխատավոր մասսաների հետ անխզելիորեն կապված բոլշևիկների պարտիան այն առաջնորդն էր, որ Ռուսաստանի բանվոր դասակարգին ու գյուղացիությանը վճռական պայքարի նախապատրաստեց հանուն նոր սոցիալիստական կյանքի, մշակեց ռևոլյուցիոն պայքարի ստրատեգիան ու տակտիկան, անվեհեր կերպով ղեկավարեց այդ պայքարը և ապահովեց սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակը։

Բոլշևիկների պարտիան մեծ Լենինի գլխավորությամբ ռևոլյուցիայի առաջին իսկ օրերից հսկայական աշխատանք կատարեց նախապատրաստելու անցումը ռևոլյուցիայի առաջին էտապից երկրորդ էտապին, բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայից՝ սոցիալիստական ռևոլյուցիային։

«Եթե մենք ուզում ենք մարքսիստներ լինել և ամբողջ աշխարհի ռևոլյուցիաների փորձից բան սովորել,— գրել է Լենինը,— մենք պետք է աշխատենք հասկանալ, թե հատկապես ո՛րն է այդ անցման մոմենտի յուրօրինակությունը, և ինչ տակտիկա է բխում նրա օբյեկտիվ առանձնահատկություններից» (Երկեր, հատ. 23, էջ 431)։

Իր «1917 թվականի մարտի 4 (17)-ի թեզիսների ուրվագծերը», «Նամակներ հեռվից», «ՌՍԴԲՊ խնդիրների մասին ռուսական ռևոլյուցիայում», «Ռևոլյուցիան Ռուսաստանում և բոլոր երկրների բանվորների խնդիրները» և այլ աշխատություններում Վլադիմիր Իլյիչ Լենինը տվել է ռևոլյուցիայի մեջ դասակարգային ուժերի փոխհարաբերության վերլուծությունը, նշել բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայից սոցիալիստական ռևոլույցիային անցնելու հե-



ռանկարները։ «Կարևոր է հասկանալ,— ասում էր Լենինը,— որ ռևոլյուցիոն ժամանակներում օբյեկտիվ սիտուացիան նույնքան արագ ու կտրուկ է փոխվում, ինչպես առհասարակ արագ է հոսում կյանքը։ Իսկ մենք պետք է կարողանանք մեր տակտիկան և մեր մերձավորագույն խնդիրները հարմարեցնել յուրաքանչյուր տվյալ սիտուացիայի առանձնահատկություններին։ Մինչև 1917 թվականի փետրվարը հերթի էր դրված ռևոլյուցիոն-ինտերնացիոնալիստական համարձակ պրոպագանդան, մասսաներին պայքարի կոչ անելը, նրանց զարթնեցնելը։ Փետրվար-մարտի օրերում անձնազոհ պայքարի հերոսություն էր պահանջվում մերձավորագույն թշնամուն՝ ցարիզմին անհապաղ ջախջախելու համար։ Այժմ մենք ապրում ենք անցում ռևոլյուցիոն այդ առաջին էտապից դեպի երկրորդը, ցարիզմի հետ «գոտեմարտից» դեպի «գոտեմարտ» գուչկով-միլյուկովյան, կալվածատիրական ու կապիտալիստական իմպերիալիզմի հետ։ Օրակարգի մեջ է դրված կազմակերպական խնդիրը, սակայն, ո՛չ երբեք լոկ շաբլոն կազմակերպությունների վրա աշխատելու շաբլոն իմաստով, այլ կեղեքված դասակարգերի չտեսնըված լայն մասսաներին կազմակերպության մեջ ներգրավելու և հենց այդ կազմակերպության միջոցով ռազմական, համապետական ու ժողովրդատնտեսական խնդիրներն իրագործելու իմաստով» (Երկեր, հատ. 23, էջ 442—443)։

Փետրվարյան ռևոլյուցիայից հետո բոլշևիկների պարտիան դուրս գալով խոր ընդհատակից, առաջնորդվելով հանճարեղ Լենինի ցուցումներով, հըսկայական ագիտացիոն-պրոպագանդիստական, կազմակերպչական աշխատանք ծավալեց աշխատավորական լայն մասսաների մեջ։ Վլադիմիր Իլյիչ Լենինը բացառիկ մեծ տեղ էր տալիս պրոլետարական, աշխատավորական մասսաներին կազմակերպելու գործին։ Նա գրում էր. «...համենայն դեպս թե՛ նոր ռևոլյուցիայի նախօրյակին, թե՛ նրա ընթացքում, թե՛ նրա հետևյալ օրը մոմենտի լոզունգը պրոլետարական կազմակերպությունը պետք է լինի։

Ընկե՛ր բանվորներ։ Դուք երեկ պրոլետարական հերոսության հրաշքներ ցուցաբերեցիք, տապալելով ցարական միապետությունը։ Դուք անխուսափելիորեն շատ թե քիչ մոտ ապագայում ստիպված պետք է լինեք (գուցե ստիպված եք նույնիսկ այժմ, երբ ես գրում եմ այս տողերը) կրկին նույնպիսի հերոսության հրաշքներ ցուցաբերել իմպերիալիստական պատերազմ վարող կալվածատերերի ու կապիտալիստների իշխանությունը տապալելու համար։ Դուք չե՞ք կարողանա այդ հաջորդ, «իսկական» ռևոլյուցիայի ժամանակ հաս- Դուք չե՞ք կարողանա այդ հաջորդ, «իսկական» ռևոլյուցիայի ժամանակ հաս- պրոլետարական կազմակերպվածության հրաշքտատապես հաղթել, եթե դուք պրոլետարական կազմակերպվածության հրաշք- ներ չցուցաբերեք» (Երկեր, հատ. 23, էջ 432—433)։

Վլադիմիր Իլյիչ Լենինի «Նամակներ հեռվից», «Երկիշխանության մասին», «Պատերազմը և ժամանակավոր կառավարությունը», «Եղբայրացման նշանակությունը», «Ժողովրդին վախեցնելը բուրժուական սարսափներով» և այլ աշխատություններ հստակ կերպով պարզաբանեցին մասսաներին քաղաքական կյանքի և դասակարգային պայքարի կարևորագույն իրադարձությունները, անգնահատելի նշանակություն ունեցան բոլշևիկյան պարտիայի շուրջը մասսաներին համախմբելու և նրանց սոցիալիստական ռևոլյուցիային նախապատրաստելու գործում։

Բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայից սոցիալիստական ռևոլյուցիային անցնելու համար,— ինչպես ասված է ՍՄԿՊ ԿԿ պրոպագանդայի և ագի-

տացիայի բաժնի և ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեին առընթեր Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի Թեզիսներում,— պարտիայի պայքարի ծրագիրը եղան Լենինի նշանավոր Ապրիլյան թեզիսները, որտեղ ռևոլյուցիայի մեծ հանճարը հանգամանորեն տվեց անցման համար մղվելիք պայքարի թեորիապես հիմնավորված կոնկրետ պլանը և առաջ քաշեց Սովետների ռեսպուբլիկայի, որպես պրոլետարիատի դիկտատուրայի լավագույն քաղաքական ձևի, կազմակերպման լոզունգը։

Բոլշևիկների պարտիան Ապրիլյան թեզիսներով զինված հսկայական աշխատանք ծավալեց աշխատավորական մասսաներին նվաճելու, նրանց մարտական ռևոլյուցիոն դաստիարակության և կազմակերպման ուղղությամբ։ «Աշխատելով խուսափել ավելորդ դժվարություններից ու զոհերից, հենվելով մասսաների կամքի և աջակցության վրա՝ բոլշևիկների պարտիան հանդես էր գալիս ռևոլյուցիայի խաղաղ զարգացման օգտին»։ Հաշվի առնելով, որ իրական ուժը բանվորների, զինվորների և գյուղացիների դեպուտատների Սովետների ձեռքումն է, բոլշևիկների պարտիան ընտրել էր այն ուղին, որը ենթադրում էր ամբողջ իշխանության անցում Սովետներին, պարտիայի կողմից Սովետներում մեծամասնության նվաճում, նրանց քաղաքականության փոփոխում հօգուտ բանվոր դասակարգի։ Լենինը գրում էր.

«Պարզաբանել մասսաներին, որ բանվորների դեպուտատների Սովետները ռևոլյուցիոն կառավարության միակ հնարավոր ձևն են, և որ այդ պատճառով, քանի դեռ այդ կառավարությունը ենթարկվում է բուրժուազիայի ազդեցությանը, մեր խնդիրը կարող է լինել միայն նրանց տակտիկայի սխալների համբերատար, սիստեմատիկ, համառ, առանձնապես մասսաների պրակտիկ պահանջներին հարմարվող պարզաբանումը:

Քանի դեռ մենք փոքրամասնություն ենք կազմում, մենք կատարում ենք սխալները քննադատելու և պարզելու աշխատանք, միաժամանակ քարոզելով ամբողջ պետական իշխանությունը բանվորների դեպուտատների Սովետներին անցնելու անհրաժեշտությունը, որպեսզի մասսաները փորձով ազատվեն իրենց սխալներից» (Երկեր, հատ. 24, էջ 5—6)։

Մինչև հուլիսյան դեպքերը բոլշևիկների պարտիան ամենուրեք մերկացնում էր ժամանակավոր կառավարության հակառևոլյուցիոն քաղաքականությունը և էսեռների ու մենշևիկների հաշտվողականությունը, մասսաներին բացատրում էր ռևոլյուցիայի հիմնական հարցերի լուծման համար պայքարի բոլշևիկյան ծրագիրը։ Սակայն երկրում քաղաքական իրադարձությունների ընթացքն արգելակեց բոլշևիկյան պարտիայի ռևոլյուցիայի խաղաղ զարգացման ծրագրի իրականացումը։

Մենշևիկներն ու էսեռները շարունակեցին իրենց դավաճանական-հակաժողովրդական քաղաքականությունը, կապիտալիստներն ու կալվածատերերը շարունակեցին իրենց կատաղի պայքարը աշխատավորական մասսաների դեմ, ռևոլյուցիայի դեմ, բոլշևիկների պարտիայի դեմ։

Դեպքերի զարգացման ընթացքը բանվորներին, գյուղացիներին ու զինվորներին ավելի ու ավելի համոզեց բոլշևիկյան պարտիայի տակտիկայի ու ստրատեգիայի ճշտության մեջ, ժամանակավոր կառավարության հակաժողովրդական բնույթի և մենշևիկների ու էսեռների հաշտվողական քաղաքականության կործանման մեջ։ Պատմական փորձը աշխատավորական լայն մասսաներին ավելի ու ավելի համոզեց, որ անհրաժեշտ էր բուրժուազիայից



և կալվածատերերից խլել իշխանությունը և այն հանձնել բանվորների, զինվորների և գյուղացիների դեպուտատների Սովետներին։

Բուրժուական ժամանակավոր կառավարության կողմից 1917 թվականի հուլիսին Պետրոգրադում բանվորների ու զինվորների խաղաղ ցույցի գնդակոծումը նշանակում էր երկիշխանության վախճան և հակառևոլյուցիոն բուրժուազիայի միիշխանության հաստատում։

Մենշևիկների և էսեռների հակառևոլյուցիոն քաղաքականությունը բանվորների, զինվորների և գյուղացիների Սովետներին դարձրեց բուրժուական իշխանության հասարակ կցորդ։ Ամբողջ իշխանությունը անցավ կոնտրռևոլյուցիայի ձեռքը։ Վլադիմիր Իլյիչ Լենինը հուլիսի վերջին գրում էր. «Իշխանությունը, որը բուրժուազիան չէր կարողանում ամբողջապես վերցնել կառավարության մեջ, որը չէին ուզում վերցնել Սովետները,— այդ իշխանությունը գլորվեց ռազմական կլիկի բոնապարտիստների ձեռքը, որին (կլիկը), հասկանալի է, ամբողջովին պաշտպանում էին կադետներն ու սևհարյուրակայինները, կալվածատերերն ու կապիտալիստները» (Երկեր, հատ. 25, էջ 297—298)։

Հենվելով մենշևիկների, էսեռների և մյուս հակառևոլյուցիոն պարտիաների ու հոսանքների աջակցության վրա՝ բուրժուական-կալվածատիրական ժամանակավոր կառավարությունն անցավ վճռական հարձակման։ Երկրում ծավալվեց սև ռեակցիան։ Ռևոլյուցիայի մեծ առաջնորդը ստիպված էր անցնել խոր ընդհատակ։ Բոլշևիկների պարտիան, ելնելով ստեղծված դրությունից, ստիպված էր վերակառուցել իր աշխատանքը։ Հիմնական հարցը տակտիկայի վերանայման հարցն էր, քանի որ նոր պայմաններում քաղաքական իրադարձությունները պահանջում էին նոր տակտիկա։

Այդ մասին Լենինը գրում էր. «Սովետներն այժմ անզոր ու անօգնական են հաղթած ու հաղթող կոնտրռևոլյուցիայի հանդեպ։ Իշխանությունը Սովետներին հանձնելու լոզունգը կարող է հասկացվել որպես «հասարակ» կոչ իշխանությունը հենց տվյալ Սովետների ձեռքն անցնելու մասին, իսկ ասել այդ, կոչ անել դեպի այդ, կնշանակեր հիմա խաբել ժողովրդին։ Խաբեությունից ավելի վտանգավոր բան չկա... Պետք է գործել ո՛չ թե հին, այլ նոր, հետհուլիսյան, դասակարգային ու պարտիական կատեգորիաներով...» (Երկեր, հատ. 25, էջ 232)։

Իր մի շարք աշխատություններում, հատկապես «Քաղաքական դրությունը», «Լոզունգների առթիվ», «Կոնստիտուցիոն պատրանքների մասին» գործերում Վլադիմիր Իլյիչ Լենինը տվեց ստեղծված դրության սպառիչ վերլուծությունը, ձևակերպեց ստեղծված նոր պայմաններում պարտիայի առաջ կանգնած խնդիրները, նշեց պարտիայի նոր տակտիկան, հռչակեց զինված ապստամբության կուրս վերցնելու լոզունգը, առաջարկեց ժամանակավորապես հանել ամբողջ իշխանությունը Սովետներին հանձնելու լոզունգը։ «Լոզունգների առթիվ» հոդվածում Լենինը հիշեցնում էր, որ իշխանության հարցը հանդիսանում է ամեն մի ռևոլյուցիայի հիմնական հարցը։ Մինչև հուլիսյան շրջանը տիրում էր երկիշխանություն, որը կարող էր հնարավորություն տալ ռևոլյուցիայի խաղաղ զարգացմանը։ Իշխանության անցումը Սովետների ձեռքը այն ժամանակ հնարավոր էր և ավելի ցանկալի։ Այդպիսի զարգացումը ժողովրդի համար ավելի հեշտ էր և ավելի ձեռնտու, սակայն հուլիսյան օրերից հետո խաղաղ զարգացման ուղին անհնարին դարձավ։ Իշխանությունը խաղաղ ճանապարհով անհնարին էր վերցնել։ Իշխանությունը կարելի էր





վերցնել.զինված պայքարով։ Իշխանությունը վերցնելու միակ ուղին կոնտրռևոլյուցիոն բուրժուազիայի տիրապետության տապալումն էր։

Այս շրջանում գրված լենինյան հանճարեղ աշխատությունները դարձան բոլշևիկների պարտիայի գործունեության մարտական ծրագիրը և դրվեցին պարտիայի VI համագումարի որոշումների հիմքում։ Չնայած հուլիսյան դեպքերից հետո ստեղծված ծանր ու անտանելի պայմաններին, Լենինի ղեկավարած բոլշևիկների պարտիան ամրապնդվեց, ընդլայնեց իր շարքերը, նրա ազդեցությունն անշեղորեն աճում էր լայն մասսաների մեջ։ Միասնական կուռ շարքերով բոլշևիկների պարտիան ընթացավ դեպի VI համագումարը։ Ապրիլյան կոնֆերենցիայից հետո անցած երեք ամիսների ընթացքում պարտիայի անդամների թիվը 80 հազարից հասավ 240 հազարի։

Բոլշևիկների պարտիայի VI համագումարը Լենինի ցուցումներին համապատասխան զինված ապստամբության կուրս վերցրեց։ Այդ համագումարը վճռական դեր խաղաց սոցիալիստական ռևոլյուցիայի նախապատրաստման գործում։ Համագումարը վճռական հակահարված տվեց Պրեոբրաժենսկու հակալենինյան կապիտուլյանտական գծին, որը հանդես եկավ պրոլետարական ռևոլյուցիայի կուրսի դեմ, անհնարին էր համարում Ռուսաստանում սոցիալիզմի հաղթանակը, մինչև որ Արևմուտքում պրոլետարական ռևոլյուցիան չհաղթի։

Ղեկավարվելով պարտիայի VI համագումարի որոշումներով՝ բոլշևիկները իմաստուն Լենինի գլխավորությամբ Ռուսաստանի ժողովրդական մասսաներին տարան սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի ճիշտ ուղիով։ Ավելի ու ավելի աճում էր պարտիայի հեղինակությունն ու ազդեցությունը աշխատավորական լայն մասսաների մեջ։ Բոլշևիկների պարտիան քաղաքական ծանր իրադարձությունների պայմաններում կարողացավ կարճ ժամանակում մեկ ընդհանուր ռևոլյուցիոն հոսանքում միավորել այնպիսի տարբեր շարժումներ, ինչպիսիք էին խաղաղության համար համընդհանուր դեմոկրատական շարժումը, կալվածատիրական հողերի բռնագրավման համար գյուղացիական շարժումը, ճնշված ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումը, բուրժուազիայի տապալման, պրոլետարիատի դիկտատուրայի հաստատման համար բանվոր դասակարգի սոցիալիստական շարժումը։ Այս տարբեր շարժումների միավորումը մեկ ամբողջական հզոր ռևոլյուցիոն հոսանքում ապահովեց Հոկտեմբերի հաղթանակը։

Բանվորները, զինվորները, գյուղացիները բոլշևիկների պարտիայի քաղաքականության մեջ տեսնում էին ազատագրման ռեալ ելքը և խաղաղության ուղին, զգում էին, որ այդ քաղաքականությունը իրականում կապահովի իշխանության անցումը աշխատավորական մասսաների ձեռքը, կհաստատի բոլոր ազգերի իրավահավասարություն, հողը կտա գյուղացուն, գործարաններն ու ֆաբրիկաները՝ բանվորին։ Նրանք համոզված էին, որ բոլշևիկների քաղաքականությունը հետևողական ռևոլյուցիոն ծրագիր է, որն արտահայտում է բանվորների ու գյուղացիների, բոլոր ազգությունների աշխատավորների արմատական շահերը։

Բոլշևիկյան պարտիայի ղեկավարությամբ ռևոլյուցիոն պրոլետարիատի պայքարը երկրում ձախողում էր կոնտրռևոլյուցիայի բոլոր դիտավորությունները։ Անփառունակ վախճան ունեցան այսպես կոչված՝ օգոստոսյան պետական խորհրդակցությունը, կոռնիլովյան դավադրությունը և այլն։ Հայտնի է,



որ բոլշևիկներն իրենց ձեռքը վերցրին կոռնիլովյան դավադրության ջախջախման գործը և դրանով իսկ փրկեցին ռևոլյուցիայի նվաճումները, փրկեցին Ռուսաստանը արյունարբու դիկտատուրայից և օտարերկրյա ստրկական լծից։ Ղեկավարելով պայքարը կոռնիլովյան դավադրության լիկվիդացման համար՝ բոլշևիկների պարտիան ճանապարհ բացեց սոցիալիստական ռևոլյուցիայի հետագա զարգացման առաջ։

Բանվորների և զինվորների պայքարը կոռնիլովյան դավադրության դեմ հանդիսացավ ռևոլյուցիայի նոր վերելքի սկիզբը։ Այդ պայքարում աճեցին ու ամրապնդվեցին բոլշևիկների կողմից ղեկավարվող ռևոլյուցիոն ուժերը։ Կոռնիլովյան կոնտրռևոլյուցիայի դեմ բացահայտ մարտերի կրակում էլ ավելի աճեց ու մեծացավ բոլշևիկների պարտիայի հեղինակությունն ու ազդեցությունը, որպիսի հանգամանքը հանդիսանում էր սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի ամենակարևոր երաշխիքը։ Կոռնիլովշչինայի ջախջախումը ակնառու կերպով ցույց տվեց, որ բոլշևիկյան պարտիան հասունացել, դարձել է ռևոլյուցիայի վճռական ուժը, որ նա ընդունակ է ջախջախելու կոնտրռևոլյուցիայի ամեն մի մեքենայություն։

Կոռնիլովյան դավադրության ջախջախումից հետո բանվորական, զինվորական և գյուղացիական մասսաները ավելի ու ավելի էին երես դարձնում մենշևիկներից ու էսեռներից և կանգնում բոլշևիկյան դրոշի ներքո։

Արդեն օգոստոսի վերջին Պետրոգրադի Սովետը առաջին անգամ ընդունեց բոլշևիկյան բանաձև։ Սեպտեմբերի սկզբին Մոսկվայի Սովետը նույնպես բոլշևիկյան բանաձև ընդունեց։ Պետրոգրադի և Մոսկվայի Սովետները փաստորեն անցել էին բոլշևիկների ձեռքը։ Բոլշևիկների կողմն էին անցել նաև Եկատերինբուրգի, Սարատովի, Խարկովի, Սամարայի, Բաքվի, Ռոստովի և արդյունաբերական շատ խոշոր կենտրոնների Սովետները։ Բանվորներն ու զինվորները վերընտրում էին Սովետների դեպուտատներին և մենշևիկների ու էսեռների փոխարեն Սովետներն էին ուղարկում բոլշևիկներին։ Այսպես սկսվեց երկրում Սովետների բոլշևիկացման շրջանը։ Կոռնիլովշչինայի դեմ պայքարը ծնեց նոր ռևոլյուցիոն կազմակերպություններ։ Ստեղծվեցին բանվորների, զինվորների, նավաստիների, գյուղացիների, երկաթուղայինների ռևոլյուցիոն կոմիտեներ։ Արդեն օգոստոսի վերջերին—սեպտեմբերի սկզբներին Սովետների աշխատանքն զգալիորեն աշխուժացել էր. նրանք նորից եռուն ռևոլյուցիոն գործունեություն ծավալեցին։ Սովետների նոր աշխուժացման և նրանց բոլշևիկացման շրջանում Կոմունիստական պարտիան նորից առաջ քաշեց իր հին լոզունգը՝ «Ամբողջ իշխանությունը Սովետներին»։ Սակայն նոր պայմաններում այդ լոզունգը հին ձևով չվերածնվեց։ Այլևս չկար երկիշխանություն, բուրժուազիան հանդիսանում էր իշխող և ղեկավարում էր ժամանակավոր կառավարության ամբողջ գործունեությունը։ Բուրժուազիայի իշխանությունը չէր կարելի վերացնել խաղաղ ճանապարհով, նրան անհրաժեշտ էր տապալել միայն զինված ապստամբության միջոցով։

Ամրապնդելով և ընդլայնելով իր ազդեցությունը մասսաների վրա, իր կողմը նվաճելով Սովետները՝ բոլշևիկյան պարտիան Լենինի գլխավորությամբ հաստատ կերպով աշխատավորական լայն մասսաներին տանում էր դեպի ռևոլյուցիայի հաղթանակը։ Աշխատավոր ժողովուրդը զգում էր, որ երկիրը կործանումից փրկելու միակ ելքը սոցիալիստական ռևոլյուցիան է։

1917 թվականի սեպտեմբեր-հոկտեմբեր ամիսներին ամբողջ երկրով մեկ

տարածվեց բանվորական գործադուլների, գյուղացիական շարժումների, զինվորական հուզումների հզոր ալիքը։

Վ. Ի. Լենինը պարտիայի ուշադրությունը սևեռելով զինված ապստամբության նախապատրաստման հարցի վրա, անխոնջ կերպով նշում էր, որ սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի պարտադիր պայմանը՝ ժողովրդական մասսաների աջակցությունն ու պաշտպանությունն է, որ միայն այն ժամանակ կարելի կլինի լոզունգները վերածել գործողության, երբ մասսաները կհասունանան լոզունգները կյանքում կիրառելու համար։

Սեպտեմբեր-հոկտեմբեր ամիսներին, երբ մասսաների ռևոլյուցիոն մոբիլիզացումը ավարտվել էր, Լենինը որոշակիորեն նշեց, որ մոմենտը հասել է, արդեն երկրում առկա է սոցիալիստական ռևոլյուցիայի կազմակերպված հզոր բանակը։

Հաշվի առնելով ռևոլյուցիայի զարգացումը որոշող բոլոր պայմանների առկայությունը՝ Լենինը սեպտեմբերի 12—14-ը Կենտրոնական Կոմիտեին, Պետրոգրադի և Մոսկվայի կոմիտեներին գրեց իր նշանավոր նամակները՝ «Բոլշևիկները պետք է վերցնեն իշխանությունը», «Մարքսիզմը և ապստամբությունը», «Կրիզիսը հասունացել է», որտեղ նա վճռականորեն պահանջեց անմիջապես անցնել զինված ապստամբության նախապատրաստմանը։

Ղեկավարվելով Լենինի ցուցումներով և հենվելով պարտիայի VI համագումարի որոշումների վրա՝ բոլշևիկների պարտիան կազմակերպեց իշխանության համար զինված պայքարի նախապատրաստումը։

Կոմունիստական պարտիայի հիմնադիր ու առաջնորդ Վ. Ի. Լենինը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի նախապատրաստման ու անցկացման անմիջական ոգեշնչողն ու կազմակերպիչն էր։ Մեր պարտիան իր լենինյան Կենտրոնական Կոմիտեի գլխավորությամբ հսկայական աշխատանք կատարեց մասսաներին մոբիլիզացնելու, զինված ապստամբությունը կազմակերպելու համար։ Լենինը պարտիային սովորեցրել էր, որ ապստամբությանը պետք է վերաբերվել ինչպես արվեստի։ Նա պահանջում էր ապստամբությունը նախապատրաստել խորն ու զգույշ, ելնելով կոնկրետ դրությունից։ Խորապես տիրապետելով ռազմական գործը, Լենինը անմիջականորեն վարեց զինված ապստամբության պլանի մշակումը, ղեկավարեց այդ պլանի պրակտիկ կենսագործումը։ Հոկտեմբերի 12-ին Պետրոգրադի Սովետին կից ստեղծվեց Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտե Լենինի գլխավորությամբ։ Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեն փաստորեն դարձավ զինված ապստամբության շտաբը։ Պարտիայի Կենտրոնական Կոմիտեն հսկայական նշանակություն էր տալիս Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեի պարտիական ղեկավարությանը։

Հոկտեմբերի 16-ին Կենտրոնական Կոմիտեի պատմական նիստում, որտեղ վերջնականապես որոշվեց զինված ապստամբության հարցը, Կենտկոմի կողմից առանձնացվեցին 5 ընկեր (Սվերդլով, Ստալին, Ձերժինսկի, Բուբնով, Ուրիցկի), ստեղծվեց ռազմա-ռևոլյուցիոն կենտրոն, որը մտավ Պետրոգրադի Սովետին կից Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեի կազմի մեջ։

Ռազմա-ռևոլյուցիոն կենտրոնը ապահովեց Կենտրոնական Կոմիտեի ամենօրյա ղեկավարությունը Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեում։ Ղեկավարման լենինյան այս ոճը ապահովեց պարտիական ազդեցությունը, օպերատիվությունը պրակտիկ խնդիրների լուծման գործում։ Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեն հենվում էր Կենտրոնական Կոմիտեի զինվորական կազմակերպության, շրջան-



ների, գործարանների ու ֆաբրիկաների պարտիական կազմակերպությունների, Պետրոգրադի Սովետի ապարատի վրա։

Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեի աշխատանքներին ակտիվ մասնակցում էին Սվերդլովը, Ստալինը, Բուբնովը, Ուրիցկին, Ձերժինսկին, Ավանեսովը, Անտոնով-Օվսեենկոն, Պոդվոյսկին և ուրիշներ։

Պարտիայի Կենտկոմի նախաձեռնությամբ հոկտեմբերի 17-ի երեկոյան Սմոլնիում տեղի ունեցավ խորհրդակցություն՝ Պետրոգրադի բոլշևիկյան կազմակերպությունների բոլոր շրջանների ներկայացուցիչների և Կենտկոմին կից զինվորական կազմակերպության անդամների մասնակցությամբ։ Խորհրդակցությունը քննարկեց զինված ապստամբության նախապատրաստման հարցը։ Այդ խորհրդակցությունը ղեկավարում էր Սվերդլովը։ Տարբեր շրջանների ներկայացուցիչները փաստերով և թվերով հաստատում էին, որ ապստամբությունը մայրաքաղաքում հասունացել է։ Պոդվոյսկին զեկուցեց Կարմիր գվարդիայի, զինվորական մասերի և նավատորմի մասին։ Նա մանրամասն պատմեց քաղաքի կայազորի մասին, հատկապես կանգ առավ գվարդիական 10 գնդերի՝ Պավլովյան, Գրենադերյան, Պետրոգրադյան, Լիտովյան, Վոլինյան, Ֆիննական, Իզմայիլյան գնդերի պատրաստականության վրա, որտեղ բոլշևիկները մինչև հուլիսյան դեպքերը հսկայական աշխատանք էին կատարել։ Պոդվոյսկին թվարկեց այն զորամասերը, որոնք պետք է փակեին Պսկովից, Մինսկից, Մոգիլևից Պետրոգրադ բերող ճանապարհները, նշեց, որ Վարշավյան, Բալթիկյան, Վիբորգի երկաթուղային ճանապարհներում, ինչպես և Ցարսկոյե Սելոյում, Գատչինայում և այլ տեղերում կանգնած զորամասերում բոլշևիկները միակ ղեկավարող ուժն են։ Այդ օրերին Կրոնշտադի, Հելսինկֆորսի նավաստիները, Վիբորգի հրետանավորներն ու հետևակը, հյուսիսային ռազմաճակատի զինվորներն իրենց «Սոլդատ», «Վոլնա», «Ակոպնայա պրավդա» թերթերում ամբողջ երկրին հայտարարեցին, որ իրենք հավատարիմ են Լենինի դրոշին, Կոմունիստական պարտիային։

Պարտիայի Կենտրոնական Կոմիտեն Լենինի գլխավորությամբ հանդես եկավ զինված ապստամբության պրակտիկ կազմակերպողի դերում։ Վ. Ի. Լենինը անձամբ ղեկավարում էր նախապատրաստման ամբողջ գործը, ուղղություն էր տալիս Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեի ամբողջ գործունեությանը։ Հոկտեմբերի 17-ին լսելով Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեի ղեկավարության ինֆորմացիան զինված ապստամբության նախապատրաստման ընթացքի մասին, Լենինը նշեց, որ Կոմիտեն քիչ ուշադրություն էր դարձրել հատկապես ռազմական հարցերին, առանձնապես փողոցային մարտերը կազմակերպելուն ու վարելուն, կարևորագույն կետերը գրավելու միջոցառումներին և այլն։ Նա պահանջում էր անմիջապես հատուկ ջոկատներ ստեղծել նվիրված երիտասարդներից՝ գրավելու համար հեռախոսային ցանցը, հեռագրատունը, կամուրջները, պարտավորեցնում էր մասսաներին զինելու համար զենք վերցնել արսենալներից և պահեստներից։

Շնորհիվ պարտիայի ծավալած աշխատանքի, պրոֆմիությունները ամբողջապես գտնվում էին բոլշևիկների պարտիայի դրոշի ներքո։ Հոկտեմբերի 10-ին ֆաբրիկա-գործարանային կոմիտեների 4-րդ կոնֆերանսը հերթական խնդիր համարեց իշխանությունը վերցնելը։ Հոկտեմբերի 15-ին Պետրոգրադի բոլշևիկյան կոմիտեն պարտիայի շրջկոմներին առաջարկեց սերտորեն կապվել ֆաբգործկոմների և պրոֆմիությունների հետ, ուժեղացնել ագիտացիան մաս-

սաների մեջ, արագացնել բանվորներին մասսայաբար ռազմական գործը սովորեցնելու աշխատանքը։

Պրոֆմիությենական կազմակերպությունների և ֆաբգործկոմների ներկայացուցիչները ակտիվ մասնակցություն ունեցան Կենտրոնական Կոմիտեի հոկտեմբերի 16-ի պատմական նիստին։

Բոլշևիկների ղեկավարությամբ ֆաբգործկոմները և պրոֆմիութենական կազմակերպությունները ակտիվ մասնակցություն ունեցան զինված ապստամբության նախապատրաստման և անցկացման գործին։ Ֆաբգործկոմների և պրոֆմիությունների ներկայացուցիչները մտան Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեի կազմի մեջ, սերտ կապ ստեղծելով Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեի և բանվորական մասսայական կազմակերպությունների միջև։ Ֆաբգործկոմներն ամեն կերպ օգնում էին կարմիր գվարդիան զինելու, գործարանների ու ֆաբրիկաների պաշտպանությունը կազմակերպելու գործին։ Պետրոգրադի խոշոր ձեռնարկություններում ֆաբգործկոմներին կից ստեղծվեցին Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեներ։ Բոլշևիկյան պարտիան ֆաբգործկոմների և պրոֆմիությունների միջոցով զինված ապստամբության մեջ ընդգրկեց քաղաքի բանվորական լայն խավերին, ապահովեց բոլշևիկյան ավանգարդի սերտ կապը պրոլետարական մասսաների հետ։

Ինչպես նախորդ շրջաններում, այնպես էլ զինված ապստամբության նախապատրաստման ու անցկացման ժամանակ, բոլշևիկների պարտիայի Կենտրոնական Կոմիտեն Լենինի գլխավորությամբ վճռական պայքար մղեց ամեն տեսակի կապիտուլյանտների ու թերահավատների դեմ (Զինովև, Կամենև), դասակարգային համառ պայքարի միջոցով կենսագործեց մարքսիզմի գաղափարները սոցիալիստական ռևոլյուցիայի իրականացման մասին։

Բոլշևիկների պարտիան զինված ապստամբությունը նախապատրաստելիս հենվում էր երեք հիմնական ուժերի վրա՝ բանվորների, զինվորների և նավաստիների, որոնք ունեին իրենց զինված ուժերը հանձին Կարմիր գվարդիայի։ Զինված ապստամբության նախօրյակին տեղի ունեցավ Կարմիր գվարդիայի համաքաղաքային կոնֆերանսը, որն ընտրեց իր գլխավոր շտաբը։ Հանդիսանալով Պետրոգրադի պրոլետարիատի լավագույն ուժերի միավորողը՝ Կարմիր գվարդիան սոցիալիստական ռևոլյուցիայի ամենակայուն ու ամենանվիրված հենարանն էր, նա հսկայական ռեզերվներ ուներ քաղաքի ձեռնարկություններում։ Պետրոգրադի, Վիբորգի, Նարվայի և այլ շրջանների գործարաններն ու ֆաբրիկաները փաստորեն վեր էին ածվել բոլշևիկյան ամրոցների։

Պարտիայի մյուս կարևոր հենարանը Բալթիկյան նավաստիներն էին։ Նավաստիները միահամուռ կերպով գնում էին բոլշևիկների հետևից։ Սեպտեմբերի վերջին Բալթիական նավատորմը հրաժարվեց կատարել ժամանակավոր կառավարության հրամանները։ Նավաստիների երկրորդ համագումարը որոշեց նավերում և շտաբներում մտցնել կոմիսարների ինստիտուտը։ Ռևոլյուցիայի օրերին Վիբորգից, Հելսինկֆորսից դեպի Պետրոգրադ եկող նավերն ու նավաստիների ջոկատները հսկայական դեր խաղացին սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի գործում։

Պարտիայի երրորդ հենարանը Պետրոգրադի կայազորն էր, որի զորամասերի ճնշող մեծամասնությունը բուրժուական ժամանակավոր կառավարության դեմ էր։

Ժամանակավոր կառավարությունը, որպեսզի վերահաս ռևոլյուցիան զըր-



կեր կարևոր ուժից, դեռ հոկտեմբերի 9-ին հրաման էր տվել քաղաքից հանել կայազորի զորամասերը, իբրև թե երկիրը գերմանացիներից պաշտպանելու համար։

Բոլշևիկների պարտիան Պետրոգրադի բանվորներին ու զինվորներին ոտքի հանեց ռևոլյուցիոն կայազորը քաղաքից դուրս բերելու հրամանի դեմ. փաստորեն այդ մոմենտը հենց դարձավ ռևոլյուցիոն դեպքերի սկիզբը։ Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեն կայազորի զորամասերում նշանակեց իր կոմիսարները։ Կոմիսարները հանդիսացան նոր ստեղծվող իշխանության ներկայացուցիչները և ռևոլյուցիայի զինված ուժերը իրենց ձեռքը վերցրին։ Հոկտեմբերի 21-ին քաղաքի կայազորի ներկայացուցիչների ժողովը ողջունեց Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեի ստեղծումն ու կոմիսարների նշանակումը և խոստացավ ամեն կերպ օգնել ու պաշտպանել ռևոլյուցիայի օրգաններին։

Հոկտեմբերի 22-ը հայտարարված էր Պետրոգրադի Սովետի օրը։ Գործարաններում, ֆաբրիկաներում, կայազորի զորամասերում այդ օրը տեղի ունեցան բազմամարդ միտինգներ, որոնք պահանջեցին իշխանությունը հանձնել Սովետներին, ընդունեցին բոլշևիկյան բանաձևեր։ Փաստորեն հոկտեմբերի 22-ը վճռական մարտերի նախօրյակին ռևոլյուցիոն ուժերի ստուգատեսի օր եղավ։ Սոցիալիստական ռևոլյուցիայի բանակը մարտական պատրաստության մեջ էր։

Չնայած կոնտրռևոլյուցիայի ձեռք առած բոլոր միջոցառումներին, բոլշևիկների պարտիան համառորեն շարունակում էր անհրաժեշտ ձեռնարկումները զինված ապստամբությունը սկսելու համար։ Հոկտեմբերի 24-ին կոնտրռևոլյուցիոն և ռևոլյուցիոն ուժերը պատրաստ էին վճռական մարտերի։ Բանվորների և զինվորների ջոկատները Կենտրոնական Կոմիտեի մշակած հատուկ պլանով սկսեցին գրավել քաղաքի կարևոր կետերը։ Վճռական մոմենտը մոտենում էր։ Այդ օրը Վլադիմիր Իլյիչ Լենինը Կենտրոնական Կոմիտեի անդամներին գրեց, որ դրությունը կրիտիկական է, դանդաղելը մահ կնշանակի։ Հոկտեմբերի 25-ին պետք է բացվեր Սովետների երկրորդ համագումարը։ Լենինը պահանջեց չսպասել համագումարի բացմանը, ասելով, որ «ժողովուրդը իրավունք ունի և պարտավոր է նման հարցերը լուծել ոչ թե քվեարկությամբ, այլ ուժով», որ պետք է խնդիրը լուծել անպայման այսօր՝ երեկոյան կամ գիշերը։

Ռևոլյուցիայի հանճարը 24-ի ուշ երեկոյան գնաց Սմոլնի՝ անձամբ ղեկավարելու մարդկության պատմության նոր դարաշրջանի սկիզբը հանդիսացող պատմական իրադարձությունները։ Իշխանության հարցը լուծվեց հոկտեմբերի 24-ի լույս 25-ի գիշերը։ Հոկտեմբերի 25-ի առավոտյան ժամը 10-ին հրապարակվեց Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեի կոչը, որ գրել էր Վլադիմիր Իլյիչ Լենինը։ Այդ կոչում ասվում էր, որ ժամանակավոր կառավարությունը տապալված է, ապահովված է այն, ինչի համար պայքարել է ժողովուրդը՝ դեմոկրատական խաղաղության անհապաղ առաջարկը, հողի կալվածատիրական սեփականության ոչնչացումը, արդյունաբերության նկատմամբ բանվորական վերահսկողությունը, Սովետական կառավարության ստեղծումը։

Հոկտեմբերի 25-ի օրվա երկրորդ կեսին Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեն ի լուր ամբողջ երկրի հայտարարեց ժամանակավոր կառավարության տապալումը։ Սմոլնիում, Պետրոգրադի Սովետում Լենինը հանդես եկավ զեկուցումով Սովետական իշխանության խնդիրների մասին։ Սովետը միահամուռ ընդունեց լենինյան բանաձևը։

Հոկտեմբերի 25-ին իր աշխատանքները սկսեց բանվորների, զինվորների դեպուտատների Սովետների երկրորդ համագումարը։ Համագումարի առաջին նիստը նվիրված էր հիմնական հարցին՝ իշխանության հարցին։ Հոկտեմբերի 26-ի լուսադեմին համագումարը մեծ ոգևորությամբ ընդունեց Լենինի կազմած պատմական դիմումը՝ ուղղված բանվորներին, գյուղացիներին և զինվորներին, որով հայտարարվում էր, որ ամբողջ իշխանությունը երկրում անցնում է Սովետներին։ Հոկտեմբերի 26-ի երեկոյան Սովետների համագումարի երկրորդ նիստն ընդունեց լենինյան հաշտության դեկրետը։ Այդ դեկրետը հռչակեց Սովետական իշխանության նոր դիվանագիտության սկզբունքները, որոնք հիմնված էին ժողովուրդների հավասարության և ազատ ինքնորոշման սկզբունքի վրա։ Սովետների համագումարը նույնպես միահամուռությամբ ընդունեց լենինյան դեկրետը հողի մասին։

Բանվորների, գյուղացիների և զինվորների դեպուտատների Սովետների երկրորդ համագումարն ստեղծեց առաջին Ժողովրդական Կոմիսարների Սովետը Լենինի գլխավորությամբ։

Բոլշևիկյան պարտիան Հոկտեմբերյան հաղթանակից հետո Լենինի գլխավորությամբ ձեռնարկեց բոլոր միջոցառումները, որպեսզի սոցիալիստական ռևոլյուցիան արագությամբ հաղթանակի ամբողջ Ռուսաստանում։ Շնորհիվ բոլշևիկյան պարտիայի ծավալած պայքարի, Պետրոգրադում հոկտեմբերյան զինված ապստամբության հաղթանակից հետո Սովետական իշխանությունը չտեսնված արագությամբ տարածվեց ամենուրեք։ Բոլշևիկյան պարտիան Լենինի գլխավորությամբ ապահովեց Սովետական իշխանության հաղթական երթը ամբողջ երկրում։

Իր մասշտաբներով ամենավիթխարի, իր խնդիրներով ու նպատակներով ամենախոր՝ Հոկտեմբերյան ռևոլյուցիան,— ասված է ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի և ՍՄԿՊ ԿԿ-ին առընթեր Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի թեզիսներում,— իրագործեց աշխատավորների դարավոր իղձերը, ազդարարեց մարդու կողմից մարդու շահագործման վախճանը, սոցիալական և ազգային ամեն մի ճնշման վախճանը, ոչ միայն ազդարարեց, այլև իրականացրեց սոցիալիզմի, խաղաղության, ժողովուրդների իրավահավասարության ու բարեկամության մեծ գաղափարները։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան հանդիսացավ իսկական ժողովրդական ռևոլյուցիա, իմպերիալիզմի էպոխայում հասարակության զարգացման օրինաչափ արդյունքը։ Նրա ղեկավարը, կազմակերպիչը և ոգեշնչողը Կոմունիստական պարտիան էր Վ. Ի. Լենինի գլխավորությամբ։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի նախապատրաստման ու անցկացման ժամանակ բոլշևիկների պարտիայի կատարած կազմակերպչական և գաղափարական վիթխարի աշխատանքը ապահովեց ռուսական պրոլետարիատի, մեր երկրի ամբողջ աշխատավորության համաշխարհային-պատմական հաղթանակը։ Կոմունիստական պարտիայի՝ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի կազմակերպչի, ոգեշնչողի ու ղեկավարի պատմական փորձը այսօր էլ ամբողջ աշխարհի աշխատավորական մասսաներին օգնում է այն պայքարում, որ մղում են նրանք իմպերիալիզմի դեմ՝ հանուն դեմոկրատիայի ու սոցիալիզմի։

---

# ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՆ ԵՎ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԲԱՆՎՈՐԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄԸ

Ռ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

Քառասուն տարի առաջ Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, ռուսական պրոլետարիատի անօրինակ հերոսության և ժողովրդական լայն մասսաների ռևոլյուցիոն ստեղծագործության շնորհիվ մեր երկրում հաղթանակեց Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան։

Հոկտեմբերյան ռևոլյուցիան իրականություն դարձրեց առաջավոր մարդկության դարավոր երազանքը մարդու շահագործման վերացման մասին և սկիզբ դրեց մարդկության ազատագրմանը կապիտալի լծից։ Այդ ռևոլյուցիայով մարդկության պատմության մեջ սկսվեց նոր դարաշրջան՝ իմպերիալիզմի խորտակման դարաշրջանը, պրոլետարական ռևոլյուցիաների և սոցիալիզմի հաստատման դարաշրջանը։ «Կապիտալիզմի և նրա հետքերի ոչնչացումը, կոմունիստական հասարակարգի հիմքերի հաստատումը կազմում է համաշխարհային պատմության այժմ սկսված նոր դարաշրջանի բովանդակությունը»,— գրել է Լենինը (Երկեր, հ. 31, էջ 491)։

Հոկտեմբերյան ռևոլյուցիան մեծագույն հեղաշրջում եղավ ոչ միայն մեր Հայրենիքի պատմության մեջ։ Նա վճռական ազդեցություն գործեց ամբողջ մարդկության պատմական բախտի վրա։ Մեծ և անգնահատելի է Հոկտեմբերյան ռևոլյուցիայի նշանակությունը համաշխարհային ռևոլյուցիոն շարժման պատմության մեջ, կապիտալիզմի դեմ միջազգային պրոլետարիատի պայքարի, միջազգային բանվորական շարժման պատմության մեջ։

Պատմության մեջ առաջին անգամ ճեղքելով համաշխարհային իմպերիալիզմի ճակատը, աշխարհը բաժանելով երկու սոցիալական սիստեմների՝ կապիտալիստական և սոցիալիստական սիստեմների, Հոկտեմբերյան ռևոլյուցիան ավելի քան խորացրեց ամբողջ կապիտալիստական սիստեմի ընդհանուր ճգնաժամը, որ սկսվել էր դեռևս համաշխարհային պատերազմի տարիներին։ Մեր երկրում սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակը, պրոլետարիատի դիկտատուրայի հաստատումը հսկայական ռևոլյուցիոնացնող ազդեցություն ունեցան ամբողջ աշխարհի վրա, դրանով իսկ ակնառու կերպով ապացուցելով մարքսիզմ-լենինիզմի իրավացիությունը, կապիտալիզմի կործանման և պրոլետարիատի հաղթանակի անխուսափելիությունը։ Եվ դա ամբողջ աշխարհի պրոլետարիատին ոգևորեց ու զինեց սոցիալիզմի հաղթանակի հավատով։

Բանվորների և գյուղացիների առաջին ազատ պետությունը, որ ծնունդ էր Հոկտեմբերյան ռևոլյուցիայի, ուժեղացրեց միջազգային պրոլետարիատի

զիրքերը, դարձավ ռևոլյուցիոն շարժման ուժերի համախմբման կենտրոն, հզոր ու անխորտակելի հենարան համաշխարհային ռևոլյուցիայի համար։

Հոկտեմբերյան ռևոլյուցիան արմատական փոփոխություններ մտցրեց պրոլետարիատի պայքարի կազմակերպական ձևերի մեջ, ամբողջ աշխարհի բանվոր դասակարգի ռևոլյուցիոն ստրատեգիայի և տակտիկայի մեջ։ Նրա անմիջական ազդեցությամբ ռևոլյուցիոն հզոր շարժում ծավալվեց կապիտալի բոլոր հիմնական երկրներում։ Ոչնչացնելով ազգային-գաղութային ճնշումը, ազատագրելով մեր երկրի ժողովուրդներին և պատմության մեջ առաջին անգամ գործնականում իրականացնելով ժողովուրդների հավասարությունը՝ Հոկտեմբերյան ռևոլյուցիան բացեց գաղութային ռևոլյուցիաների դարաշրջանը և ուղի հարթեց միջազգային իմպերիալիզմից շահագործվող ժողովուրդների ազատագրման համար։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի գաղափարները պայքարի հանեցին աշխարհի պրոլետարիատի և ճնշված ժողովուրդների միլիոնավոր մասսաներին։

Միջազգային կյանքի ամբողջ ընթացքը, հետհոկտեմբերյան ռևոլյուցիոն և ազատագրական շարժման ամբողջ պատմությունը փայլուն կերպով հաստատեցին Լենինի այն խոսքերը, թե «....սոցիալիստական ռևոլյուցիան միայն և գլխավորապես ռևոլյուցիոն պրոլետարների պայքարը չի լինի ամեն մի երկրում իր բուրժուազիայի դեմ,— ոչ, նա իմպերիալիզմի կողմից ճնշված բոլոր գաղութների և երկրների, բոլոր կախյալ երկրների պայքարը կլինի միջազգային իմպերիալիզմի դեմ» (Երկեր, հ. 30, էջ 185)։



Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակը խորացնելով կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամը՝ ելք տվեց բանվոր դասակարգի ներսում հասունացած տարերային բողոքին։ Նրա անմիջական ազդեցությամբ մի շարք կապիտալիստական երկրներում բանվորական ռևոլյուցիոն շարժման հսկայական վերելք սկսվեց։

Արդեն 1918 թվականի հունվարին բանվորական ռևոլյուցիա բռնկեց Ֆինլանդիայում, 1918 թվականի հոկտեմբերին ծավալվեց չեխական բանվորների հզոր շարժումը, որոնք պահանջում էին տապալել ավստրո-հունգարական միապետությունը և ստեղծել Չեխոսլովակյան սոցիալիստական ռեսպուբլիկա։ 1918 թվականի նոյեմբերին հզոր ռևոլյուցիա ծավալվեց Ավստրիայում և Գերմանիայում, որի հետևանքով տապալվեցին հաբսբուրգների միապետությունը Ավստրո-Հունգարիայում և Հոհենցոլլերններինը՝ Գերմանիայում։

Հոկտեմբերյան ռևոլյուցիան լուսավորեց կապիտալիստական խավարի թագավորությունը, ամբողջ աշխարհի բանվորները նրա մեջ տեսան իրենց սեփական գործը, բոլոր երկրների աշխատավորների գործը։

Ահա թե ինչու, երբ ամբողջ աշխարհի կապիտալիստները ԱՄՆ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի իմպերիալիստների գլխավորությամբ Սովետական Ռուսաստանը շրջապատեցին ինտերվենցիայի կրակե օղակով, նրանք դեմ առան բոլոր երկրների բանվոր դասակարգի վճռական դիմադրությանը։

Բազմաթիվ կապիտալիստական երկրներում «Ձեռքներդ հեռու Ռուսաստանից» լոզունգը բանվորների մարտականչը դարձավ։ Մի հզոր շարժում ծավալվեց ի պաշտպանություն սովետական ժողովրդի հերոսական պայքարի.



զինվորները հրաժարվում էին կռվել Սովետական Ռուսաստանի դեմ, բանվորները հրաժարվում էին ռազմամթերք բարձել։ Անգլիայի, Ֆրանսիայի և այլ երկրների բանվորները հզոր գործադուլներ կազմակերպեցին, ֆրանսիական ծովայինները Սև ծովում հերոսական ապստամբություն բարձրացրին, որն ուղղված էր ինտերվենցիայի դեմ։ Զանազան երկրների բանվոր դասակարգի զավակները մեր երկրում ինտերնացիոնալ գումարտակներ կազմած կռվում էին սովետական ժողովրդի հետ ուս-ուսի։ Սովետական Ռուսաստանն իր հերթին, գտնվելով ծանր դրության մեջ, կոնտրռևոլյուցիայի հրե ճիրանների մեջ, այնուամենայնիվ հնարավոր աջակցությունն էր ցույց տալիս մյուս երկրների պրոլետարներին։ Թե ինչպիսի հսկայական ուշադրություն էր դարձնում Լենինը միջազգային պրոլետարիատի պայքարի գործին, ցույց են տալիս բազմաթիվ օրինակներ ու փաստեր։ Դիմելով Հունգարիայի բանվորներին՝ Լենինը գրել է. «Այժմ ձեր առաջ կանգնած է ամենաշնորհակալ ու ամենադժվար մի խնդիր՝ կանգուն մնալ ծանր պատերազմում ընդդեմ Անտանտի։ Ամո՛ւր կացեք... Դուք մղում եք միակ օրինական, արդարացի, իսկական ռևոլյուցիոն պատերազմ, ճնշվածների պատերազմը ճնշողների դեմ, աշխատավորների պատերազմը շահագործողների դեմ, պատերազմ հանուն սոցիալիզմի հաղթանակի։ Ամբողջ աշխարհում այն ամենը, ինչ որ ազնիվ է բանվոր դասակարգի մեջ, ձեր կողմն է» (Երկեր, հ. 29, էջ 479—480)։

Հունգարական ռևոլյուցիայի համար կռվող ինտերնացիոնալ բրիգադայի մեջ մտավ առաջին ռուսական գումարտակը, որն իրեն պսակեց անթառամ փառքով։

Համաշխարհային պրոլետարիատի սկսած ռևոլյուցիոն պայքարի կարևոր առանձնահատկություններից մեկը ինտերնացիոնալ խնդիրների զուգակցումն էր տվյալ երկրի աշխատավորների անմիջական կարիքների համար մղվող պայքարի հետ։ Այս փոխադարձ աջակցության մեջ ակնառու կերպով արտահայտվում էր Ռուսաստանի և միջազգային բանվոր դասակարգի պրոլետարական ինտերնացիոնալիզմը և ռևոլյուցիոն համագործակցությունը։

Հոկտեմբերյան ռևոլյուցիան ցույց տվեց, որ պրոլետարիատը կարող է հաղթել, եթե նրան ղեկավարում է իսկական մարքսիստական պարտիա՝ զինված ամենաառաջավոր, ամենառևոլյուցիոն թեորիայով՝ մարքսիզմ-լենինիզմով։ Ամբողջ աշխարհի բանվոր դասակարգի ձեռք բերած ամենաարժեքավոր բանը, Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիայի ուղղակի հետևանքը, հանդիսացավ այն, որ 1918—1920 թվականների ռևոլյուցիոն մարտերի կրակի մեջ ծնունդ առան կոմունիստական պարտիաները, նոր տիպի պարտիաները, որոնք դարձան բանվոր դասակարգի իսկական առաջնորդը։

Արդեն իսկ 1918 թվականին կոմունիստական պարտիաներ ստեղծվեցին Լեհաստանում, Ֆինլանդիայում, Ավստրիայում, Հունգարիայում, Արգենտինայում։ 1918 թվականի դեկտեմբերին ստեղծվեց Գերմանիայի Կոմունիստական պարտիան։ 1919—20 թվականներին կազմավորվեցին ԱՄՆ-ի, Ֆրանսիայի կոմունիստական պարտիաները, ստեղծվեցին առաջին մարքսիստական ռևոլյուցիոն կազմակերպությունները Չինաստանում։ Կոմունիստական պարտիաների հիմնումը անխզելիորեն կապված է բանվոր դասակարգի լավագույն զավակների՝ Մաո Ցզե-դունի, Կարլ Լիբկնեխտի, Ռոզա Լյուքսեմբուրգի, Մարսել Կաշենի, Անտոնիո Գրամշիի, Տիբոր Սամուելիի և շատ ուրիշների անունների հետ։ Կոմունիստական պարտիաների հիմնումը անխզելիորեն կապված է

Լենինի անվան հետ, որի տիտանական պայքարը II Ինտերնացիոնալի օպորտունիզմի դեմ, միջազգային բանվորական շարժման ամբողջ իսկական մարքսիստականն ու լավագույնը միավորելու համար նոր դարաշրջան բաց արեց բանվորական շարժման պատմության մեջ։

***

Կոմունիստական պարտիաների հիմնումը օրակարգի հարց դարձրեց արդեն իսկ համաշխարհային պատերազմի տարիներին հասունացած նոր, III Ինտերնացիոնալ ստեղծելու խնդիրը։ Իր «Իմպերիալիզմը որպես կապիտալիզմի բարձրագույն ստադիա», «Եվրոպայի Միացյալ Նահանգների լոզունգի մասին» և այլ հանճարեղ աշխատություններում Լենինը պատմական նոր պայմաններին համապատասխան զարգացրեց սոցիալիստական ռևոլյուցիայի թեորիան, որը նոր հեռանկարներ բացեց համաշխարհային ռևոլյուցիոն շարժման առջև։ Դրա հետ միասին Լենինը և բոլշևիկների պարտիան դեռ առաջին համաշխարհային պատերազմի տարիներին պայքար սկսեցին միջազգային բանվորական շարժման մեջ եղած ձախ ռևոլյուցիոն տարրերը համախմբելու համար, սկսեցին նախապատրաստել III Ինտերնացիոնալի ստեղծումը։ Այդ ուղղությամբ Լենինը հսկայական աշխատանք կատարեց սոցիալիստների երկու համաշխարհային կոնֆերանսներում՝ 1915 թվականի սեպտեմբերին՝ Ցիմերվալդում և 1916 թվականի ապրիլին՝ Կինտալում։

Նշանավոր Ապրիլյան թեզիսներում Լենինը նորից առաջ քաշեց III Ինտերնացիոնալ ստեղծելու պահանջը։ Միջազգային կոմունիստական շարժման կենտրոն ստեղծելու ուղղությամբ Լենինի և ռուսական բոլշևիկների պայքարը հաջողությամբ պսակվեց։ 1919 թվականի մարտի 2-ին Մոսկվայում բացվեց 30 երկրների կոմունիստական պարտիաների կոնֆերանսը, որը 1919 թվականի մարտի 4-ին իրեն հռչակեց III Կոմունիստական Ինտերնացիոնալի առաջին կոնգրես։

«III, Կոմունիստական Ինտերնացիոնալի հիմնադրումը Մոսկվայում 1919 թվականի մարտի 2-ին այն բանի գրանցումն էր,— ասել է Լենինը.— ինչ նվաճել են ո՛չ միայն ռուսական, ո՛չ միայն ռուսաստանյան, այլև գերմանական, ավստրիական, հունգարական, ֆինլանդական, շվեյցարական,— մի խոսքով՝ միջազգային պրոլետարական մասսաները։

Եվ հենց դրա համար էլ III, Կոմունիստական Ինտերնացիոնալի հիմնադրումը մի հաստատուն գործ է» (Երկեր, հ. 28, էջ 621)։

Կոմինտերնի առաջին կոնգրեսում «Բուրժուական դեմոկրատիայի և պրոլետարիատի դիկտատուրայի մասին» տված իր զեկուցման մեջ, Լենինը Ռուսաստանի օրինակով ցույց տվեց, թե գործնականում ինչպես պետք է լուծվի պրոլետարիատի դիկտատուրայի հարցը, ապացուցելով, որ բուրժուական դեմոկրատիայի պաշտպանությունը դավաճանություն է բանվոր դասակարգի գործին։ Այդ զեկուցումը պայքարի ծրագիր դարձավ պրոլետարիատի դիկտատուրայի հաստատման համար։ Կոնգրեսը խնդիր դրեց՝ բոլոր երկրների բանվոր դասակարգին պարզաբանել բուրժուական դեմոկրատիան պրոլետարական դիկտատուրայով փոխարինելու, Սովետներ կազմակերպելու և նրանց մեջ կոմունիստական մեծամասնություն նվաճելու անհրաժեշտությունը։ Սովետների գաղափարի լայն տարածումը, նրանց գործնական իրականացումը մի շարք



երկրներում, միջազգային բանվորական շարժման վրա Հոկտեմբերյան ռևոլյուցիայի գաղափարների հզոր ազդեցության մի նոր ապացույց հանդիսացան։

III Ինտերնացիոնալի ստեղծումը հսկայական դեր խաղաց ամբողջ միջազգային պրոլետարիատի պայքարի գործում, նպաստեց ռևոլյուցիոն ճգնաժամի հետագա խորացմանն ու սրմանը կապիտալի երկրներում։

1919—1923 թվականները միջազգային բանվորական շարժման պատմության մեջ կապիտալիզմի դեմ ռևոլյուցիոն գրոհի ժամանակաշրջան հանդիսացան։ 1919 թվականի մարտին սովետական ռեսպուբլիկա հռչակվեց Հունգարիայում, ապրիլին՝ Բավարիայում։ 1919 թվականին ռևոլյուցիոն շարժումը մեծ թափ ստացավ Ֆրանսիայում։ 1919—1920 թվականների ընթացքում Իտալիայում բանվորական հզոր շարժում ծավալվեց ֆաբրիկաներն ու գործարանները գրավելու համար։ 1919—1920 թվականներին պրոլետարիատի գործադուլային հզոր պայքար ծավալվեց Անգլիայում։ ԱՄՆ-ում 1919 թվականին գործադուլներին մասնակցեց 4,5 միլիոն բանվոր։ Այդ նույն ժամանակաշրջանում հզոր շարժում ծավալվեց գաղութային ու կախյալ երկրներում՝ Չինաստանում, Հնդկաստանում, Ինդոնեզիայում, Կորեայում և այլուր։

Կռիվների կրակի մեջ էին աճում ու ամրապնդվում կոմունիստական պարտիաները։ Սակայն դրանք երիտասարդ պարտիաներ էին, որոնք չունեին այնպիսի փորձ, ինչպիսին ուներ բոլշևիկյան պարտիան։ Նրանք միատարր չէին իրենց կազմով, դեռևս չէին ազատվել սոցիալ-դեմոկրատական, մանր-բուրժուական, անարխիստական և այլ սխալներից, տառապում էին ձախությամբ ու աղանդավորությամբ, անհրաժեշտ երկաթյա կարգապահության ու ճկունության բացակայությամբ, պայքարի լեգալ ու անլեգալ մեթոդները զուգակցելու անկարողությամբ։

Բոլշևիկների պարտիայի, Հոկտեմբերյան ռևոլյուցիայի փորձը այս պայմաններում կարևորագույն նշանակություն էր ստանում ամբողջ աշխարհի կոմունիստական պարտիաների աշխատանքի համար։ Երիտասարդ կոմունիստական պարտիաների այդ սխալներն ուղղելու գործում անգնահատելի դեր կատարեց Լենինի ««Ձախության» մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ» հանճարեղ աշխատությունը, որում ընդհանրացվել է այդ փորձը և որը միջազգային բանվորական շարժման ստրատեգիայի ու տակտիկայի ուղեցույցը դարձավ։

Կոմունիստական պարտիաների ջանքերը կենտրոնացնելով իրենց շարքերի կազմակերպական և գաղափարական-քաղաքական ամրապնդման վրա՝ Լենինը համառորեն և հետևողականորեն կոմունիստներին սովորեցնում էր ռևոլյուցիոն պայքարի մեջ մասսաներին ղեկավարելու արվեստը։

Միջազգային բանվորական շարժման մեջ կարևորագույն դեր խաղաց 1920 թվականին տեղի ունեցած III Ինտերնացիոնալի երկրորդ կոնգրեսը, որը առաջին պլանի վրա դրեց մասսայական կոմունիստական պարտիաների ստեղծման և աջ օպորտունիստական հայացքների հաղթահարման պայքարը։

1921 թվականին կապիտալիստական երկրներում սկսված տնտեսական ճգնաժամը ուժեղացրեց բուրժուազիայի հարձակումները բանվոր դասակարգի իրավունքների վրա։ Մի շարք երկրների պրոլետարները ժամանակավոր պարտություն կրեցին։ Սոցիալ-դեմոկրատիան այդ դրությունն օգտագործեց բան-

վոր դասակարգի շարքերը պառակտելու և բուրժուազիայի դեմ նրա պայքարը թուլացնելու համար։

Ստեղծված նոր իրադրության մեջ Կոմինտերնը նշեց գլխավոր խնդիրը՝ կազմակերպել բանվոր դասակարգի ուժերը բուրժուազիային հակահարված տալու համար, ամրապնդել պարտիայի ազդեցությունը բանվոր դասակարգի ներսում, լիկվիդացնել պառակտումը միջազգային բանվորական շարժման մեջ և ստեղծել միասնական բանվորական ճակատ։

Երկրորդ Ինտերնացիոնալի սոցիալ-դեմոկրատ լիդերներն ամեն կերպ խանգարում էին միասնական բանվորական ճակատի տակտիկայի իրականացմանը։ Սակայն միասնական բանվորական ճակատի համար մղվող պայքարը հսկայական դեր խաղաց միջազգային բանվորական շարժման մեջ, հասցրեց ռևոլյուցիոն շարժման նոր վերելքի, 1923 թվականի ռևոլյուցիոն մարտերին, մասնավորապես Գերմանիայի բանվոր դասակարգի և մանավանդ Համբուրգի բանվորների հերոսական ելույթին՝ Էռնեստ Թելմանի գլխավորությամբ։ Դասակարգային խոշոր մարտեր ծավալվեցին նաև Բուլղարիայում. Լեհաստանում և այլ երկրներում։ Այս իրադարձություններով ավարտվեց իմպերիալիզմի դեմ միջազգային պրոլետարիատի հերոսական մարտերի ժամանակաշրջանը, կապիտալիզմի դեմ հզոր գրոհի ժամանակաշրջանը, մի գրոհ, որ ջերմացել էր Հոկտեմբերյան ռևոլյուցիայի շնչով և լուսավորվել մեծ Լենինի հանճարով։



1924—1929 թվականների ժամանակաշրջանը բնորոշվում է որպես կապիտալիզմի ժամանակավոր, մասնակի կայունացման ժամանակաշրջան։ Այդ տարիներին միջազգային բանվորական շարժումը թևակոխում է իր զարգացման նոր էտապը։

Այս շրջանում միջազգային բանվորական շարժման համար վճռական գործոն էր նախ և առաջ Սովետական Ռուսաստանի դեմ կազմակերպված իմպերիալիստական ինտերվենցիայի տապալումը, Սովետական Միության տնտեսական ամրապնդումը և միջազգային հեղինակության ուժեղացումը։ Այդ ժամանակ ամբողջ աշխարհի աշխատավորները ծանր կորուստ կրեցին. 1924 թվականի հունվարի 21-ին վախճանվեց Վլադիմիր Իլյիչ Լենինը։ Այդ ծանր կորուստին ամբողջ աշխարհի բանվոր դասակարգը պատասխանեց իր շարքերի է՛լ ավելի համախմբումով։

Կոմինտերնի՝ միջազգային պրոլետարիատի մարտական կազմակերպության կոլեկտիվ իմաստությունը, Սովետական Միության Կոմունիստական պարտիան Ի. Վ. Ստալինի գլխավորած Կենտրոնական Կոմիտեի ղեկավարությամբ՝ հսկայական օգնություն ցույց տվին արտասահմանյան կոմունիստական պարտիաներին, առանձնապես Գերմանիայի, Ֆրանսիայի, Իտալիայի կոմունիստական կազմակերպություններին, որի շնորհիվ նրանց շարքերն ավելի ամրացան ռևոլյուցիոն ալիքի տեղատվության և կապիտուլյանտական, աջ օպորտունիստական նկրտումների ու խմբավորումների դեմ մղվող պայքարում։ Սոցիալ-դեմոկրատիան օգտագործեց կապիտալիզմի ժամանակավոր կայունացումը՝ դասակարգային համագործակցություն քարոզելու, դասակարգային զգոնությունը թմրեցնելու նպատակներով։



Այս պայմաններում միջազգային բանվորական շարժման համար կարևորագույն նշանակություն ստացավ բոլշևիկյան պարտիայի փորձը բոլոր երկրների կոմպարտիաներին հաղորդելու հարցը, կոմունիստական պարտիաների բոլշևիզացիայի, սոցիալ-դեմոկրատական մնացուկների լիկվիդացման, պարտիաները պրոլետարիատի դասակարգային միավորման բարձրագույն ձև դարձնելու հարցը։

Բոլշևիզացիայի համար մղված պայքարը ամրապնդեց կոմունիստական պարտիաները, նրանց կապը մասսաների հետ։ Կոմպարտիաների ղեկավարությյան գլուխ անցավ մի փառապանծ ռևոլյուցիոն կորիզ՝ Ֆրանսիայում Թորեզի գլխավորությամբ, Գերմանիայում՝ Թելմանի։ Իտալական կոմպարտիայում հաղթանակեց Գրամշի-Տոլյատիի գիծը։ Այդ տարիներին բանվոր դասակարգը ցույց տվեց հերոսական ռևոլյուցիոն պայքարի, դասակարգային բարձր գիտակցականության, անձնվիրության, համերաշխության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի նորանոր օրինակներ։

Անթառամ փառքով պսակեցին իրենց Անգլիայի բանվորները՝ 1926 թվականի գործադուլով հերոսական էջ գրելով համաշխարհային բանվորական շարժման տարեգրության մեջ, որը մռայլվեց տրեդյունիոնների գերագույն խորհրդի և լեյբորիստական պարտիայի ղեկավարության դավաճանությամբ։ Այդ տարիներին ԱՄՆ-ի բանվորները Սակկոյի և Վանցետտիի արյունով սըրբագործեցին իրենց պայքարը ամերիկյան իմպերիալիզմի դեմ։

Այդ ժամանակաշրջանի ռևոլյուցիոն ազատագրական պայքարում կարևորագույն նշանակություն ունեցավ հակաֆեոդալական, հակաիմպերիալիստական ռևոլյուցիան Չինաստանում։ Բնորոշելով այդ ռևոլյուցիան՝ Մաո Ցզեդունը գրել է. «Չինական ռևոլյուցիան... իր սոցիալական բովանդակությամբ լինելով նոր տիպի բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիա, բայց դեռևս չհանդիսանալով պրոլետարական սոցիալիստական ռևոլյուցիա, այնուամենայնիվ, վաղուց արդեն դարձել է համաշխարհային պրոլետարական սոցիալիստական ռևոլյուցիայի մի մասը...» (Ընտիր երկեր, ռուս. հրատ., հատ. 3, էջ 214)։

Միջազգային բանվորական շարժման համար պատմական կարևորագույն նշանակություն ունեցավ Կոմինտերնի ծրագրի ընդունումը վեցերորդ կոնգրեսում, 1928 թվականի ամառը։ Ծրագիրը ամփոփեց բանվոր դասակարգի միջազգային ռևոլյուցիոն պայքարի, ազգային-ազատագրական շարժման, ՍՍՌՄ-ում սոցիալիզմի կառուցման փորձը և տվեց կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի համակողմանի վերլուծությունը՝ գիտականորեն հիմնավորելով կապիտալիստական սիստեմի տապալման և կոմունիզմի հաղթանակի անխուսափելիությունը։

Այդ ծրագրում առանձնապես ընդգծվում է Հոկտեմբերյան ռևոլյուցիայի ծնունդ Սովետական Միության դերը որպես համաշխարհային ռևոլյուցիոն շարժման բազա։ Այնտեղ ասված է. «...միջազգային պրոլետարիատը, որը ի դեմս ՍՍՌ Միության ունի իր միակ հայրենիքը, իր նվաճումների կարևորագույն հենարանը և իր միջազգային ազատագրման ամենագլխավոր գործոնը, պարտավոր է նպաստել ՍՍՌ Միության սոցիալիստական շինարարությանը և բոլոր միջոցներով պաշտպանել նրան կապիտալիստական տերությունների հարձակումներից»։

ՍՍՌ Միությունում ծավալուն սոցիալիստական շինարարության հսկայական հաջողությունները, առաջին հնգամյա պլանի իրականացումը, Սովե-

տական պետության տնտեսական հզորության ամրապնդումը միջազգային վիթխարի նշանակություն ունեցան։ Այդ նույն ժամանակաշրջանում՝ 1929—1933 թվականներին կապիտալիստական աշխարհն ընկել էր ծանր տնտեսական ճգնաժամի մեջ, որն ավելի էր խորացրել ու սրել կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամը և ուժեղացրել միջազգային պրոլետարիատի դասակարգային պայքարը։

Համաշխարհային տնտեսական ճգնաժամին զուգորդող քաղաքական ռեակցիայի պայմաններում միջազգային պրոլետարիատի գլխավոր խնդիրը դարձավ պայքարը ֆաշիզմի դեմ, ժողովրդական լայն մասսաների համախմբումը իմպերիալիստական ռեակցիայի դեմ, միասնական հակաֆաշիստական ժողովրդական ճակատի ստեղծումը։ Այդ տարիներին հսկայական աշխատանք կատարեց Գերմանիայի կոմունիստական պարտիան, որին գլխավորում էր Թելմանը։ Իսպանիայի կոմունիստական պարտիան Խոզե Դիասի և Դոլորես Իբարուրիի գլխավորությամբ ընթանում էր Իսպանիայի աշխատավորության ռևոլյուցիոն մարտերի ավանգարդում, մարտեր, որոնք հասցրին իսպանական միապետության տապալմանը։

Կոմինտերնի 7-րդ կոնգրեսը լսելով և քննարկելով Գ. Դիմիտրովի զեկուցումը՝ «Ֆաշիզմի հարձակումը և Կոմունիստական Ինտերնացիոնալի խնդիրները ֆաշիզմի դեմ բանվոր դասակարգի միասնության համար մղվող պայքարում», նշեց, որ բանվոր դասակարգի միասնության համար մղվող պայքարի հետ միասին գլխավոր խնդիր է նաև գյուղացիության, քաղաքային մանր բուրժուազիայի և ճնշված ազգությունների աշխատավոր մասսաների համախմբման համար մղվող պայքարը՝ նպատակ ունենալով միասնական պրոլետարական ճակատի բազայի վրա ստեղծել հակաֆաշիստական ժողովրդական լայն ճակատ։

Ֆաշիզմի դեմ միասնական ժողովրդական ճակատ ստեղծելու համար մղվող պայքարում հսկայական հաջողությունների հասան Ֆրանսիայի բանվոր դասակարգն ու կոմպարտիան, որոնց պայքարը պարտության մատնեց ֆրանսիական ֆաշիզմին։ Լուրջ հաջողությունների հասան Իսպանիայի, Ավստրիայի բանվորները։ Ֆաշիստական դիկտատուրայի դեմ գործողության միասնության համար մղվող պայքարում քիչ բան չարեց նաև Իտալիայի կոմպարտիան։

Երկրորդ համաշխարհային պատերազմի նախօրյակի և ֆաշիստական ագրեսիայի դժվարին տարիներին ամբողջ առաջավոր մարդկության հույսը դարձավ Հոկտեմբերյան ռևոլյուցիայի ծնունդ Սովետական Միությունը, որը որպես փարոս լուսավորում էր մարդկության հակաֆաշիստական պայքարը։

Հենց այդ նկատի ուներ 7-րդ կոնգրեսը, երբ Կոմինտերնի բոլոր սեկցիաների առջև խնդիր դրեց՝ ամեն կերպ օգնել ՍՍՌ Միության ամրապնդմանը, նշելով, որ ՍՍՌ Միության ամրապնդման շահերը համընկնում են համաշխարհային պրոլետարական ռևոլյուցիայի շահերի հետ, որի սկիզբը դրել է Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան։

Միջազգային ռեակցիայի ուժերին հաջողվեց սանձազերծել պատերազմը։ Ազատասեր ժողովուրդները Սովետական Միության գլխավորությամբ պայքարի մեջ մտան ընդդեմ ֆաշիզմի և միջազգային ռեակցիայի ուժերի։ Այս պայքարի ավանգարդում ընթացան կոմունիստական պարտիաները, որոնք գլխա-



վորեցին իրենց երկրների աշխատավորների պայքարը, ոգեշնչվելով Սովետական ժողովրդի անօրինակ հերոսությամբ։



Սովետական Միության պատմական խոշորագույն հաղթանակը երկրորդ համաշխարհային պատերազմում շրջադարձային կետ հանդիսացավ միջազգային ռևոլյուցիոն շարժման պատմության մեջ։ Դրա հետևանքով համաշխարհային կապիտալիստական սիստեմը թևակոխեց ընդհանուր ճգնաժամի երկրորդ փուլը, ճանապարհ բացվեց սոցիալիզմի նոր հաղթական երթի համար, Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիայի գաղափարների նոր հաղթանակի համար։ Երկրորդ համաշխարհային պատերազմի հետևանքով Եվրոպայի և Ասիայի մի շարք երկրներ դուրս եկան կապիտալիստական սիստեմից, ստեղծվեց երկու միջազգային լագեր՝ սոցիալիզմի և կապիտալիզմի լագերը, աճեցին և ամրացան սոցիալիզմի ու դեմոկրատիայի ուժերը, թուլացան իմպերիալիզմի և ռեակցիայի դիրքերը։

Ներկայումս, երբ մի շարք երկրների ժողովուրդներ սոցիալիստական հասարակության կառուցման ուղին են բռնել, Հոկտեմբերյան ռևոլյուցիայի փորձի ստեղծագործական յուրացումը կարևորագույն նշանակություն է ստանում։ «Հատկապես Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի ուղիով ընթանալով է,— ասում է Մաո Ցզե-դունը,— որ մեր ժողովուրդը հասավ ներկայիս հաղթանակներին ու հաջողություններին։ Չին ժողովուրդը միշտ էլ չինական ռևոլյուցիան դիտել է որպես Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիայի շարունակություն և դա մեծ պատիվ է համարում»։

Լենինը ««Ձախության» մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ» աշխատությունում գրել է. «...տվյալ պատմական մոմենտին գործը հենց այնպես է, որ ռուսական օրինակը բոլոր երկրներին ցույց է տալիս ինչ-որ բան, այն էլ չափազանց էական բան նրանց անխուսափելի և մոտալուտ ապագայից» (Երկեր, հատոր 31, էջ 6)։

Հոկտեմբերյան ռևոլյուցիան երևան հանեց և հաստատեց Սոցիալիստական ռևոլյուցիայի ու սոցիալիստական հասարակության կառուցման մի շարք հիմնական ու արմատական սկզբունքներ, որոնք մոռացության տալը ըստ էության նշանակում է դավաճանել մարքսիզմ-լենինիզմի գործին, սոցիալիզմի գործին։ Ըստ որում ամենևին չի բացառվում այն հանգամանքը, որ պրոլետարիատի դիկտատուրայի ձևերը, սոցիալիստական վերափոխումների եղանակներն ու թափը կարող են տարբեր լինել, կախված այս կամ այն երկրի կոնկրետ պատմական պայմաններից։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի գաղափարների հաղթանակը, սոցիալիզմի կառուցումը Եվրոպայի և Ասիայի մի շարք երկրներում, կապիտալիզմի հակասությունների սրումը հետպատերազմյան ժամանակաշրջանում—այս ամենը հասցրեց կոմունիստական պարտիաների հեղինակության նոր չտեսնված բարձրացման միջազգային բանվորական շարժման մեջ, ռեֆորմիստական պարտիաների ճգնաժամի, աջ սոցիալ-դեմոկրատիզմի գաղափարների ազդեցության թուլացման, բուրժուական ու մանր-բուրժուական պարտիաների սնանկացման։ Այս ամենը հնարավոր են դարձնում միջազգային բանվորական շարժման պառակտման հետագա հաղթահարումը, բանվոր դասակարգի շար-

քերի համախմբումը, աշխատավորական մասսաներին խաղաղության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի համար մղվող պայքարում նրա շուրջ միավորելը։

Կապիտալիստական երկրների բանվոր դասակարգի պայքարի ամբողջ հետպատերազմյան շրջանի պատմությունը ակնառու կերպով ցույց է տալիս, որ շարունակ ընդարձակվում ու խորանում է Հոկտեմբերյան ռևոլյուցիայի գաղափարների ազդեցությունը, որ այդ գաղափարները նվաճում են աշխարհը։ Հետպատերազմյան ժամանակաշրջանն ամբողջությամբ բնորոշվում է որպես համաշխարհային բանվորական ու կոմունիստական շարժման չտեսնված վերելքի ժամանակաշրջան։ Այդ շրջանում ուժեղանում է կապիտալիստական երկրների աշխատավորների անողոք շահագործումը և գաղութների աշխատավորների կողոպուտը մոնոպոլիստների կողմից, որոնք տենդորեն ձգտում են առավելագույն շահույթ ձեռք բերել։ Կենսական պայմանների վատացումը առաջացրել է աշխատավորների բողոքի նոր ալիք՝ նրանց պայքարի ուժեղացում կապիտալի դեմ։ Աճել է բանվոր դասակարգի կազմակերպվածությունը, բարձրացել է նրա գաղափարայնությունը։ Բանվոր դասակարգը աճել է նաև քանակապես։

Հետպատերազմյան ժամանակաշրջանի առավել բնորոշ գծերից մեկը կոմունիստական պարտիաների շարքերի աճումն է և ազդեցության ուժեղացումը։

Սովետական Միության պատմական վիթխարի հաջողությունները ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման, կոմունիստական հասարակության կառուցման գործում, ժողովրդական դեմոկրատիայի երկրների աշխատավորների ձեռք բերած հաջողությունները կարևորագույն նշանակություն ունեցան հետպատերազմյան ժամանակաշրջանի միջազգային բանվորական շարժման համար։ Ստեղծագործաբար ուսումնասիրելով Սովետական Միության Կոմունիստական պարտիայի փորձը՝ բոլոր երկրների կոմունիստական պարտիաները մշակում են պրոլետարիատի պայքարի ստրատեգիան ու տակտիկան։ Մի շարք երկրների կոմունիստական պարտիաների հետպատերազմյան ժամանակաշրջանում ընդունած նոր ծրագրերը հենց այդ են վկայում։

Հետպատերազմյան ժամանակաշրջանի միջազգային բանվորական շարժման մեջ կարևոր նշանակություն ունեցավ Պրոֆմիությունների Համաշխարհային Ֆեդերացիայի՝ բանվոր դասակարգի այդ մասսայական մարտական դեմոկրատական կազմակերպության կազմակերպումն ու գործունեությունը։

Այս ամենը նպաստեց ամբողջ աշխարհի պրոլետարիատի նոր ռևոլյուցիոն մասսայական պայքարի վերելքին, ընդդեմ կապիտալիզմի։ Հզոր շարժում ծավալվեց Իտալիայում, Ֆրանսիայում, Անգլիայում։ Մեծ չափով աճել են գործադուլները ԱՄՆ-ում, բազմիցս հզոր գործադուլներ են բռնկում Արևմտյան Գերմանիայում, Բելգիայում, Իսպանիայում և մի շարք այլ երկրներում։

Հետպատերազմյան ժամանակաշրջանի միջազգային բանվորական շարժման բնորոշ առանձնահատկությունն այն է, որ պրոլետարիատի բուն դասակարգային շահերը զուգակցվում են աշխատավորական լայն մասսաների ընդհանուր դեմոկրատական պայքարի հետ, պայքար, որ մղվում է խաղաղության, ազգային անկախության և դեմոկրատիայի համար։ Բանվոր դասակարգը դարձել է խաղաղության ու դեմոկրատիայի միասնական ճակատի առաջատար ուժը՝ իր շուրջը համախմբելով ամբողջ աշխարհի աշխատավորների բազմաթիվ պրոգրեսիվ ու դեմոկրատական կազմակերպությունները։



Միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման համար հսկայական նշանակություն ունեցան ՍՄԿՊ XX համագումարի որոշումները, որոնք մարքսիզմ-լենինիզմը ստեղծագործաբար կիրառելու օրինակ տվին խաղաղության ու սոցիալիզմի համար մղվող պայքարում։ ՍՄԿՊ XX համագումարից հետո աշխարհի կոմունիստական պարտիաների միասնական ճակատը է՛լ ավելի ամրապնդվեց։

Միջազգային ռեակցիայի ուժերը փորձեցին պառակտում գցել միջազգային կոմունիստական շարժման մեջ, հարված հասցնել կոմունիստական պարտիաների միասնական ճակատին՝ անկայուն տարրերին վախեցնելու, իդեոլոգիական դիվերսիաների, ռևիզիոնիզմի նոր ակտիվացման միջոցով, որը մասնավորապես հանդես եկավ «նացիոնալ-կոմունիզմի» դրոշի ներքո։ Հանդիսանալով ռեֆորմիստական իդեոլոգիայի ռեցիդիվը՝ «նացիոնալ-կոմունիզմը» ըստ էության քարոզում է հրաժարումն մարքսիզմի հիմունքներից, Հոկտեմբերյան ռևոլյուցիայի և ՍՍՌՄ-ում սոցիալիզմի կառուցման փայլուն փորձից, հեռացում պրոլետարական ինտերնացիոնալիզմի դիրքերից դեպի նացիոնալիզմի դիրքերը՝ նպատակ ունենալով խախտել միջազգային բանվորական շարժման սոցիալիստական լագերի միասնությունը.

Ռևիզիոնիստական տարրերն առանձին եռանդով փորձեցին այդ նպատակով օգտագործել հունգարական իրադարձությունները։ Սակայն ինչպես Հունգարիայի իրադարձությունների ընթացքը, այնպես էլ ամբողջ աշխարհի կոմունիստական պարտիաների վերաբերմունքը ռևիզիոնիստների ելույթներին, սոցիալիստական լագերի երկրների պարտիական-կառավարական դելեգացիաների, ինչպես նաև եղբայրական կոմունիստական պարտիաների դելեգացիաների բազմաթիվ հանդիպումները ցույց տվին, որ իզուր են իմպերիալիստները փորձում պառակտել սոցիալիստական լագերը և միջազգային կոմունիստական շարժումը։

Ռևիզիոնիստների և օպորտունիստների վրա դրված հույսերը տապալվեցին ոչ միայն Իտալիայի, Ֆրանսիայի, այլև ԱՄՆ-ի, Մեծ Բրիտանիայի, Կանադայի և այլ երկրների կոմունիստական պարտիաներում։ Վերջերս տեղի ունեցած ԱՄՆ-ի կոմունիստական պարտիայի 16-րդ համագումարը, Մեծ Բրիտանիայի կոմպարտիայի 14-րդ արտակարգ համագումարը, Կանադայի բանվորական պրոգրեսիվ պարտիայի 6-րդ համագումարը լուրջ պարտության մատնեցին ռևիզիոնիստներին և կրկին անգամ հաստատեցին իրենց հավատարմությունը մարքսիզմ-լենինիզմին։

Այն հանգամանքը, որ բոլոր կոմունիստական պարտիաները միահամուռ կերպով հավանություն տվին ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումի որոշմանը՝ Մալենկովի, Կագանովիչի, Մոլոտովի և նրանց հարած Շեպիլովի հակապարտիական խմբի վերաբերյալ, մի անգամ ևս ցույց տվեց, որ բոլոր երկրների կոմունիստական պարտիաները պատրաստ են պաշտպանելու ՍՄԿՊ XX համագումարի քաղաքական գիծը։

Միասնական կոմունիստական ճակատի դեմ կազմակերպված իդեոլոգիական դիվերսիաների հետ միասին, միջազգային ռեակցիայի ուժերը դիմում են նաև ամեն տեսակ ռեպրեսիաների ու հալածանքների կոմունիստական պարտիաների դեմ, նրանց դնում են ամենածանր պայմանների մեջ։ Այս

դրությունն առանձնապես սաստկանում է ամերիկյան մայր ցամաքում՝ Ամերիկայի Միացյալ Նահանգների թելադրանքով։ Միմիայն Ուրուգվայում, Կանադայում և Էկվադորում կոմպարտիաները լեգալ աշխատանքի հնարավորություն ունեն։ Մի շարք երկրներում, այդ թվում նաև ԱՄՆ-ում, նրանք գտնվում են կիսալեգալ դրության մեջ, իսկ ամերիկյան երկրների մեծամասնությունում պարզապես արգելված են։

Արևմտյան Գերմանիայում, Իսպանիայում, Հունաստանում, Պորտուգալիայում, Թուրքիայում, Իրանում, Իրաքում, Պակիստանում և այլ երկրներում նույնպես կոմունիստական պարտիաներն արգելված են։

Սակայն այդ ռեպրեսիաներն ու հալածանքները չեն կարող ընկճել ամբողջ աշխարհի կոմունիստների կամքը։ Կոմունիստական պարտիաներն օրեցօր կոփվում են պայքարի մեջ, աճում են գաղափարապես ու կազմակերպորեն, իրենց դրոշի ներքո են համախմբում միջազգային պրոլետարիատի լավագույն ուժերը, հանդիսանում են միջազգային բանվորական շարժման ղեկավար և ուղղություն տվող ուժը։ Կոմունիստների ընդհանուր թիվը աշխարհում կազմում է 33 միլիոն մարդ։

Դասակարգային հակասությունների սրումը, միջազգային բանվորական շարժման վերելքը, իմպերիալիզմի գաղութային սիստեմի ճգնաժամը, այս ամենը շփոթության մեջ են գցում կապիտալիստներին, որոնք իրենց համար ելք են որոնում նոր պատերազմի մեջ։ Այն լպրծուն ու վտանգավոր ուղին, որի վրա կանգնում են միջազգային ռեակցիայի ուժերը, նոր պատերազմը հրահրելու փորձերը հանդիպում են ամբողջ աշխարհի պրոգրեսիվ ուժերի հզոր հակահարվածին։

Հոկտեմբերյան ռևոլյուցիան, որն իր ծննդյան առաջին իսկ օրը իր դրոշի վրա գրեց «խաղաղություն» սրբազան խոսքը, նոր դարաշրջան բացեց ժողովուրդների փոխհարաբերության պատմության մեջ, հարաբերություններ, որոնք հիմնված են հավասարության ու բարեկամության վրա։ Խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքը կազմում է Սովետական Միության և սոցիալիստական լագերի բոլոր երկրների արտաքին քաղաքականության հիմքը։

Իմպերիալիզմի ճիգերն անխուսափելի կործանման են դատապարտված։ Երկու սիստեմների մրցակցության մեջ հաղթանակը լինելու է սոցիալիզմի կողմը, որովհետև սոցիալիզմը հանդիսանում է ամբողջ մարդկության զարգացման անհաղթահարելի տենդենցը։ Հոկտեմբերյան ռևոլյուցիայի բացած ուղին մարդկության լիակատար սոցիալական ազատագրման միակ հնարավոր ուղին է և, ինչպիսի միջոցների էլ դիմեն սոցիալիզմի թշնամիները, պայքարի արդյունքը կարող է լինել միայն Հոկտեմբերյան ռևոլյուցիայի գաղափարների լիակատար հաղթանակը ամբողջ աշխարհում։

---

# ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՆ ԵՎ ԼԵՆԻՆՅԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՀԱՂԹԱՆԱԿԸ

Ջ. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ

Մարդկության դարավոր պատմության մեջ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան հանդիսացավ մեծագույն հեղաշրջումը, ամենամեծ շրջադարձը։ Նոր ուժ հաղորդելով գիտական կոմունիզմի գաղափարներին, Հոկտեմբերյան ռևոլյուցիան պրակտիկայում ցույց տվեց, որ բանվոր դասակարգը, բոլոր աշխատավորները կարող են վերջ տալ դասակարգային ամեն մի ճնշման և կառուցել անդասակարգ հասարակություն։

Հոկտեմբերյան ռևոլյուցիան ազատագրություն բերեց ցարիզմի կողմից ճնշված ու հալածված բոլոր ազգերին և ժողովուրդներին, նրանց առջև բացեց իսկական ազգային վերածննդի, տնտեսական ու կուլտուրական բարգավաճման լայն ճանապարհ։ 1917 թվականի հոկտեմբերին սկսվեց նոր, սոցիալիստական ազգերի կազմավորման, զարգացման, ծաղկման և սոցիալիզմի-կոմունիզմի կառուցման գործում նրանց եղբայրական համագործակցության դարաշրջանը։ Սերտորեն համախմբվելով ռուս պրոլետարիատի շուրջը, մեր երկրի ժողովուրդները միասնական խոյանքով տապալեցին ցարիզմը և կապիտալիզմը, ետ մղեցին բուրժուա-կալվածատիրական կոնտրռևոլյուցիայի, միջազգային իմպերիալիզմի և հիտլերյան հորդաների բոլոր գրոհները։ Միմիայն շնորհիվ այդպիսի համախմբման նրանք նվաճեցին և պաշտպանեցին իրենց ազատությունը և անկախությունը, կառուցեցին սոցիալիզմ և այժմ վստահությամբ գնում են դեպի կոմունիզմ։

Ազգային անհավասարությունը մինչև վերջ ոչնչացրած Սովետական բազմազգ պետության օրինակի ձգողական ուժը, Սովետական Արևելքի ռեսպուբլիկաների ծաղկումը և բարգավաճումը գաղութային և կախյալ երկրների ժողովուրդներին ոգեշնչեցին պայքարելու ազգային ազատագրության համար։ Հոկտեմբերյան ռևոլյուցիան ուժգին հարված հասցրեց իմպերիալիզմի գաղութային սիստեմին, բացեց Արևելքի ժողովուրդների ազատագրության, նրանց երկրներում անկախ ու սուվերեն պետությունների գոյացման և նրանց ազգային վերածննդի պատմական դարաշրջանը։



Ազգային հարցը սոցիալիստական ռևոլյուցիայի և պրոլետարիատի դիկտատուրայի ընդհանուր հարցի անքակտելի մի մասն է։ Ազգային հարցի ելակետային, սկզբունքային դրույթը տվել են դեռևս Մարքսը և Էնգելսը։ Գիտական կոմունիզմի կարկառուն ռահվիրաներն իրենց հայտնագործած պատ-

մության մատերիալիստական ըմբռնման հիման վրա բացահայտելով ազգային հարցի բնույթն ու սոցիալ-տնտեսական հիմքը, տվեցին ազգի և ազգային շարժման պրոբլեմի գիտական բացատրությունը, ցույց տվին, որ ազգային ճնշումը հետևանք է կապիտալիստական սիստեմի սոցիալական անտագոնիզմի և նրա լուծման հնարավորությունը կապեցին շահագործողների դեմ աշխատավորների դասակարգային պայքարի հաջողության հետ, առաջ քաշելով պրոլետարական ինտերնացիոնալիզմի վեհ գաղափարը։ Մարքսը և Էնգելսը ցույց տվին, որ պրոլետարիատն իր դասակարգային վիճակով ինտերնացիոնալ է և նրան խորթ են բուրժուազիայի կողմից կիրառվող ազգային բռնության, մեկ ազգը մյուսի դեմ հրահրելու և կեղեքելու քաղաքականությունը, ազգային սահմանափակումներն ու արտոնությունները։ «Ազատ չէ այն ժողովուրդը, որը ճնշում է այլ ժողովուրդների»—Մարքսի և Էնգելսի այս միտքը դարձավ բոլոր իսկապես ռևոլյուցիոն պրոլետարական պարտիաների լոզունգը։

Մարքսը և Էնգելսը նշում էին, որ բուրժուազիայի իշխանության տապալումով և պրոլետարիատի քաղաքական տիրապետության հաստատումով կվերանան ազգային երկպառակության ու թշնամանքի բոլոր պատճառները։ Դասակարգային անտագոնիզմի և մարդու կողմից մարդու շահագործման վերացումը վերջ կդնի ազգությունների միջև եղած թշնամական փոխհարաբերություններին ու անվստահությանը։

Իմպերիալիզմի էպոխայում, երբ պրոլետարական ռևոլյուցիան պրակտիկորեն դարձավ անխուսափելի, ազգային հարցի լուծումը, ժողովուրդների միջև բարեկամության ու իրավահավասարության կոմունիստական գաղափարախոսության մշակումը հսկայական նշանակություն ստացավ։ Դա բացատրվում էր առաջին հերթին իմպերիալիստական էքսպանսիայի ընդլայնմամբ, գաղութային ճնշման և ստրկացված ժողովուրդների ազգային ազատագրական հզոր շարժման ուժեղացմամբ, ինչպես նաև այն բանով, որ II Ինտերնացիոնալի սոցիալ-շովինիստները խեղաթյուրել էին այդ բնագավառում Մարքսի և Էնգելսի ռևոլյուցիոն հայացքները և փորձում էին պրոլետարիատին շեղել ինտերնացիոնալիզմի ուղուց։

Ազգային հարցը առանձնապես մեծ սրության էր հասել ցարական Ռուսաստանում։ Ցարական միապետությունը, «ամենառեակցիոն ու բարբարոսական պետական կազմը՝ համեմատած Եվրոպայի ու Ասիայի հարևան պետությունների հետ» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 19, էջ 532), դաժանորեն ճնշում էր ոչ ռուս ժողովուրդներին, վարում էր նրանց ռուսացնելու գարշելի քաղաքականություն։ Ցարական կառավարությունը թշնամանք և ազգային գժտություն էր բորբոքում ժողովուրդների միջև, մեկ ազգի հրահրում էր մյուսի դեմ։ Ո՛չ ռուս ժողովուրդների աշխատավոր մասսաները տառապում էին կրկնակի ճնշումից՝ իրենց սեփական և ռուսական կալվածատերերի ու կապիտալիստների շահագործումից։ «Ռուսաստանում բոլոր ազգությունների բանվորներն այնպիսի տնտեսական ու քաղաքական ճնշման տակ են գտնվում, որը չկա ոչ մի պետության մեջ, հատկապես այն բանվորները, որոնք ռուս ազգությանը չեն պատկանում»,— գրել է Լենինը 1905 թվականի մայիսին (Երկեր, հ. 8, էջ 635)։

Նման պայմաններում ցարիզմի տապալման համար բանվոր դասակարգի պայքարի հաջողությունը, պրոլետարիատի դիկտատուրայի հաստատման և սոցիալիզմի կառուցման գործը նշանակալից չափով կախված էր նրանից, թե որքան ճիշտ կդրվի ու կլուծվի ազգային հարցը։ Ահա թե ինչու բոլշևիկների



պարտիան և նրա հիմնադիր մեծ Լենինը իրենց գործունեության հենց սկզբից հատուկ ուշադրությամբ ուսումնասիրում էին ազգային հարցը, մշակում մեր պարտիայի ազգային ծրագիրը։

Դեռևս մեր պարտիայի սկզբնավորման շրջանում Լենինը հսկայական ուշադրություն էր հատկացնում ազգային հարցի շուրջը պարտիայի ծրագրային սկզբունքների մշակմանը։ «Ի՞նչ են «ժողովրդի բարեկամները» և ինչպե՞ս են նրանք մարտնչում սոցիալ-դեմոկրատների դեմ», «Սոցիալ-դեմոկրատական պարտիայի ծրագրի նախագիծն ու բացատրությունը» և այլ աշխատություններում Լենինը գիտականորեն հիմնավորեց պրոլետարական ինտերնացիոնալիզմի և բոլոր ժողովուրդների իրավահավասարության սկզբունքը, ցույց տվեց բանվորների ինտերնացիոնալ համախմբման անհրաժեշտությունը ցարիզմի և կապիտալիզմի դեմ պայքարելու, ռուսական պրոլետարիատի մարքսիստական ինտերնացիոնալիստական պարտիա ստեղծելու համար։

«Կապիտալի տիրապետությունը,— ասում էր Վ. Ի. Լենինը,— միջազգային է։ Ահա թե ինչու ազատագրության համար բոլոր երկրների բանվորների մղած պայքարն էլ հաջողություն ունի միայն այն դեպքում, երբ բանվորները միատեղ են պայքար մղում միջազգային կապիտալի դեմ»։ (Երկեր, հ. 2, էջ 125)։

«Ազգային հարցը մեր ծրագրում», «Հայ սոցիալ-դեմոկրատների մանիֆեստի մասին» և ՌՍԴԲՊ-ի II համագումարի նախօրյակին գրած իր մի շարք այլ հոդվածներում Լենինը մշակեց պարտիայի ազգային ծրագրի հիմնական դրույթները։ Նա ընդգծում էր, որ ռուսական սոցիալ-դեմոկրատների գլխավոր խնդիրը Ռուսաստանի բանվոր դասակարգի միավորումն է, որը հաջողություն կբերի դեմոկրատական ռեսպուբլիկայի և սոցիալիզմի համար մղվող պայքարում։ Այդ խնդրին պետք է ենթարկվեն բոլոր մյուս պահանջները, այդ թվում և ազգային հարցի լուծումը։

«Ինքնակալության անիծյալ պատմությունը մեզ ժառանգություն է թողել այն զանազան ժողովուրդների բանվոր դասակարգերի ահագին օտարացումը, որոնք ճնշվում են այդ ինքնակալության կողմից։ Այդպիսի օտարացումը մեծագույն չարիք է, մեծագույն խոչընդոտ է ինքնակալության դեմ մղվող պայքարում, և մենք չպետք է օրինականացնենք այդ չարիքը, սրբագործենք այդ այլանդակությունը պարտիական առանձնության կամ պարտիական «ֆեդերացիայի» ոչ մի «սկզբունքով»» (Երկեր, հ. 6, էջ 589)։

Ընդհակառակն, Լենինն ընդգծում էր, որ «…ինքնակալության դեմ պայքարի, ամբողջ Ռուսաստանի բուրժուազիայի դեմ պայքարի հարցերում մենք պետք է հանդես գանք որպես միասնական, կենտրոնացած, մարտական կազմակերպություն, մենք պետք է առանց լեզվի և ազգության խտրության հենվենք ամբողջ պրոլետարիատի վրա…» (Երկեր, հ. 6, էջ 419—420)։

Բազմակողմանիորեն մշակելով ազգային հարցը, Վ. Ի. Լենինը պարտիայի ազգային հարցի ծրագիրը կառուցում էր հասարակության զարգացման օբյեկտիվ օրինաչափությունների վրա, այն բխեցնելով իր իսկ հայտնագործած կապիտալիզմի երկու պատմական տենդենցներից։ Առաջին տենդենցը արտահայտվում է ազգային շարժումների զարթոնքի և աճման մեջ, ազգային ամեն մի ճնշման դեմ և ազգային պետություններ ստեղծելու պայքարում։ Երկրորդ տենդենցը ազգերի միջև տնտեսական և ուրիշ այլ կապերի զարգացումն է, ազգային միջնորմների քանդումը, կապիտալի, առհասարակ տնտեսական

կյանքի, քաղաքականության, գիտության և այլնի ինտերնացիոնալ միասնության ստեղծումը։ Երկու տենդենցն էլ, ասում է Լենինը, կապիտալիզմի համաշխարհային օրենքն են։ Առաջինը գերակշռում է վաղ կապիտալիզմի շրջանում, երկրորդը հասուն կապիտալիզմի, իմպերիալիզմի շրջանում, երբ այն ընթանում է դեպի իր փոխարկումը սոցիալիզմի։ Իմպերիալիզմի դարաշրջանում այդ տենդենցները զարգանում են վերին աստիճանի հակասական, քանի որ տնտեսական մերձեցումը կատարվում է ո՛չ թե կամավոր, ժողովուրդների համագործակցության միջոցով, այլ բռնի կերպով՝ մեկ ազգը մյուսի կողմից ստրկացնելու միջոցով։ Այստեղից էլ անհաշտելի հակասությունը ժողովուրդների տնտեսական միավորման պրոցեսի և այդ միավորման իմպերիալիստական միջոցների միջև, այստեղից էլ ճնշված և գաղութացված ժողովուրդների պայքարի անխուսափելիությունը ընդդեմ իմպերիալիստական ստրկության։

Հաշվի առնելով այս տենդենցները՝ Լենինը, Կոմունիստական պարտիան պաշտպանում էին նախ՝ ազգերի և լեզուների իրավահավասարությունը, որևէ արտոնությունների անթույլատրելի լինելը, բոլոր ժողովուրդների ինքնորոշման իրավունքը՝ ընդհուպ մինչև պետական անջատում և ապա «...ինտերնացիոնալիզմի և բուրժուական, թեկուզ և ամենանրբին նացիոնալիզմով պրոլետարիատին վարակելու դեմ անհաշտ պայքար մղելու սկզբունքը» (Երկեր, հ. 20, էջ 14)։

Ազգային ճնշման ոչնչացումը, ժողովուրդների լրիվ իրավահավասարությունը Լենինն առաջ էր քաշում որպես ազգամիջյան փոխհարաբերությունների պրոբլեմի հաջող լուծման գլխավոր պայման։ Դա պարտիայի ազգային ծրագրի կարևորագույն պահանջն է։

«Մարքսիստ չէ նա, անգամ դեմոկրատ չէ նա, ով չի ընդունում և չի պաշտպանում ազգերի ու լեզուների իրավահավասարությունը,— ասում էր Լենինը,— ով չի պայքարում ամեն մի ազգային ճնշման կամ անիրավահավասարության դեմ» (Երկեր, հ. 20, էջ 15)։

Հռչակելով ազգերի ինքնորոշման իրավունքը, բոլշևիկները նպատակ ունեին պայքարել ամեն տեսակի ազգային ճնշման քաղաքականության դեմ՝ հանուն բոլոր ազգությունների բանվորների լրիվ միավորման մեկ ընդհանուր միասնական և ինտերնացիոնալ բանակի մեջ։ Ազգերի ինքնորոշման իրավունքը ոչ միայն չի հակասում պրոլետարական ինտերնացիոնալիզմին, այլև նրա ուղղակի արտահայտությունն է։

Ազգերի ինքնորոշման պահանջը Լենինը համարում էր խիստ անհրաժեշտ մեր պարտիայի ծրագրում։ Իր «Ազգերի ինքնորոշման իրավունքի մասին», «Քննադատական դիտողություններ ազգային հարցի մասին», «Ռևոլյուցիոն պրոլետարիատը և ազգերի ինքնորոշման իրավունքը», «Սոցիալիստական ռևոլյուցիան և ազգերի ինքնորոշման իրավունքը», «Ինքնորոշման վերաբերյալ դիսկուսիայի արդյունքները» և այլ աշխատություններում Լենինը մշտապես ընդգծում էր այդ պահանջի դիալեկտիկական իմաստը, բացատրելով, որ ազգերի ինքնորոշման իրավունքը պետք է դիտել պրոլետարիատի դասակարգային պայքարի արմատական շահերի հետ անխզելի կապի մեջ։ «Ռևոլյուցիոն պրոլետարիատը և ազգերի ինքնորոշման իրավունքը» հոդվածում Լենինը գրում է. «Մենք պահանջում ենք ինքնորոշման ազատություն, այսինքն՝ անկախություն, այսինքն՝ կեղեքվող ազգերի անջատման ազատություն, ո՛չ այն պատճառով, որ մենք երազում ենք տնտեսական տրոհում կամ մանր պետու-



թյունների իդեալ, այլ ընդհակառակը, այն պատճառով, որ մենք կամենում ենք խոշոր պետություններ և մերձեցում, նույնիսկ ազգերի ձուլում, սակայն իսկական դեմոկրատական, իսկական ինտերնացիոնալիստական հողի վրա, որն աներևակայելի է առանց անջատման ազատության» (Երկեր, հ. 21, էջ 524—525)։

Վլադիմիր Իլյիչն ընդգծում էր, որ անջատման ազատությունը կամավոր միավորման անհրաժեշտ պայմանն է։

Լենինը մերկացրեց II Ինտերնացիոնալի օպորտունիստների՝ Ռենների, Բաուերի, Կաուցկու և նրանց ռուսական հետևորդների՝ բունդականների, մենշևիկների բուրժուական նացիոնալիզմով տոգորված թեորիաները «ազգային միասնության», «ընդհանուր ազգային կուլտուրայի», «ազգային-կուլտուրական ավտոնոմիայի մասին», որոնք նպատակ ունեին պրոլետարիատի ազգային խնդիրները հակադրել նրա ինտերնացիոնալ խնդիրներին, պրոլետարիատը ենթարկել բուրժուական իդեոլոգիային։ Նա բնորոշեց աշխատավորների ազգային և ինտերնացիոնալ շահերի միասնության ապահովման կոնկրետ ուղիները, ռևոլյուցիոն պայքարում նրանց համատեղման անհրաժեշտությունը։

Լենինը հերքեց կապիտալիստական ազգերի ներսում դասակարգային շահերի «ներդաշնակության», շահագործողական հասարակության մեջ «ներազգային միասնության» մասին բուրժուական առասպելը։ Նա ցույց տվեց, որ կապիտալիզմի պայմաններում ամեն մի ազգի մեջ իրականում կա երկու ազգ՝ բուրժուազիան և պրոլետարիատը, շահագործողներ և աշխատավորներ և համապատասխանորեն «երկու ազգային կուլտուրա»՝ ռեակցիոն շահագործողական կուլտուրա և պրոգրեսիվ դեմոկրատական կուլտուրա։

Լենինը ազգային-գաղութային հարցի խոշորագույն տեսաբանն էր։ Նա ազգային հարցի մասին գիտական կոմունիզմի հիմնադիրների տված գաղափարները դարձրեց իմպերիալիզմի դարաշրջանում ազգային-գաղութային ռևոլյուցիաների վերաբերյալ հայացքների մի ներդաշնակ սիստեմ, ազգային գաղութային հարցը կապեց իմպերիալիզմի տիրապետության տապալման հարցի հետ, ազգային գաղութային հարցը հայտարարեց միջազգային պրոլետարական ռևոլյուցիայի ընդհանուր հարցի բաղկացուցիչ, օրգանական մասը։

Մեր պարտիայի ծրագրային դրույթները և որոշումները, որոնց իմաստն է՝ ազգերի ինքնորոշման իրավունք՝ ընդհուպ մինչև պետական անջատում, հարկադրանքի բոլոր և ամեն տեսակ ձևերի վճռական ժխտում ազգությունների նկատմամբ, ժողովուրդների հավասարություն ու սուվերենության ճանաչում իրենց բախտը տնօրինելու գործում, ժողովուրդների միավորում համագործակցության և կամավորության սկզբունքներով հսկայական ռևոլյուցիոնացնող դեր խաղացին բանվորների ու գյուղացիների դաշինքը ամրապնդելու, մեր երկրի բոլոր ժողովուրդների աշխատավորներին միավորելու և ցարիզմի ու բուրժուազիայի իշխանությունը տապալելու, պրոլետարիատի դիկտատուրա հաստատելու գործում։



Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան ամփոփեց մեր պարտիայի որոշումների գործնական հանրագումարները ազգային հարցում։

Տապալելով կալվածատերերի ու կապիտալիստների արյունոտ իշխանությունը և հաստատելով պրոլետարիատի դիկտատուրա՝ Հոկտեմբերյան ռևո-

լյուցիան փշրեց ազգային ճնշման շղթաները, վերջ տվեց ազգամիջյան հին հարաբերություններին, վերացրեց ազգային թշնամությունը, պայմաններ ստեղծեց ժողովուրդների համագործակցության համար։ Ռուսական պրոլետարիատը նվաճեց գաղութացված ժողովուրդների վստահությունը ո՛չ միայն Ռուսաստանում, այլև ամբողջ Արևելքում։

Հոկտեմբերյան ռևոլյուցիան հատկապես բախտորոշ նշանակություն ունեցավ հայ ժողովրդի համար։ Արևմուտքի իմպերիալիստների փարիսեցիական դիվանագիտական մարզանքները բացի ազգային աղետից ոչինչ չտվին խաբված և թուրքական ենիչերիների սրին մատնված հայ աշխատավոր զանգվածներին։ Միայն սոցիալիզմի գաղափարը և Սովետական իշխանության հաստատումը հայ ժողովրդին փրկեցին ֆիզիկական բնաջնջումից, նրան բերին խաղաղություն, առաջադիմություն և իսկական վերածնունդ։

Գլխավորելով աշխարհում առաջին պրոլետարական պետությունը՝ Լենինը պարտիայի և Սովետական իշխանության առջև որպես անհետաձգելի խնդիր դրեց պրակտիկայում լուծել ազգային հարցը։ Հոկտեմբերի հենց առաջին օրերին Լենինի ղեկավարությամբ և անմիջական մասնակցությամբ մշակվեցին Սովետական իշխանության կարևորագույն դեկրետները և դեկլարացիաները, որոնց մեջ բոլշևիկների պարտիայի ազգային քաղաքականությունը պետական օրենքի ուժ ստացավ։ Այդ գործում խոշոր դեր խաղաց Ազգությունների գործերի ժողովրդական կոմիսարիատը, որը գլխավորում էր Ի. Ստալինը։

Սովետական իշխանության ազգային քաղաքականության հիմնական դրույթները հռչակվեցին Սովետական կառավարության կողմից 1917 թվականի նոյեմբերի 2 (15)-ին ընդունված «Ռուսաստանի ժողովուրդների իրավունքների դեկլարացիայում».

1. «Ռուսական ժողովուրդների հավասարություն և սուվերենություն։

2. Ռուսաստանի ժողովուրդների ազատ ինքնորոշման իրավունք՝ ընդհուպ մինչև անջատում և ինքնուրույն պետության կազմավորում։

3. Բոլոր և ամեն տեսակի ազգային և ազգային-կրոնական արտոնությունների և սահմանափակումների վերացում։

4. Ռուսաստանի տերիտորիայի վրա բնակվող ազգային փոքրամասնությունների և էթնիկական խմբերի ազատ զարգացում»։

Սովետական իշխանությունն իր գործունեության հիմքում դնելով ազգային անհավասարության լրիվ լիկվիդացման, բոլոր ժողովուրդների տնտեսական, կուլտուրական և քաղաքական բազմակողմանի զարգացման լենինյան քաղաքականությունը, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ մեծագույն հետևողականությամբ և եռանդով անդադրում պայքար ծավալեց այդ շնորհակալ խնդիրների լուծման համար։

Հայտնի է, որ ցարական Ռուսաստանում բոլոր ո՛չ ռուս ազգությունները չունեին իրենց պետականությունը։ ՍՍՌՄ եղբայրական ընտանիքի իրավահավասար ազգերը և ժողովուրդները մինչռևոլյուցիոն անցյալում խիստ կերպով միմյանցից տարբերվում էին իրենց տնտեսական, քաղաքական և կուլտուրական զարգացման մակարդակով։ Ցարական Ռուսաստանում, որտեղ տիրապետում էին ազգային ճնշումը և անհավասարությունը, մի շարք ժողովուրդներ ուղղակի դատապարտված էին կործանման, իսկ շատերը գտնվում էին հասարակական զարգացման մինչկապիտալիստական ստադիայում, չունեին նույնիսկ իրենց գիրը։



Հին Ռուսաստանում ազգային ծայրամասերը, հատկապես արևելքը, հե-
տամնաց գաղութներ էին։ Բավական է ասել, որ Ռուսաստանի բոլոր արևելյան
շրջաններին, ներառյալ նաև Ուրալը, բաժին էր ընկնում Ռուսաստանի արդյու-
նաբերական ամբողջ արտադրանքի միայն 11,5 տոկոսը։ Խոշոր արդյունաբե-
րության արտադրանքի 70 տոկոսից ավելին արտադրվում էր այն շրջաններում,
որոնք կազմում էին հին Ռուսաստանի տերիտորիայի մոտ 7 տոկոսը։ Միջին
Ասիան, Անդրկովկասը, Ղազախստանը և ազգային մյուս շրջանները համարյա
չունեին իրենց արդյունաբերությունը և միայն հումք մատակարարողներ էին
Ռուսաստանի արդյունաբերական կենտրոններին։ Արտադրողական ուժերի
այսպիսի անհավասարաչափ տեղաբաշխումը, արդյունաբերության կտրվածու-
թյունը հումքի բազայից և այլն, արմատապես հակասում էին մեր Հայրենիքի
ժողովուրդների շահերին։
Հոկտեմբերյան ռևոլյուցիան բոլոր ժողովուրդներին ազատագրեց ճնշու-
մից և քաղաքական ու իրավական հավասարություն հաստատեց երկրի բոլոր
ազգությունների միջև։ Սակայն սա դեռ բոլորը չէր։ Անհրաժեշտ էր վերացնել
փաստական անհավասարությունը ժողովուրդների միջև և, ամենից առաջ, վե-
րացնել ճնշված ժողովուրդների տնտեսական, քաղաքական և կուլտուրական
դարավոր հետամնացությունը, նրանց առաջ մղել սոցիալիստական շինարա-
րության ուղիով։ Արտադրողական ուժերի սոցիալիստական տեղաբաշխման
գլխավոր սկզբունքներից մեկը հանդիսացավ անցյալում հետամնաց ազգային
շրջանների տնտեսության ամեն կերպ զարգացումը, ազգային բանվոր դասա-
կարգի կադրերի և ինտելիգենցիայի ստեղծումը և սովետական ժողովուրդների
միջև բազմակողմանի եղբայրական համագործակցության ապահովումը։
Կոմունիստական պարտիայի որոշումներում փաստական անհավասարու-
թյան լիկվիդացման հարցի կապակցությամբ հիմնական տեղ էր հատկացվում
սովետական ժողովուրդների պետականության ամրապնդմանն ու զարգաց-
մանը։
ՌԿ(բ)Պ X համագումարի բանաձևում՝ «Պարտիայի հերթական խնդիրնե-
րը ազգային հարցում» նշվում էր, որ «...պարտիայի խնդիրն է՝ օգնել ոչ-վե-
լիկոռուս ժողովուրդների աշխատավոր մասսաներին հասնելու առաջ անցած
կենտրոնական Ռուսաստանին, օգնել նրանց՝ ա) զարգացնելու և ամրապնդելու
իրենց մոտ սովետական պետականությունը՝ այդ ժողովուրդների ազգային-
կենցաղային պայմաններին համապատասխանող ձևերով. բ) զարգացնելու և
ամրապնդելու իրենց մոտ մայրենի լեզվով գործող դատարան, ադմինիստրա-
ցիա, տնտեսության օրգաններ, իշխանության օրգաններ՝ կազմված տեղական
բնակչության կենցաղն ու հոգեբանությունն իմացող տեղացի մարդկանցից...»
(ՍՄԿՊ-ն համագումարների, կոնֆերենցիաների և Կենտկոմի պլենումների բա-
նաձևերում ու որոշումներում, մաս 1, էջ 713, 1954)։ Բանաձևի մյուս երկու
կետերում նշվում էր ազգությունների մայրենի լեզվով կուլտուր-լուսավորչա-
կան հիմնարկների ստեղծման և որակյալ բանվորական ազգային կադրերի ու
սովետական-պարտիական աշխատողների պատրաստման անհրաժեշտությու-
նը կառավարման բոլոր ճյուղերում և առաջին հերթին լուսավորության ցան-
ցում։
ՍՄԿՊ-ն հետևողականորեն և անշեղորեն կենսագործում էր բոլոր ժողո-
վուրդների ազգային սովետական պետականության ստեղծման և նրանց բազ-
մակողմանի տնտեսական և կուլտուրական զարգացման լենինյան այդ գիծը։

Ռուսական բանվոր դասակարգը Կոմպարտիայի ղեկավարությամբ օգնեց նախկինում ճնշված մեր երկրի ժողովուրդներին զարգացնելու և ամրապնդելու իրենց մոտ սովետական սոցիալիստական պետականություն, ստեղծելու սոցիալիստական արդյունաբերություն, ազգային կադրեր, լիկվիդացնելու տնտեսական և կուլտուրական հետամնացությունն ու անհավասարությունը։

Սովետական պետական շինարարության փորձը արդեն իսկ սովետական կարգերի առաջին տարիներին առաջ քաշեց Սովետական բազմազգ պետության ֆեդերատիվ կառուցվածքի հարցը։ Դա իր արտացոլումը գտավ մեր պարտիայի ու կառավարության մի շարք փաստաթղթերում. «Աշխատավոր և շահագործվող ժողովրդի իրավունքների դեկլարացիայում» (1918 թ. հունվար), պարտիայի VIII համագումարում ընդունված ծրագրում, ազգային հարցի վերաբերյալ Կոմինտերնի II կոնգրեսի թեզիսներում և այլն։

Դեռևս 1916 թվականին Լենինը կանխատեսում էր, որ բուրժուազիայի իշխանության տապալումից և պրոլետարիատի դիկտատուրա հաստատելուց հետո կստեղծվեն նոր, սոցիալիստական ազգեր, որոնք կձգտեն մերձեցման և մեկը մյուսի հետ միավորման։ «Բուրժուազիայի լծից ազատված աշխատավոր մասսաները,— գրում էր Լենինը,— ամբողջ ուժերով կ ձ գ տ ե ն դաշնակցելու և միաձուլվելու խոշոր ու առաջավոր սոցիալիստական ազգերի հետ...» (Երկեր, հ. 22, էջ 457)։

Լենինը բազմիցս ընդգծել է, որ մեր պարտիայի ծրագրային պահանջը ազգերի ինքնորոշման իրավունքի մասին՝ ընդհուպ մինչև պետական անջատում, բոլորովին չի նշանակում, թե մենք կողմնակից ենք փոքր. թզուկ պետությունների գոյացման։ Բոլոր այլ հավասար պայմաններում մեծ պետությունը շատ ավելի մեծ առավելություններ ունի փոքրի համեմատությամբ։

Ամեն մի ճնշումից և բռնությունից ազատ տարբեր ազգությունների կամավոր միավորման սկզբունքով ստեղծվեց ՌՍՖՍՌ-ն, որտեղ ներդաշնակ կերպով համատեղվեցին երկու օբյեկտիվ տենդենցներ ազգերի և ազգային հարաբերությունների զարգացման մեջ. ազգային ազատության, իր պետականության ստեղծման, տնտեսական, քաղաքական և կուլտուրական զարգացման տենդենցը մի կողմից և բարեկամական համագործակցության ու փոխօգնության, ազգերի ամեն կերպ մերձեցման տենդենցը՝ մյուս կողմից։

Արդեն քաղաքացիական պատերազմի շրջանում Սովետական իշխանության հիման վրա ստեղծվեց բոլոր ազգերի աշխատավոր մասսաների ռազմաքաղաքական միություն՝ ուղղված ներքին և արտաքին կոնտրռևոլյուցիայի դեմ։ Այդ գործում ղեկավար դերը պատկանում էր մեր պարտիային։ Քաղաքացիական պատերազմի ավարտից հետո սովետական ռեսպուբլիկաների ռազմա-քաղաքական դաշինքը ամրապնդվեց և զարգացվեց ավելի սերտ պայմանագրային հարաբերություններով, տնտեսական դաշինքով, որը թելադրվում էր բոլոր տնտեսական ռեսուրսների միավորման անհրաժեշտությամբ՝ երկրի տնտեսական քայքայվածությունը վերացնելու և ժողովրդական տնտեսությունը վերականգնելու համար։

Միավորման շարժման ցայտուն օրինակներից մեկը 1921 թվականի վերջին և 1922 թվականի սկզբին սովետական բոլոր ռեսպուբլիկաների միացյալ ճակատի ստեղծումն էր ընդդեմ կապիտալիստական երկրների դիվանագիտական հակասովետական լայն հարձակման։ 1922 թվականի փետրվարի 22-ին Մոսկվայում պայմանագիր կնքվեց Ադրբեջանական, Հայկական, Վրացական,



Բելոռուսական, Ուկրաինական, Խորեզմի, Բուխարայի, Հեռավոր Արևելյան անկախ ռեսպուբլիկաների և ՌՍՖՍՌ-ի միջև, ըստ որի ՌՍՖՍՌ-ին տրվեց Ջենովայի միջազգային կոնֆերանսում բոլոր վերոհիշյալ ռեսպուբլիկաների ներկայացուցչությունը։ Սովետական բոլոր ռեսպուբլիկաները ձգտում էին սերտ համագործակցության։ Բայց անհրաժեշտ էր ճիշտ ուղղություն տալ այդ ձգտմանը, ամենայն զգուշությամբ վերաբերվել բոլոր ազգերի ու ժողովուրդների շահերին։ «Մենք,— ասում էր Լենինը,— ազգերի կ ա մ ա վ ո ր միություն ենք ուզում, այնպիսի միություն, որը ո՛չ մի բռնություն չթույլատրեր մի ազգի կողմից մյուսի վրա, այնպիսի միություն, որը հիմնված լիներ ամենալրիվ վստահության վրա, եղբայրական միասնության պարզ գիտակցության վրա, լիովին կամավոր համաձայնության վրա» (Երկեր, հ. 30, էջ 368)։

Լենինը խիստ քննադատության ենթարկեց շտապողականությունն ու վարչարարությունը ազգային քաղաքականության մեջ, հատկապես Ի. Վ. Ստալինի սխալը, որը հանդես էր եկել «ավտոնոմիզացիայի» նախագծով, ըստ որի պետք է միավորվեին ոչ թե իրավահավասար սովետական ռեսպուբլիկաները, այլ դրանք պետք է մտնեին ՌՍՖՍՌ-ի մեջ՝ ավտոնոմ միավորների իրավունքով։ 1922 թվականի սեպտեմբերի 27-ին Քաղբյուրոյի անդամներին հասցեագրած նամակում Լենինը առաջարկեց հարցի սկզբունքային մի այլ լուծում՝ սովետական բոլոր ռեսպուբլիկաների, այդ թվում նաև ՌՍՖՍՌ-ի կամավոր միավորումը մի նոր կազմավորված՝ Սովետական Ռեսպուբլիկաների Միության մեջ՝ նրանց լիակատար իրավահավասարության հիման վրա։

Վ. Ի. Լենինը վճռաբար դատապարտեց մեծապետական թեքումը ազգային հարցում, որպես գլխավոր վտանգ այն ժամանակվա պայմաններում, մատնանշեց սովետական ռեսպուբլիկաների միավորման գաղափարի մեծապետական-շովինիստական խեղաթյուրման վտանգը, նախազգուշացրեց այդ գործում չափից ավելի ցենտրալիզմից և բյուրոկրատիզմից։ «Մենք՝ վելիկոռուսական կոմունիստներս, պետք է մեծագույն խստությամբ մեր միջավայրում հետապնդենք վելիկոռուսական նացիոնալիզմի ամենափոքրիկ արտահայտությունը, որովհետև այդ արտահայտությունները ընդհանրապես դավաճանություն լինելով կոմունիզմին, մեծագույն վնաս են բերում...» (Երկեր, հ. 30, էջ 372)։

Լենինն ընդգծում էր ազգերի լիակատար, փաստական իրավահավասարության ապահովման, տարբեր ազգերի առանձնահատկությունների ու շահերի նկատմամբ ուշադիր վերաբերմունքի, յուրաքանչյուր ռեսպուբլիկայի տնտեսության ամրապնդման անհրաժեշտությունը, որպես ժողովուրդների համախմբման և եղբայրական բարեկամության անհրաժեշտ պայման։ Լենինը մատնանշում էր, որ ՍՍՌՄ ազգային հարցի ճիշտ լուծումը վիթխարի նշանակություն ունի ոչ միայն Սովետական երկրի համար, այլև Ասիայի, Արևելքի հարյուր միլիոնավոր ժողովուրդների համար։

1922 թվականի դեկտեմբերի 30-ին ՍՍՌՄ Սովետների I համագումարը Դեկլարացիա և պայմանագիր ընդունեց ՍՍՌՄ-ի կազմավորման մասին։ Դեկլարացիան հռչակում էր ՍՍՌՄ-ի մեջ միավորված բոլոր ժողովուրդների կամավորության և հավասարության սկզբունքը, և նրանից դուրս գալու իրավունքը։

Լենինի նախաձեռնությամբ ՍՍՌՄ ստեղծումը Կոմունիստական պարտիայի ազգային ճիշտ քաղաքականության վառ արտահայտությունն էր։ Դա ցույց

տվեց, որ ի դեմս սովետական կարգի պրոլետարիատը գտել է ազգային հարցի ճիշտ լուծման, իրավահավասար ժողովուրդներին միասնական, կենտրոնացված պետության մեջ կամավոր սկզբունքներով միավորելու միակ ճիշտ բանալին։

Սոցիալիստական պետության ինտերնացիոնալ բնույթը, սովետական ավտոնոմիայի և ֆեդերացիայի ճկունությունն ու ձևերի բազմազանությունը, Կոմունիստական պարտիայի ազգային ճիշտ քաղաքականությունը Սովետական իշխանությանը հնարավորություն տվին ընդգրկելու ազգային հարաբերությունների ամբողջ բազմազանությունը, ազգերի և ժողովուրդների պատմական զարգացման բոլոր աստիճանները, ինքնուրույն քաղաքական կյանքի կոչել ամենահետամնաց մասսաներին։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի միջոցով ձեռք բերված ազգային իրավական հավասարությունը ժողովուրդների մեծ նվաճումն էր, բայց նա ինքնըստինքյան չէր լուծում ամբողջ ազգային հարցը։

Մի շարք ազգեր և ժողովուրդներ, որոնք չէին տեսել կապիտալիստական արտադրաեղանակ, չունեին իրենց բանվոր դասակարգը, հետամնաց էին տնտեսական և կուլտուրական տեսակետից, ի վիճակի չէին լիովին օգտագործելու ազգային իրավահավասարությամբ նրանց վերապահվող իրավունքներն ու հնարավորությունները և առանց լուրջ օգնության հասնելու առաջ անցած ազգություններին։

Մարքսիզմն ուսուցանում է, որ ժողովուրդների բախտը որոշվում է, նախ և առաջ տնտեսական զարգացմամբ։ Այս իսկ տեսակետից անհրաժեշտ էր վերջ դնել ժողովուրդների միջև եղած փաստական անհավասարությանը։ Իսկ դա տևական պրոցես էր, որը պահանջում էր համառ ու հաստատակամ պայքար մղել ազգային ճնշման և գաղութային ստրկության բոլոր մնացուկների դեմ։

Արդեն 1923 թվականին պարտիայի XII համագումարը ազգությունների փաստական անհավասարության լիկվիդացումը, հետամնաց ժողովուրդների կուլտուրական և տնտեսական մակարդակը բարձրացնելու համար պայքարելը համարեց հրատապ և առաջնակարգ խնդիր։

Երկրի ինդուստրացումը արդյունաբերական մեծ աճ ստեղծեց բոլոր ազգային ռեսպուբլիկաներում և ավտոնոմ մարզերում, ինդուստրիալ նոր օջախներ ստեղծվեցին արևելյան շրջաններում։ Հնգամյա պլաններ կազմելիս պարտիան և կառավարությունը առանձին ուշադրություն էին դրսևորում տնտեսապես և կուլտուրապես հետամնաց ժողովուրդներին, որոնք կարճ ժամանակվա ընթացքում մեծ հաջողությունների հասան։ Դա արագ էր կատարվում այն նպատակով, որպեսզի վերացվեր այդ ժողովուրդների փաստական անհավասարությունը ՍՍՌՄ ավելի առաջավոր ազգերի համեմատությամբ։

Կապիտալիստական կարգերի լիկվիդացման և սոցիալիստական կարգի ստեղծման պրոցեսում վերացան հին, բուրժուական ազգերը, իսկ նրանց փոխարեն ստեղծվեցին ու զարգացան նոր, սոցիալիստական ազգեր։ Սոցիալիզմի հաղթանակը հասցրեց այն բանին, որ արմատապես փոխվեցին սովետական ժողովրդի տնտեսական կյանքի հիմքերը և դասակարգային կառուցվածքը, նրանց հոգեբանությունը, ամբողջապես անհայտացավ անվստահության զգացմունքը։ Միութենական միասնական պետության սիստեմում զարգացավ այդ ժողովուրդների փոխադարձ անխախտ բարեկամության և եղբայրական համագործակցության զգացմունքը։ Սովետական Միությունը դարձավ հզոր, սո-



ցիալիստական բազմազգ պետություն, որտեղ կամավորության և բարեկամական համագործակցության սկզբունքների հիման վրա ապրում և կոմունիզմ են կառուցում ավելի քան 60 իրավահավասար ազգություններ և ժողովուրդներ։ Սովետական Միությունը միավորում է 15 սովետական սոցիալիստական ռեսպուբլիկա, 17 ավտոնոմ սովետական ռեսպուբլիկա, 9 ավտոնոմ մարզ և 10 ազգային օկրուգ։

ՍՄԿՊ-ն և Սովետական կառավարությունը, հետևողականորեն կենսագործելով լենինյան ազգային քաղաքականությունը, մշտական հոգատարություն են ցուցաբերում մեր բազմազգ սոցիալիստական պետության բոլոր ազգերի ու ժողովուրդների էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման նկատմամբ։ Սովետական լայնարձակ երկրի սոցիալիստական վերափոխումն անխզելիորեն կապված է եղել արտադրողական ուժերի նոր տեղաբաշխման հետ, որը նպաստել է ազգային շրջանների բնական հարստությունների համակողմանի շահագործմանը, նրանց տնտեսության ու կուլտուրայի ներդաշնակ զարգացմանը։

Երկրի ինդուստրացման և գյուղատնտեսության կոլեկտիվացման պլանների կենսագործումը, կուլտուրական ռևոլյուցիայի իրականացումն արմատապես փոխել են սովետական ռեսպուբլիկաների դեմքը։ Այդ ռեսպուբլիկաներում ստեղծվել են հզոր արդյունաբերություն և բարձր մեքենայացված սոցիալիստական գյուղատնտեսության արտադրություն, կոփվել են տեղական բնակչության ծոցից ելած ժողովրդական ինտելիգենցիայի կադրեր, զարգացել է ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան։

Վիթխարի քայլերով է առաջ ընթացել միութենական եղբայրական բոլոր ռեսպուբլիկաների ինդուստրիայի զարգացումը։ 1913 թվականի համեմատությամբ Ղազախական ՍՍՌ-ի տերիտորիայում գտնվող ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը 1956 թվականին արդեն ավելացել էր 36 անգամ, Վրացական ՍՍՌ-ում՝ 30 անգամ, Կիրգիզական ՍՍՌ-ում՝ 42 անգամ, Հայկական ՍՍՌ-ում՝ 45 անգամ, Տաջիկական ՍՍՌ-ում՝ 27 անգամ։

Անսահմանորեն բարձրացել է մեր երկրի ժողովուրդների կուլտուրան։ Մինչև ռևոլյուցիան Տաջիկստանում 200 մարդուն ընկնում էր մեկ գրագետ, իսկ դպրոցների թիվն ընդամենը 10-ի էր հասնում։ Այժմ Տաջիկական ՍՍՌ-ում կա մոտ 2600 դպրոց, որտեղ սովորում է ավելի քան 300 հազար երեխա։ 1914 թվականի համեմատությամբ սովորողների թիվն ավելացել է Կիրգիզական ՍՍՌ-ի դպրոցներում 46 անգամ, Թուրքմենական ՍՍՌ-ի դպրոցներում՝ 34 անգամ։

Այնտեղ, ուր մինչև ռևոլյուցիան բարձրագույն կրթություն ունեցող մարդկանց թիվը միավորներով էին հաշվում, այժմ աճել են բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթությամբ որակյալ հազարավոր մասնագետներ։ Միայն նախապատերազմյան ժամանակի համեմատությամբ բարձրագույն կրթությամբ մասնագետների թիվն ավելացել է՝ Ղազախստանում՝ 3,8 անգամ, Կիրգիզիայում՝ 4,8 անգամ, Տաջիկստանում ու Մոլդավիայում՝ 3,4 անգամ, Թուրքմենիայում՝ 3,3 անգամ, Էստոնիայում՝ գրեթե երեք անգամ և այլն։

Գիտական աշխատողների կադրերի աճման շնորհիվ միութենական գրեթե բոլոր ռեսպուբլիկաներում ստեղծվել են գիտությունների ակադեմիաներ, որոնք տարեց-տարի աճում և ամրապնդվում են, ուժեղացնելով իրենց դերը սովետական գիտության զարգացման գործում։

Ստեղծարար նոր հոյակապ պլանների իրականացումն է՛լ ավելի է ամրապնդում բանվոր դասակարգի ու կոլտնտեսային գյուղացիության դաշինքը, ՍՍՌՄ բոլոր ժողովուրդների բարեկամությունը և եղբայրական համագործակցությունը։ Եվ որքան լայն է ՍՍՌՄ ժողովուրդների ստեղծարար գործունեության թափը, որքան վիթխարի են սոցիալիստական էկոնոմիկայի ու կուլտուրայի հետագա զարգացման պլանները, կյանքն այնքան հրամայաբար պահանջում է ՍՍՌՄ ժողովուրդների է՛լ ավելի սերտ համագործակցություն ու փոխօգնություն։

Հետպատերազմյան ժամանակաշրջանում միութենական ռեսպուբլիկաների էկոնոմիկայի ու կուլտուրայի հետագա վերելքը, նրանց կադրերի աճը հնարավոր և անհրաժեշտ դարձրին համապետական խնդիրների լուծման գործում միութենական ռեսպուբլիկաների դերի էլ ավելի ուժեղացումը։

ՍՄԿՊ XX համագումարը հույժ կարևոր և հրատապ խնդիր համարեց ընդլայնել միութենական ռեսպուբլիկաների իրավունքները, բարձրացնել նրանց դերը ժողովրդական տնտեսության կառավարման գործում։ Համագումարի ցուցումները հաջողությամբ կենսագործվում են։ Նախկինում ընդհանուր միութենական օրգանների տնօրինության ներքո գտնված մեծ թվով ձեռնարկություններ (մոտ 15 հազար) և արդյունաբերության ամբողջ ճյուղեր ներկայումս հանձնված են միութենական ռեսպուբլիկաների անմիջական տնօրինությանը. ընդլայնված են միութենական ռեսպուբլիկաների իրավունքները տնտեսության պետական պլանավորման ու ֆինանսավորման հարցում, դատական և վարչական գործունեության ասպարեզում, կուլտուրական շինարարության գործում։

Դեմոկրատական ցենտրալիզմի լենինյան սկզբունքների հիման վրա մեր պետական ապարատի անշեղ մոտեցումը մասսաներին է՛լ ավելի կբարձրացնի աշխատավորների ստեղծագործական ակտիվությունը։ Համապետական շահերի համար, մեր երկրի ժողովրդական տնտեսության հետագա զարգացման, նրա հզորության ամրապնդման և ժողովրդի բարեկեցության անշեղ աճի համար մղվող պայքարում յուրաքանչյուր ռեսպուբլիկայի աշխատավորներն այնքան ավելի մեծ ավանդ կներդնեն համաժողովրդական գործում, որքան նրանք ավելի լրիվ օգտագործեն իրենց ռեսպուբլիկայի հնարավորությունները։

Տնտեսական վիթխարի նշանակության հետ միասին դա կունենա նաև առաջնակարգ քաղաքական նշանակություն, կնպաստի ՍՍՌՄ հզորության ու ժողովուրդների բարեկամության է՛լ ավելի ամրապնդմանը և կոմունիստական շինարարության անշեղ աճին։

---

# ՍՈՎԵՏՆԵՐԸ ՈՐՊԵՍ ՊՐՈԼԵՏԱՐԻԱՏԻ ԴԻԿՏԱՏՈՒՐԱՅԻ ՊԵՏԱԿԱՆ ՁԵՎ

Խ. ԵՐԻՑՅԱՆ

Մարքսիզմ-լենինիզմի հիմնական հարցը պրոլետարիատի դիկտատուրայի հարցն է։ Մարքսը և Էնգելսը սովորեցնում էին, որ պրոլետարիատը կապիտալիզմի գերեզմանափորի և նոր հասարակարգ ստեղծողի իր համաշխարհային պատմական դերը կկատարի միայն այն դեպքում, երբ նա կտապալի բուրժուազիային և կհաստատի իր քաղաքական իշխանությունը՝ պրոլետարիատի դիկտատուրան։

Այս հետևությանը Մարքսը և Էնգելսը հանգել էին դեռ անցյալ դարի 40-ական թվականներին՝ «Կոմունիստական պարտիայի մանիֆեստ»-ում։ «Պրոլետարիատն իր քաղաքական տիրապետությունը կօգտագործի նրա համար, որպեսզի բուրժուազիայից քայլ առ քայլ խլի ամբողջ կապիտալը, արտադրության բոլոր գործիքները կենտրոնացնի պետության, այսինքն՝ որպես տիրող դասակարգ կազմակերպված պրոլետարիատի ձեռքում» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, «Կոմունիստական պարտիայի մանիֆեստը», Երևան, 1952 թ., էջ 61)։

Այս խոսքերի մեջ արտահայտված է մարքսիզմի հիմնական գաղափարը՝ պրոլետարիատի դիկտատուրայի գաղափարը։

«Կոմունիստական պարտիայի մանիֆեստ»-ում Մարքսը և Էնգելսը պրոլետարիատի դիկտատուրայի հարցը դնում էին ընդհանուր հասկացողությունների ձևով։ Միայն 1848—1851 թվականների ռևոլյուցիաների, ապա և Փարիզյան Կոմունայի փորձից հետո նրանք կոնկրետացրին պրոլետարիատի դիկտատուրայի հարցը, եկան այն հետևության, որ պրոլետարիատը քաղաքական իշխանություն նվաճելուց հետո չի կարող սոսկ տիրանալ պատրաստի բուրժուական պետական մեքենային և գործի դնել այն իր սեփական նպատակների համար. նա պետք է փշրի այդ մեքենան։ Փարիզյան Կոմունան այդպիսի մեքենայի ստեղծման առաջին փորձն էր։ Այն ոչ թե պառլամենտ էր, այլ օրենսդրական և գործադիր ֆունկցիաներ կատարող մի հաստատություն։

Պրոլետարիատի քաղաքական իշխանության ստեղծման այդ առաջին փորձը Մարքսին հնարավորություն տվեց եզրակացնելու, որ պրոլետարիատի դիկտատուրայի ամենանպատակահարմար ձևը Փարիզյան Կոմունայի տիպի քաղաքական կազմակերպությունն է։

Մարքսիզմի հանճարեղ թեորետիկ և պրակտիկ Վ. Ի. Լենինը, հենվելով միջազգային բանվորական շարժման հետագա զարգացման, մասնավորապես 1905 և 1917 թ.թ. ռուսական երկու ռևոլյուցիաների փորձի վրա, զարգացրեց սոցիալիստական ռևոլյուցիայի և պրոլետարիատի դիկտատուրայի վերաբերյալ մարքսիստական թեորիան, հայտնագործեց Սովետները որպես պրոլետա-

րիատի դիկտատուրայի քաղաքական ձև, որը վճռական նշանակություն ունեցավ Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիայի, մեր երկրում սոցիալիզմի հաղթանակի համար։

Սովետներն առաջին անգամ ստեղծվեցին Ռուսաստանում 1905 թվականի ռևոլյուցիայի տարիներին։ Ցարական ինքնակալության դեմ մղվող պայքարի ընթացքում ռուսական բանվոր դասակարգը ստեղծեց մասսայական, պատմության մեջ չտեսնված կազմակերպության ձև՝ բանվորական դեպուտատների Սովետներ։

Ռուսական առաջին ռևոլյուցիան խորապես տարբերվում էր մինչև այդ Արևմուտքում եղած բոլոր ռևոլյուցիաներից։ Նա ծագեց այն ժամանակ, երբ կապիտալիզմը թևակոխել էր իր զարգացման վերջին փուլը՝ իմպերիալիզմը։ Եթե Արևմուտքում տեղի ունեցած ռևոլյուցիաների ղեկավար ուժը հանդիսանում էր բուրժուազիան, իսկ նրա ռեզերվը գյուղացիությունն էր, ապա 1905—1907 թվականների ռուսական ռևոլյուցիայի ժամանակ դրությունը հիմնովին փոխվեց. այժմ արդեն պրոլետարիատն էր, որ ոչ միայն գտնվում էր ցարական ինքնակալության դեմ մղվող պայքարի առաջավոր դիրքերում, այլև հանդիսանում էր ժողովրդական մասսաների ղեկավարը։ Գյուղացիական մասսաները դադարեցին լինել բուրժուազիայի ռեզերվ և դարձան պրոլետարիատի ռեզերվ, իսկ բուրժուազիան այլևս չէր հանդիսանում ռևոլյուցիայի ղեկավար ուժ, ինչպես նախկինում։ Ռուսական բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի այդ առանձնահատկությունները չէին կարող չծնել մի շարք նոր երևույթներ, որոնք բոլորովին հատուկ չէին Եվրոպայում տեղի ունեցած բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիաներին։

Այն հանգամանքը, որ բանվոր դասակարգը հանդիսանում էր 1905 թվականի ռևոլյուցիայի ղեկավար ուժը, վիթխարի նշանակություն ունեցավ նրա ռևոլյուցիոն ստեղծագործության և նախաձեռնության համար։ Հենց բանվորական դեպուտատների Սովետների ստեղծումը ռևոլյուցիոն պայքարի ընթացքում հանդիսանում էր բանվոր դասակարգի ղեկավար դերի և նախաձեռնության վառ արտահայտություններից մեկը։ Բանվորները ձգտում էին միավորվել և ստեղծել այնպիսի հզոր ռևոլյուցիոն կազմակերպություն, որը նրանց հնարավորություն տար մասնակցելու ընդհանուր ռևոլյուցիոն պայքարին՝ ցարական ինքնակալությունը տապալելու համար։ Այդպիսի կազմակերպություններ հանդիսացան բանվորական դեպուտատների Սովետները, որոնք առաջին անգամ ստեղծվեցին Ռուսաստանում, 1905 թվականի գարնանը։

Վ. Ի. Լենինը խորապես ուսումնասիրեց 1905 թվականի ռևոլյուցիայի ընթացքում ստեղծված բանվորական դեպուտատների Սովետների պատմական փորձը, որը նրան հնարավորություն տվեց բացահայտելու Սովետների դասակարգային էությունը, նրանց դերը բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի ժամանակաշրջանում։ Վ. Ի. Լենինը ցույց տվեց, որ բանվորական Սովետների միակ ճիշտ ուղին զինված ապստամբությունն է և ռևոլյուցիոն իշխանության օրգաններ դառնալը։

Առաջին ռուսական ռևոլյուցիայի հիմնական խնդիրն էր՝ տապալել ցարական ինքնակալությունը և հաստատել պրոլետարիատի և գյուղացիության ռևոլյուցիոն դիկտատուրա, որը պետք է ծառայեր սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակին և պրոլետարական դիկտատուրայի ստեղծմանը։ Ռևոլյուցիան չլուծեց այդ խնդիրը, որովհետև պարտվեց։ Սակայն ռևոլյուցիան



սկիզբ դրեց պրոլետարիատի և գյուղացիության ռևոլյուցիոն դիկտատուրայի ստեղծմանը։ Սովետները, որոնք ցարիզմի դեմ մղվող պայքարում հանդիսանում էին ամենահզոր մասսայական ռևոլյուցիոն կազմակերպությունները, այդ դիկտատուրայի գործող օրգաններն էին։

Վ. Ի. Լենինը խորապես տեսնում էր Սովետների այդ կարևորագույն կողմը, որը բնորոշում էր նրանց, որպես բանվոր դասակարգի բոլորովին նոր կազմակերպությունների։ Դրա համար բոլշևիկների պարտիան ձեռնարկում էր բոլոր միջոցները, որպեսզի Սովետները դառնային բանվորների և գյուղացիների ապագա ռևոլյուցիոն իշխանության կորիզ։ Լենինը պայքարում էր նրանց դեմ, ովքեր ճիշտ չէին հասկանում Սովետների էությունը, և դեռևս այն ժամանակ նա հիմնավորեց Սովետների ձևով ժամանակավոր ռևոլյուցիոն կառավարության հաստատման անհրաժեշտությունը։ Լենինը 1905 թվականի նոյեմբերին գրած «Մեր խնդիրները և բանվորների դեպուտատների Սովետը» հոդվածում, առաջին անգամ գնահատեց Սովետներն իբրև ապստամբության օրգաններ և նոր, ռևոլյուցիոն իշխանության սաղմ։

Այս հարցի առթիվ Լենինը գրում էր. «...քաղաքական տեսակետից բանվորների դեպուտատների Սովետը պետք է դիտել իբրև ռևոլյուցիոն ժամանակավոր կառավարության սաղմ... Սովետը կարելույն չափ ավելի շուտ պետք է իրեն հռչակի ամբողջ Ռուսաստանի ռևոլյուցիոն ժամանակավոր կառավարություն...» (Երկեր, հ. 10, էջ 8).

Հետագայում Վ. Ի. Լենինը զարգացրեց իր հետևությունը Սովետների մասին, համարելով նրանց ոչ միայն ռևոլյուցիոն կառավարության օրգաններ, այլև ռևոլյուցիոն մանր-բուրժուազիայի հետ սոցիալիստական պրոլետարիատի դաշինքը կենսագործող օրգաններ։ Այդ դաշինքն ամրապնդելու և ընդարձակելու, ցարիզմը տապալելու և դեմոկրատական շարժումն ավելի շուտ, ավելի լրիվ և ավելի վճռական իրագործելու համար, Վ. Ի. Լենինը սոցիալ-դեմոկրատական պարտիայից պահանջում էր ոչ թե կտրվել Սովետներից, այլ մտնել նրանց կազմի մեջ և ղեկավարել դրանց, խիստ պահպանելով պարտիական առանձնությունն ու ինքնուրույնությունը։

1906 թվականի մարտին, «Կադետների հաղթանակը և բանվորական պարտիայի խնդիրները» նշանավոր աշխատության մեջ, Վ. Ի. Լենինն ավելի մանրամասնորեն վերլուծեց Սովետների էությունը, նրանց պրոլետարիատի և գյուղացիության ռևոլյուցիոն դեմոկրատական դիկտատուրայի քաղաքական ձևի վերածելու հնարավորությունը։ Այդ աշխատությունում Լենինը մերկացրեց կադետներին, բացահայտեց մենշևիկների դավաճանական վերաբերմունքը ռևոլյուցիայի նկատմամբ։ Դեռևս այն ժամանակ մենշևիկները ռևոլյուցիայի հիմնական հարցի՝ իշխանության հարցի մասին ունեցած իրենց հայացքներով փաստորեն ոչնչով չէին տարբերվում կադետներից. նրանք Սովետները համարում էին ոչ թե զինված ապստամբության և ռևոլյուցիոն իշխանության օրգաններ, այլ տեղական ինքնավարության օրգաններ։

Ինքնըստինքյան հասկանալի է, որ մենշևիկներից ուրիշ գնահատական Սովետների մասին չէր էլ կարելի սպասել, քանի որ նրանք դեմ էին բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի մեջ պրոլետարիատի հեգեմոն դերին, զինված ապստամբությանը, պրոլետարիատի ու գյուղացիության ռևոլյուցիոն դիկտատուրային։

Վ. Ի. Լենինը նշում էր, որ Սովետները, չնայած իրենց տարբերայնությա-

նը, անձնությանը, իշխանության օրգաններ էին։ Այդ օրգաններն ստեղծում էին բացառապես բնակչության ռևոլյուցիոն խավերը և գործում էին իբրև իշխանություն։

Այս հարցին Լենինը անդրադարձավ 1906 թվականին «Դումայի արձակումը և պրոլետարիատի խնդիրները» հոդվածում։ Քննադատելով մենշևիկների օպորտունիստական տակտիկան՝ Լենինը գտավ, որ Սովետները հանդիսանում են ժամանակավոր ռևոլյուցիոն կառավարության սաղմերը և ապստամբության հաղթանակի դեպքում իշխանությունն անխուսափելիորեն նրանց ձեռքն էր անցնելու։



Չնայած առաջին ռուսական ռևոլյուցիայի պարտությունից հետո Սովետները դադարեցին գոյություն ունենալուց, նրանց ստեղծման պատմական փորձը իզուր չանցավ։ Սովետների գաղափարը խորապես թափանցեց բանվորների գիտակցության մեջ, և նրանք իրականացրին այդ գաղափարը 1917 թվականի փետրվարյան բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի օրերին։ Եթե 1905 թվականին ստեղծվել էին միայն բանվորների դեպուտատների Սովետներ, ապա 1917 թվականի փետրվարին առաջ եկան բանվորների և զինվորների, հետո նաև գյուղացիների դեպուտատների Սովետներ։

Ցարիզմի տապալումից հետո ստեղծվեց բուրժուական ժամանակավոր կառավարություն։ Նրա կողքին հանդես եկավ մի այլ իշխանություն՝ բանվորների և զինվորների դեպուտատների Սովետը։ Այսպիսով ստացվեց երկիշխանություն։

Չնայած բանվորները և գյուղացիները լիովին հնարավորություն ունեին իրենց ձեռքը վերցնելու իշխանությունը, կամովին հանձնեցին այն բուրժուազիային։ Լենինն այդ բացատրում էր նրանով, որ արթնացած և քաղաքական պայքարում ներգրավված միլիոնավոր մարդիկ, միլիոնավոր մանր բուրժուական տարրեր, դեռևս անփորձ էին քաղաքականության մեջ։ Մանր-բուրժուական տարրերի հենց այդ ալիքն էր, որ ծնեց անգիտակից-դյուրահավատ վերաբերմունք դեպի կապիտալիստները և ջրի երես հանեց մենշևիկների ու էսեռների մանր-բուրժուական պարտիաները։ Բանվորները և գյուղացիները Սովետներ ընտրելով ակնկալում էին, որ նրանք կբավարարեն խաղաղության, հողի և 8-ժամյա բանվորական օրվա իրենց պահանջները։ Բուրժուազիայի էսեռա-մենշևիկյան լակեյները հավատացնում էին, որ ժամանակավոր կառավարությունը պաշտպանում է ժողովրդի շահերը։ Մասսաները հավատացին էսեռների և մենշևիկների այդ խոստումներին, որը ժամանակավոր կառավարությանը հնարավորություն տվեց շարունակելու իմպերիալիստական պատերազմը, սովի և աղքատության մատնելով ժողովրդին։

Էսեռները և մենշևիկներն օգտվելով նրանից, որ բոլշևիկները գտնվում էին ռևոլյուցիոն պայքարի առաջավոր դիրքերում և անմիջականորեն ղեկավարում մասսաների պայքարը փողոցներում, իրենք զավթում էին դեպուտատական տեղերը Սովետներում, նրանց մեջ կազմելով իրենց մեծամասնությունը։ Պետրոգրադում, Մոսկվայում և մի շարք այլ քաղաքներում նրանք իրենց ձեռքը վերցրին Սովետների ղեկավարությունը։ Միայն Իվանովո-Վոզնեսենսկում, Կրասնոյարսկում և մի քանի այլ քաղաքներում Սովետներում մեծամասնությունը հենց սկզբից բոլշևիկներն էին կազմում։



Սակայն Սովետների էսեռա-մենշևիկյան ղեկավարները չէին կարող կասեցնել բանվորական և զինվորական մասսաների ռևոլյուցիոն ստեղծագործությունը, որոնք ստիպում էին Սովետներին իրենց վրա վերցնել պետական օրգանների ֆունկցիաները տեղերում և գործել իբրև նոր ռևոլյուցիոն իշխանություն։ Ապստամբած բանվորների և զինվորների ճնշման ներքո Սովետները ձերբակալում էին ժողովրդին ատելի նահանգապետներին, ժանդարմներին, ոստիկաններին և նախկին ցարական կառավարության այլ աստիճանավորներին, ստեղծում էին ժողովրդական միլիցիա։

Սովետների ստեղծման պատմական նոր փորձը լրացուցիչ նյութ տվեց Վ. Ի. Լենինին ավելի խոր թեորիական ընդհանրացումներ անելու, որոնք նրան հանգեցրին այն եզրակացության, որ ոչ թե պառլամենտական, այլ Սովետների ռեսպուբլիկան է հանդիսանում պրոլետարական դիկտատուրայի ամենանպատակահարմար քաղաքական ձևը։

Պետության վերաբերյալ մարքսիստական գիտությունը օպորտունիստական խեղաթյուրումներից պաշտպանելու և այն զարգացնելու նպատակով, Վ. Ի. Լենինը 1917 թվականի առաջին ամիսներին վիթխարի աշխատանք կատարեց պետության մասին նյութեր հավաքելու ուղղությամբ։ Դա Լենինին հնարավորություն տվեց լուծելու Սովետների՝ որպես պրոլետարական դիկտատուրայի քաղաքական ձևի հարցը, մի բան՝ որը դրսևորվեց նրա նշանավոր Ապրիլյան թեզիսներում, որտեղ նա գրում է. «...Բանվորների դեպուտատների Սովետները ռևոլյուցիոն կառավարության միակ հնարավոր ձևն են... Ոչ թե պառլամենտական ռեսպուբլիկա,— Բ. Դ. Սովետներից դրան վերադառնալը կլիներ մի քայլ դեպի ետ,— այլ բանվորների, բատրակների և գյուղացիների դեպուտատների Սովետների ռեսպուբլիկա ամբողջ երկրում, վարից մինչև վեր» (Երկեր, հ. 24, էջ 5—6)։

Ի դեմս Սովետների Վ. Ի. Լենինը տեսավ պրոլետարիատի դիկտատուրայի պետական իշխանության պատրաստի ձևը։ Միայն այդպիսի կազմակերպությունները, ինչպիսիք Սովետներն էին, որոնք ստեղծվել էին մասսաների կողմից և հենվում էին զինված ժողովրդի վրա, կարող էին ամրապնդել բանվոր դասակարգի հաղթանակը ռևոլյուցիայի առաջին էտապում և նախապատրաստել մասսաներին նրա երկրորդ էտապին՝ սոցիալիստական ռևոլյուցիային անցնելու համար։

Վ. Ի. Լենինը ոչ միայն վերականգնեց Մարքսի Փարիզյան Կոմունայի տիպի քաղաքական կազմակերպության մասին մոռացության տրված ցուցումը, այլև զարգացրեց այն և, ելնելով ռուսական ռևոլյուցիայի պայմաններից, սահմանեց, որ Սովետների ռեսպուբլիկան հանդիսանում է նոր, սոցիալիստական պետության քաղաքական ձև։

Պատմական նոր պայմանները Ռուսաստանում ծնեցին Սովետները, որոնք հետագայում դարձան իսկապես պրոլետարական դիկտատուրայի քաղաքական ձևը։ Սակայն դրանից ամենևին չի հետևում, թե սովետական ձևն ընդհանրապես կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու միակ հնարավոր ձևն է, թե չկան և չեն կարող լինել ուրիշ ուղիներ։

Լենինիզմը սովորեցնում է, որ յուրաքանչյուր ազգ կապիտալիզմից սոցիալիզմին անցնելիս մտցնում է դեմոկրատիայի այս կամ այն ձևը, ընթանում է իր երկրին առանձնահատուկ պատմական ուղիով։ Սակայն ինչպիսի

ձևեր էլ մշակվեն, միևնույն է, նրանց էությունը մեկն է՝ պրոլետարիատի դիկտատուրա։

Կենտրոնական և Հարավ-արևելյան Եվրոպայի մի շարք երկրներում, ինչպես նաև Չինաստանում, Հյուսիսային Կորեայում, Վիետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայում, սոցիալիզմի կառուցման փորձը հաստատում է լենինյան այդ հանճարեղ դրույթի պատմական ճշմարտությունը։

ՍՄԿՊ XX համագումարը, ելնելով պատմական նոր պայմաններից, նշեց, որ կապիտալիզմի և սոցիալիզմի զարգացման ներկա ժամանակաշրջանում, երբ սոցիալիզմը դարձել է համաշխարհային սիստեմ, երբ նրա դիրքերը օրեցօր ամրապնդվում են, իսկ կապիտալիզմի դիրքերը թուլանում են, առանձին երկրներում հնարավոր է պառլամենտում կայուն մեծամասնություն նվաճելով պրոլետարիատի քաղաքական իշխանություն հաստատել և խաղաղ ճանապարհով կապիտալիզմից սոցիալիզմին անցնել։

Պառլամենտական ուղիով սոցիալիզմին անցնելու հնարավորությունը պայմանավորվում է նախ և առաջ այն բանով, որ սոցիալիզմը դարձել է համաշխարհային սիստեմ, որը վճռական ազդեցություն ունի ամբողջ մարդկության ընթացքի վրա։

Սոցիալիզմին պառլամենտական ուղիով անցնելու մյուս հիմնական նախադրյալներից մեկն էլ այն է, որ մշտապես աճում է բանվոր դասակարգի քաղաքական գիտակցությունը և կազմակերպվածությունը, որն իր ցայտուն արտահայտությունն է գտնում կոմունիստական պարտիաների աճի մեջ։ Այժմ աշխարհում հաշվվում են 76 կոմունիստական պարտիաներ, որոնք իրենց շարքերում ընդգրկում են 33 միլիոն անդամ։ Բանվոր դասակարգը երբեք այդպիսի ավանգարդ չի ունեցել։ Առանց կոմունիստական պարտիաների հնարավոր չէ պառլամենտում կայուն մեծամասնություն նվաճել և այն օգտագործել բանվոր դասակարգին և աշխատավոր գյուղացիությանը կապիտալիզմից ազատագրելու համար։

Պարտիայի XX համագումարը, առաջ քաշելով պառլամենտական ուղին, որպես կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու հնարավոր ուղի, որն անշուշտ կարևոր նշանակություն ունի միջազգային բանվորական և կոմունիստական շարժման արդի խնդիրների լուծման, պրոլետարիատի հաղթանակը մյուս երկրներում ևս ապահովելու գործում, զարգացրեց սոցիալիստական ռևոլյուցիայի և պրոլետարիատի դիկտատուրայի վերաբերյալ մարքսիստական-լենինյան թեորիան։

Այն ժամանակ, երբ ոչ մի երկրում չէր հաղթանակել սոցիալիստական ռևոլյուցիան, Վ. Ի. Լենինը տվյալ ժամանակաշրջանի պատմական կոնկրետ պայմաններում ոչ թե պառլամենտական ռեսպուբլիկան, այլ Սովետների ռեսպուբլիկան էր համարում պրոլետարիատի դիկտատուրայի միակ հնարավոր քաղաքական ձևը Ռուսաստանում։

Ռուսական ռևոլյուցիոն շարժման թափը չէր կարող տեղավորվել պառլամենտարիզմի շրջանակներում, և հենց այդ է պատճառը, որ ամեն մի հզոր ելույթ իմպերիալիզմի դարաշրջանում, ինչպես 1905, այնպես էլ 1917 թվականին, ասպարեզ էր քաշում բանվորների և զինվորների դեպուտատների Սովետները։ «Մեծագույն անհեթեթություն կլիներ կարծել,— գրում է Վ. Ի. Լենինը,— թե մարդկության պատմության մեջ ամենախորունկ ռևոլյուցիան,



աշխարհում առաջին անգամ իշխանության անցումը շահագործողների փոքրամասնության ձեռքից շահագործվողների մեծամասնության ձեռքը՝ կարող է տեղի ունենալ հին բուրժուական, պառլամենտական դեմոկրատիայի հին շրջանակների ներսում, կարող է տեղի ունենալ առանց ամենակտրուկ բեկումների, առանց դեմոկրատիայի նոր ձևեր, նոր հիմնարկներ ստեղծելու, որոնք մարմնավորեին նրա կիրառման նոր պայմանները և այլն» (Երկեր, հ. 28, էջ 604)։

Վ. Ի. Լենինը նշում էր, որ Սովետական ռեսպուբլիկան, ավելի լավ, քան որևէ այլ կարգ, կարող է բավարարել ժողովրդի պահանջները՝ հողի, խաղաղության, արտադրության և ապրանքների բաշխման նկատմամբ հսկողություն սահմանելու հարցերում։

Ահա թե ինչու Վ. Ի. Լենինը համարձակ կերպով այն ժամանակ առաջ քաշեց Սովետների հարցը։ Նա անհաշտ պայքար տարավ միջազգային օպորտունիստների, ռուսական մենշևիկների և նրանց հայացքները պաշտպանող Կամենևի, Զինովևի և ուրիշների դեմ, որոնք կաշվից դուրս էին գալիս ապացուցելու, թե իշխանությունը Սովետներին անցնելու լենինյան պահանջը ռեվոլյուցիան դնում է վտանգի տակ, թե Ռուսաստանը չի հասունացել սոցիալիստական ռևոլյուցիայի համար, թե Ռուսաստանում հնարավոր է միայն բուրժուա-դեմոկրատական ռեսպուբլիկա։

Վ. Ի. Լենինը, բացահայտելով Կամենևի հայացքների մենշևիկյան էությունը, նշում էր. քանի որ իշխանությունը ճորտատիրական-կալվածատիրական դասակարգի ձեռքից անցել է բուրժուազիայի ձեռքը, ապա ուրեմն բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիան Ռուսաստանում ավարտվել է։ Բուրժուական կառավարության կողքին, թեկուզ և թույլ, սաղմնային ձևով, գոյություն ունի Սովետների իշխանություն։

Սակայն որպեսզի Սովետները գործնականում կիրառեին պրոլետարիատի և գյուղացիության ռևոլյուցիոն դիկտատուրան, պետք է պայքարեին սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի համար։ Այս խնդրի կենսագործումը պահանջում էր, որպեսզի բոլշևիկների պարտիան մեծամասնություն նվաճեր Սովետներում և վերցներ նրանց ղեկավարությունն իր ձեռքը։

Այն ժամանակ բանվորների և զինվորների դեպուտատների Սովետները զինված ժողովրդի վրա հենվելով կարող էին խաղաղ ճանապարհով իրենց ձեռքը վերցնել իշխանությունը և դառնալ պետական իշխանության օրգաններ։ Վ. Ի. Լենինը առաջ քաշեց «Ամբողջ իշխանությունը Սովետներին» լոզունգը։ Նա գտնում էր, որ համառ բացատրական աշխատանքով էսեռա-մենշևիկյան հակաժողովրդական քաղաքականությունը մերկացնելով, կարելի է մեծամասնություն նվաճել Սովետներում, և ապա Սովետների միջոցով փոխել կառավարության կազմը և քաղաքականությունը։ Այս ռևոլյուցիայի խաղաղ զարգացման լենինյան դրույթն էր։ Վ. Ի. Լենինը Ապրիլյան թեզիսներում կոչ չէր անում տապալել ժամանակավոր կառավարությունը։ Նա առաջարկում էր մերկացնել նրա քաղաքականությունը, ոչ մի օժանդակություն ցույց չտալ նրան։ Լենինի այդ ստրատեգիական դրույթը հավանություն գտավ բոլշևիկների Պետրոգրադի քաղաքային և համառուսական պարտիական ապրիլյան կոնֆերանսների կողմից։

Բոլշևիկների պարտիան առաջնորդվելով Վ. Ի. Լենինի Ապրիլյան թեզիս-

ներով և իր ապրիլյան կոնֆերանսի որոշումներով՝ «Ամբողջ իշխանությունը Սովետներին» լոզունգի նշանաբանի տակ պայքարում էր բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիան սոցիալիստական ռևոլյուցիայի վերածելու համար։ «Ամբողջ իշխանությունը Սովետներին» լոզունգն անցել է զարգացման երկու շրջան՝ առաջինը մինչև հուլիսյան ցույցը և երկրորդը՝ նրանից հետո։ Առաջին շրջանում իշխանության անցումը Սովետներին անմիջականորեն չէր հանդեցնում սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակին, այլ հեշտացնելու էր այն։ Բոլշևիկների պարտիան ձգտում էր հասնել այն բանին, որպեսզի քայքայվեր մենշևիկների ու էսեռների բլոկը կադետների, այսինքն բուրժուազիայի հետ և իշխանությունը հանձնվեր Սովետներին։ Ռևոլյուցիայի խաղաղ զարգացման լենինյան այս դրույթը տրամաբանորեն կհասցներ այնտեղ, որ մենշևիկների ու էսեռների քաղաքականությունը, որպես իմպերիալիստների շահերի պաշտպանության քաղաքականություն, վաղ թե ուշ կմերկացվեր աշխատավոր մասսաների առջև։ Եվ ընդհակառակը, բոլշևիկների քաղաքականությունը, որպես աշխատավորների շահերի պաշտպանության քաղաքականություն, պետք է էլ ավելի բարձրացներ բոլշևիկյան պարտիայի հեղինակությունը։ Բանվորներն ու գյուղացիները սեփական փորձով ըմբռնելով այդ պարտիաների իսկական էությունը, անկասկած, Սովետներում կընտրեին ավելի շատ բոլշևիկներ, քան թե էսեռներ ու մենշևիկներ և այդ հնարավորություն կտար Սովետների մեջ մտցնելու պրոլետարական բովանդակություն և դարձնելու նրանք պրոլետարական դիկտատուրայի պետական ձև։

Այսպիսով, այդ ժամանակաշրջանում բոլշևիկների պարտիան ելնում էր ռևոլյուցիայի խաղաղ զարգացման և առանց զինված ապստամբության իշխանությունը Սովետներին անցնելու հնարավորությունից։ Սակայն այդ հնարավորությունը իրականություն չդարձավ։ Բանվոր դասակարգի և աշխատավոր գյուղացիության դավաճաններ՝ էսեռներն ու մենշևիկները աստիճանաբար պրոլետարիատի դիրքերը զիջեցին բուրժուազիային։ Ինչպես ապրիլյան ցույցի, այնպես էլ Սովետների 1-ին համագումարի ժամանակ նրանք հանդես եկան որպես իմպերիալիստական բուրժուազիայի շահերի մոլի պաշտպաններ։ Սոցիալիստական ռևոլյուցիան խափանելու և Ռուսաստանը բուրժուական կոնստիտուցիոն զարգացման ուղու վրա փոխադրելու նպատակով, էսեռա-մենշևիկյան սոցիալ-դավաճանները բուրժուազիայից իշխանությունը վերցնելու փոխարեն մտան նրա ժամանակավոր կառավարության մեջ, դրանով իսկ ուժեղացնելով իմպերիալիստական պետական մեքենան։ Նրանց հակառևոլյուցիոն բնույթը ավելի պարզ երևաց բանվորների և զինվորների հուլիսյան ցույցի ժամանակ։ Հուլիսյան ցույցը իշխանությունը Սովետներին հանձնելու, կապիտալիստների և կալվածատերերի հետ նրանց կապը խզելու և խաղաղ ճանապարհով ժողովրդի պահանջները կատարելու վերջին փորձն էր։

Բուրժուական ժամանակավոր կառավարությունը սոցիալիստ մինիստրների մասնակցությամբ գնդակոծեց բանվորների և գյուղացիների խաղաղ ցույցը և բացարձակ հարձակման անցավ ռևոլյուցիայի դեմ, բոլշևիկյան պարտիայի և նրա առաջնորդ Լենինի դեմ։ Հուլիսյան ցույցից հետո Սովետները դարձան բուրժուական ժամանակավոր կառավարության կցորդը։ Այդ նշանակում էր վերջացավ երկիշխանությունը, չքացավ իշխանությունը խաղաղ ճանապարհով Սովետներին անցնելու հնարավորությունը։

Բոլշևիկյան պարտիան որոշեց փոխել իր տակտիկան։ Վ. Ի. Լենինի ցու-



ցումներով պարտիայի VI համագումարը ժամանակավորապես օրակարգից հանեց «Ամբողջ իշխանությունը Սովետներին» լոզունգը, որոշեց նախապատրաստել զինված ապստամբություն՝ ժամանակավոր կառավարությունը տապալելու և Սովետական իշխանություն հաստատելու համար։ Սակայն այդ լոզունգը ժամանակավորապես հանելը չէր նշանակում, թե բոլշևիկների պարտիան ընդհանրապես հրաժարվում է Սովետներից։ Ինչպես հայտնի է, Սովետներում մեծամասնություն նվաճելը բոլշևիկների պարտիայի առաջնակարգ խնդիրն էր հանդիսանում ինչպես ռևոլյուցիայի խաղաղ զարգացման, այնպես էլ նրանից հետո։ Խաղաղ, թե բռնի ճանապարհով պրոլետարիատի քաղաքական իշխանություն հաստատելու հիմնական պայմանը, դա Սովետներում մեծամասնություն նվաճելն էր, որը օրակարգից երբեք չհանվեց։ Չնայած Սովետները հուլիսյան օրերից հետո դարձան ժամանակավոր կառավարության կցորդը, բոլշևիկների պարտիան չդադարեց Սովետներում մեծամասնություն նվաճելու համար աշխատանք տանելուց։ Վ. Ի. Լենինը կանխատեսում էր, որ ռևոլյուցիայի նոր վերելքի ժամանակ Սովետները դարձյալ պետք է կատարեն իրենց ռևոլյուցիոն դերը և դառնան պրոլետարական դիկտատուրայի պետական ձևը։

Եվ իրոք, Վ. Ի. Լենինի կանխատեսումը արդարացավ։ Բանվորների, զինվորների և գյուղացիների ռևոլյուցիոն նոր ալիքը կոռնիլովյան հակառևոլյուցիոն դավադրության ժամանակ աշխուժացրեց Սովետները։ Սովետները ցուցաբերեցին ռևոլյուցիոն հզորություն և նախաձեռնություն, փակեցին կոռնիլովյան զորքերի ճանապարհը և ջախջախեցին նրանց ուժերը։ Կոռնիլովյան հակառևոլյուցիոն ելույթը ջախջախելուց հետո ռևոլյուցիայի սկզբնական շրջանում բոլշևիկների կողմից հրապարակված կոչը՝ «Ամբողջ իշխանությունը Սովետներին՝ կենտրոնում և տեղերում», նորից դարձավ ամբողջ ռևոլյուցիոն երկրի կոչը։ Սկսվեց Սովետների բոլշևիկացման ժամանակաշրջանը։ Կոմունիստական պարտիան իշխանությունը վերցնելու համար սկսեց զինված ապստամբության նախապատրաստական աշխատանք տանել դարձյալ «Ամբողջ իշխանությունը Սովետներին» լոզունգի ներքո։ Այդ նշանաբանով բոլշևիկների պարտիան պայքար էր մղում Սովետները մասսաների ռևոլյուցիոն մոբիլիզացիայի օրգաններից ապստամբության, իշխանության օրգանների վերածելու, աշխատավորների միլիոնավոր մասսաներին բուրժուազիայից, հաշտվողական էսեռա-մենշևիկյան պարտիաներից կտրելու և սոցիալիստական ռևոլյուցիա նախապատրաստելու համար։ Սովետները պետական իշխանության օրգաններ դարձնելու քաղաքականությունը հանդիսացավ պրոլետարական ռևոլյուցիայի հաղթանակի կարևորագույն պայմանը։

Սովետները նվաճելու համար մենշևիկների և էսեռների դեմ մղվող լարված պայքարում բոլշևիկները փայլուն հաղթանակ տարան։ Հոկտեմբերյան ռևոլյուցիայի նախօրյակին բոլշևիկները նվաճել էին Սովետների մեծ մասը։ ՀԿԳԿ-ի «Известия» թերթը սեպտեմբերի 1-ից մինչև հոկտեմբերի 25-ը հրապարակեց Սովետների 135 բանաձևեր, որոնցից 115-ը պահանջում էին՝ տապալել բուրժուական ժամանակավոր կառավարությունը, հրավիրել Սովետների համառուսական II համագումարը և իշխանությունը հանձնել Սովետներին։ II համագումարի 673 պատգամավորներից 506-ը պահանջում էին իշխանությունը հանձնել Սովետներին։

Այսպիսով, բանվորական և զինվորական Սովետների մեծամասնությունը,

*որոնք արտահայտում էին աշխատավորական մասսաների շահերը, դեռևս մինչև Հոկտեմբերյան զինված ապստամբության հաղթանակը պահանջում էին իշխանությունը հանձնել Սովետներին, իսկ այն Սովետները, որոնք նվաճել էին բոլշևիկները, ստացան նոր բովանդակություն, որի հետևանքով նրանք դարձան պրոլետարական դիկտատուրայի ապարատ։ Այս իրողությունը վճռական նշանակություն ունեցավ սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի համար։ Վ. Ի. Լենինը մատնանշում էր, որ եթե ժողովրդական ստեղծագործությունը Սովետներ չստեղծեր, ապա ոչ մի դեպքում 1917 թվականի հոկտեմբերին իշխանությունը չէր անցնի պրոլետարիատի ձեռքը։ Պրոլետարիատը հին ապարատով չէր կարող պահել իշխանությունն իր ձեռքում, իսկ նոր ապարատ ստեղծելն անմիջապես հնարավոր չէր։ «Քաղաքական իշխանություն ստեղծելու խնդիրը,— գրում էր Վ. Ի. Լենինը,—վերին աստիճանի հեշտ էր, քանի որ մասսաները մեզ տվին այդ իշխանության կմախքը, հիմքը։ Սովետների ռեսպուբլիկան միանգամից ծնվեց» (Երկեր, հ. 27, էջ 91)։*

*Հոկտեմբերյան զինված ապստամբության հաղթանակից անմիջապես հետո Սովետների համառուսական II համագումարը Պետրոգրադում ընդունեց Վ. Ի. Լենինի գրած և պարտիայի ԿԿ-ի կողմից հավանություն գտած դիմումը՝ բանվորներին, զինվորներին և գյուղացիներին, որտեղ ասված էր. «Հենվելով բանվորների, զինվորների և գյուղացիների հսկայական մեծամասնության կամքի վրա, հենվելով Պետրոգրադում բանվորների և կայազորի կատարած հաղթական ապստամբության վրա, համագումարն իր ձեռքն է առնում իշխանությունը» (Երկեր, հ. 26, էջ 293)։ Ոչ միայն կենտրոնում, այլ տեղերում համագումարի որոշման համաձայն իշխանությունն անցնում էր բանվորների, զինվորների և գյուղացիների դեպուտատների Սովետներին, որոնք և պետք է ապահովեին ռևոլյուցիոն կարգը։*

*Ինչպես կենտրոնում, այնպես էլ տեղերում իշխանությունը Սովետներին անցնելու մասին համագումարի ընդունած դիմումը նշանակում էր Սովետների միավորումը պրոլետարիատի պետական ընդհանուր կազմակերպության մեջ, նշանակում էր Սովետների ռեսպուբլիկայի ստեղծում։ Այսպիսով, Սովետների II համագումարը օրենսդրական կարգով ձևակերպեց Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիայի խոշորագույն պատմական նվաճումը՝ իշխանության անցումը Սովետներին, պրոլետարական դիկտատուրայի հաստատումը, սոցիալիզմի քաղաքական հաղթանակը կապիտալիզմի նկատմամբ։*

*Հաղթանակելով կենտրոնում՝ Սովետական իշխանությունը 2—3 ամսվա ընթացքում հաղթական երթով անցավ ամբողջ երկրով։ Հին, բուրժուական պետական ապարատի փլատակների վրա ստեղծվեց և ամրապնդվեց նոր, սոցիալիստական պետական ապարատը։ Իշխանության հին, աշխատավորների ճնշման ու հարստահարման օրգանների փոխարեն բանվոր դասակարգը գյուղի չքավորության հետ դաշն կնքած՝ Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ ստեղծեց նոր, աշխատավոր ժողովրդի շահերը պաշտպանող պետական օրգաններ։*

*Քաղաքային դումաների, նահանգային, գավառային և վոլոստային զեմստվոների փոխարեն ստեղծվեցին բանվորների, զինվորների և գյուղացիների դեպուտատների միավորված նահանգային, գավառային և վոլոստային Սովետներ, որոնք տնօրինում էին քաղաքական և տնտեսական կյանքը տեղերում։ Հին բանակի, ժանդարմական-ոստիկանական, դատական և չինովնիկական ապարատի փոխարեն, ստեղծվեց Կարմիր Բանակ, բանվորա-գյուղացիական միլիցիա, սովետական հետախուզություն (ՎՉԿ), ժողովրդական դատարան, ժողտնտխորհի օրգաններ։ Այս բոլոր օրգանները կոչված էին տապալված, բայց դեռ մինչև վերջ չջախջախված շահագործող դասակարգերից պաշտպանելու Հոկտեմբերյան ռևոլյուցիայի նվաճումները, քայլ առ քայլ շահագործողներից խլելու և պրոլետարական պետության ձեռքում կենտրոնացնելու արտադրական բոլոր միջոցները՝ կապիտալիզմի նկատմամբ սոցիալիզմի հաղթանակը տնտեսական բնագավառում ևս ապահովելու, սոցիալիստական հասարակարգի տնտեսական բազիսը ստեղծելու նպատակով։*



*Նոր, սովետական պետական ապարատի ստեղծումն ընթացավ կատաղի դասակարգային պայքարի պայմաններում։ Բուրժուազիան «Ամբողջ իշխանությունը Սովետներին» լոզունգին հակադրեց «Ամբողջ իշխանությունը Սահմանադիր ժողովին» լոզունգը։ Նա Սովետական իշխանության դեմ պայքարելիս, հենվելով մենշևիկների և էսեռների վրա՝ փորձեց հին իշխանության օրգանները պահպանել՝ Ռուսաստանը բուրժուական պառլամենտական ուղիով զարգացնելու նպատակով։ Ջախջախվեցին բուրժուազիայի այդ բոլոր փորձերը, որոնք պաշտպանում էին էսեռները և մենշևիկները։*

*Սովետների III համառուսական համագումարը հավանություն տվեց Ժողովրդական կոմիսարների Սովետի դեկրետին՝ հակառևոլյուցիոն Սահմանադիր ժողովը ցրելու մասին։ Նա ընդունեց «Աշխատավոր և շահագործվող ժողովրդի իրավունքների դեկլարացիա»-ն, դրանով իսկ հաստատելով Սովետական ռեսպուբլիկան որպես պրոլետարական դիկտատուրայի քաղաքական ձև։*

*Այդ դեկլարացիայի հիման վրա Սովետների V համառուսական համագումարը (1918 թվականի, հունիս 4—10) ընդունեց Սովետական առաջին Կոնստիտուցիան, որն օրենսդրական կարգով հաստատեց նոր, սովետական տիպի պետության կազմավորումը։*



*Սրանից 40 տարի առաջ Վ. Ի. Լենինը հայտնագործեց Սովետների ռեսպուբլիկան և բնորոշեց նրա հիմնական հատկանիշները. առաջին՝ հին ոստիկանության և բանակի, իբրև ժողովրդի ճնշման միջոցների ոչնչացումը և փոխարինումը անմիջականորեն ժողովրդի վրա հենվող ուժով, երկրորդ՝ փշրված բուրժուական պետական ապարատի աստիճանավորների, բյուրոկրատիայի փոխարինումը ժողովրդի կողմից ընտրված մարդկանցով, երրորդ՝ ժողովրդական մասսաների ստեղծագործական լայն նախաձեռնության ծավալում պետական գործունեության բնագավառում։*

*Այս բնորոշումը ելնում է Վ. Ի. Լենինի այն հիմնական դրույթից, որ պրոլետարիատի դիկտատուրայի ամրությունը գլխավորապես կախված է պետական շինարարության գործին մասսաների լայն մասնակցությունից, որն ուղղված է շահագործող դասակարգի դիմադրության հաղթահարմանը և նոր, սոցիալիստական հասարակարգի կառուցմանը։ Իսկ մասսաների ամենալայն մասնակցությունը սոցիալիզմի կառուցման գործում ապահովեցին միայն Սովետները, որոնք բանվոր դասակարգի ու աշխատավոր գյուղացիության ամենադեմոկրատական, ամենամասսայական, ամենահեղինակավոր կազմակերպություններ են և ղեկավարվում են Կոմունիստական պարտիայի կողմից։*

Վ. Ի. Լենինի հանճարեղ կանխատեսությունը հաստատվեց մեր երկրի զարգացման պատմական ամբողջ ընթացքով։ Հաղթանակած պրոլետարիատը փշրեց բուրժուական պետական մեքենան և նրա փոխարեն ստեղծեց նոր, պրոլետարական պետական մեքենա՝ բուրժուազիայի դիմադրությունը կոտրելու և սոցիալիզմ կառուցելու համար։

Սովետներն անցած քառասուն տարիներում դարձել են բանվորների և գյուղացիների պետության անսասան քաղաքական հիմքը։ Բանվոր դասակարգի ձեռքում Սովետական իշխանությունը հանդիսացավ մի հզոր գործիք, որով նա մեր երկրում ոչնչացրեց կապիտալիզմը և կառուցեց սոցիալիզմ։

Պետական սովետական ձևը, որպես պրոլետարական դիկտատուրայի մի միասնական քաղաքական ձև, ՍՍՌՄ բոլոր ժողովուրդների մոտ փայլուն քննություն բռնեց. Սովետական իշխանության իդեան նախկինում տնտեսապես, քաղաքականապես և կուլտուրապես հետամնաց ժողովուրդներին առաջավորների մակարդակին հասցրեց, մեր երկրի բոլոր ազգերին ու ժողովուրդներին միավորեց մի հզոր, միասնական սովետական սոցիալիստական բազմազգ պետության մեջ։ Այդ, Սովետների միջազգային բնույթի, նրանց բոլոր երկրների և ժողովուրդների համար որպես պրոլետարական իշխանության քաղաքական ձևի օրինակ ծառայելու անժխտելի ապացույցն է։

Սովետական ուղին կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու առաջին ուղին էր։ Դա համաշխարհային պատմական նշանակություն ունեցող հարուստ փորձ է, որը ստեղծագործորեն կիրառվում է սոցիալիզմ կառուցող մյուս երկրներում։ Սոցիալիզմ կառուցելու նոր պատմական փորձը ցույց է տալիս, որ չնայած սոցիալիստական շինարարության առանձնահատկություններին տարբեր երկրներում, Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիայի, Սովետական ձևի հիմնական գծերն ու օրինաչափությունները բնորոշ են նաև մյուս երկրների համար։ «Հոկտեմբերյան ռևոլյուցիայի քառասնամյա փորձի համաշխարհային պատմական նշանակությունը հենց այն է,— ասված է Հոկտեմբերյան ռևոլյուցիայի 40-ամյակի առթիվ ՍՄԿՊ Կենտկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի ու ՍՄԿՊ Կենտկոմին առընթեր Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի թեզիսներում,— որ այդ ռևոլյուցիան հարթեց սոցիալիզմի մայրուղին, դրսևորեց այն ընդհանուր գծերն ու օրինաչափությունները, որոնք կիրառելի են դեպի սոցիալիզմ ընթացող բոլոր երկրների համար»։

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ԾԱՂԿՈՒՄԸ

Զ. ԲԱՇԻՆՋԱՂՅԱՆ

1917 թվականի Հոկտեմբերյան օրերը ցնցեցին ամբողջ աշխարհը, ազդարարելով, որ մեր երկրի բոլոր ժողովուրդները թևակոխում են ինչպես նյութական, այնպես էլ հոգևոր կյանքի մի նոր դարաշրջան։

Տնտեսական ու սոցիալական այդ հեղաշրջումը, որն իրականացրեց սովետական հաղթական ժողովուրդը, հեղաշրջման հիմք հանդիսացավ նաև նրա կուլտուրական կյանքում։ Արտադրության հիմնական միջոցների մասնավոր սեփականության և շահագործող դասակարգերի տիրապետության վերացումով մեր Հայրենիքի աշխատավորների համար լիակատար հնարավորություն բացվեց ստեղծելու սոցիալիստական կուլտուրա՝ ժամանակակից կուլտուրայի ամենաբարձր ձևը։

Սոցիալիստական կուլտուրան առաջին անգամ ստեղծվել է մեր երկրում, կոմունիստական հասարակության կառուցման ընթացքում։ Սակայն սոցիալիստական կուլտուրայի տարրերը սկիզբ են առել դեռևս Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակից առաջ։ Դեռևս կապիտալիզմի օրոք սոցիալիստական կուլտուրա սկզբնավորվելու պայմաններն արմատավորված են այն բանի մեջ, որ դասակարգային պայքարի հետևանքով բզկտվող անտագոնիստական հասարակության մեջ միասնական կուլտուրա լինել չի կարող։ Ընդհակառակը, բուրժուական հասարակության մեջ, ամեն մի բուրժուական ազգի մեջ կա երկու ազգ և, հետևապես, երկու ազգային կուլտուրա։ Ամեն մի բուրժուական ազգի մեջ կա բուրժուական կուլտուրա, որին ծնունդ են տալիս բուրժուազիայի, որպես տիրապետող դասակարգի կյանքի պայմանները, և կա դեմոկրատական, սոցիալիստական կուլտուրա, որին ծնունդ են տալիս բանվոր դասակարգի, աշխատավորների և շահագործվողների դասակարգի կյանքի պայմանները։ Շահագործողական հասարակության մեջ դեմոկրատական, սոցիալիստական կուլտուրան տիրապետող լինել չի կարող, նա գտնվում է չզարգացած վիճակում, բայց այդ դեռևս չզարգացած տարրերը պայքարի մեջ են մտնում շահագործողական բուրժուազիայի կուլտուրայի հետ, որովհետև այդ երկու կուլտուրաները իրենց հիմքով, բովանդակությամբ ու խնդիրներով ուղղակի հակադիր են իրար։ Սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակով սոցիալիստական կուլտուրան դառնում է տիրապետող կուլտուրա։ Սոցիալիստական ազգի մեջ չկան երկու ազգեր և չկան երկու ազգային կուլտուրաներ։ Կա մեկ միասնական կուլտուրա՝ ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական, որը վերացնում է բուրժուական իդեոլոգիայի, կապիտալիզմի մնացուկները մարդկանց գիտակցությունից։

Երկրորդ Ինտերնացիոնալի օպորտունիստական տեսաբանները, որոնք պայքարում էին պրոլետարական ռևոլյուցիայի դեմ, պնդում էին, թե պրոլե-

տարիտը չի կարող իշխանությունը նվաճելու հարց դնել իր առջև, քանի դեռ չի հասել կուլտուրայի անհրաժեշտ մակարդակի, որովհետև «որոշակի» կուլտուրական մակարդակի հասած չլինելով՝ նա չի կարող նոր հասարակություն կառուցել։ Պատասխանելով կապիտալիզմի այդ դիմակավորված պաշտպաններին՝ Վ. Ի. Լենինը գրել է. «Եթե սոցիալիզմի ստեղծման համար պահանջվում է կուլտուրայի որոշ մակարդակ (թեև ոչ ոք չի կարող ասել, թե որն է այդ որոշ «կուլտուրայի մակարդակը», որովհետև այն տարբեր է արևմտաեվրոպական պետություններից յուրաքանչյուրի մեջ), հապա ինչո՞ւ մենք չենք կարող սկսել, նախ, ռևոլյուցիոն ուղիով այդ որոշ մակարդակի համար նախադրյալներ նվաճելուց, իսկ հետո արդեն, բանվորա-գյուղացիական իշխանության և սովետական հասարակարգի հիման վրա առաջ շարժվել մյուս ժողովուրդներին հասնելու համար» (Երկեր, հատ. 33, էջ 569)։

Լենինյան այն դրույթը, թե կուլտուրական հեղաշրջումը կարող է տեղի ունենալ միայն քաղաքական ու սոցիալական հեղաշրջումից հետո, լիովին իրականացավ մեր երկրում։ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան աշխարհում առաջին սոցիալիստական պետության գլուխը կարգելով պրոլետարիատին՝ դրանով իսկ հնարավորություն ստեղծեց հսկայական թռիչք գործելու նաև հասարակության հոգեկան կյանքում, մի թռիչք, որ բնակչության մեծամասնությանը կուլտուրական հետամնացությունից հասցրեց ընդհանուր բարձր գրագիտության, ստեղծեց ժողովրդական սոցիալիստական ինտելիգենցիայի մեծաթիվ կուլտուրական կադրեր, որոնք հաջողությամբ առաջ են մղում գիտությունն ու տեխնիկան, լուծում են կոմունիստական հասարակության կառուցման բարդ խնդիրները։ Եվ հենց այդ էլ նշանակում է կուլտուրական ռևոլյուցիա ՍՍՌՄ-ում, որին ուղղություն է տալիս ՍՄԿՊ-ն և որն իրականացնում է սովետական պետությունը՝ մեր հասարակության միլիոնավոր աշխատավոր մասսաների ակտիվ աջակցությամբ։



Կուլտուրական ռևոլյուցիան սկսվում է այն ժամանակ, երբ պրոլետարիատն իշխանության գլուխ է անցնում և զարգանում է սոցիալիստական կարգերի ամրապնդմանը զուգընթաց, կոմունիստական հասարակության կառուցման ընթացքին համապատասխան։ Կուլտուրական ռևոլյուցիայի հաջողություններն արտացոլում են սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման բնագավառում ձեռք բերած հաջողությունները և իրենց կողմից էլ նպաստում են նրա հետագա ամրապնդմանը։

Այն 40 տարին, որ անցել է 1917 թվականի հոկտեմբերի 25-ից հետո, սոցիալիստական կուլտուրայի կառուցման 40 տարի է, դա սոցիալիստական հասարակության կառուցման, սոցիալիստական հասարակության զարգացման պատմությունն է։ Յուրաքանչյուր հասարակություն ստեղծում է իր կուլտուրան, հասարակության զարգացման ընթացքում ամեն մի նոր ժամանակաշրջան իր հետ բերում է նոր կուլտուրա։

Կուլտուրայի բնագավառում, այսինքն հոգեկան կյանքի բնագավառում սկզբունքային ի՞նչ նորություն է բերել իր հետ սոցիալիստական հասարակության կառուցումը մեր երկրում։



Հասարակության կուլտուրան նրա նվաճումներն են լուսավորության, գիտության, արվեստի, հոգեկան գործունեության բոլոր բնագավառներում, և նրա ռեալ նշանակությունը բնորոշվում է այն հնարավորություններով ու կարողություններով, որ ունի հասարակությունը կուլտուրական նվաճումները կենսագործելու համար, բնության ու հասարակական զարգացման օրենքներն օգտագործելու համար, բնության ուժերը նվաճելու, հասարակական արտադրության և ժողովրդի բարեկեցության աճման համար։

Սոցիալիստական հասարակությունում պատմության մեջ առաջին անգամ կուլտուրան՝ տեխնիկան և գիտությունը, գրականությունն ու արվեստը, դպրոցը, մամուլը, ռադիոն գտնվում են աշխատավորների ձեռքում, ի սպաս են դրված ժողովրդին։

ՍՍՌՄ աշխատավորները սոցիալիստական կուլտուրայի կառուցումն ամայի վայրում չեն սկսել։ Դեռևս Լենինի կենդանության ժամանակ ջախջախված «պրոլետկուլտականների» ամբարտավան դատարկաբանություններին հակառակ, որոնք փորձում էին ժխտել անցած պատմական ժամանակաշրջանի կուլտուրան, մարքսիզմ-լենինիզմը չի հրաժարվում անցյալի կուլտուրայից, այլ քննադատաբար օգտագործում է այն ամբողջ լավը, դրականը, որ կուլտուրայի բնագավառում ստեղծել են նախորդ սերունդների առաջավոր ուժերը։

Հենվելով անցած դարաշրջանի այն կուլտուրայի վրա, որ առաջավոր էր իր ժամանակի համար, ելնելով հետագա հասարակական զարգացման հասունացած խնդիրներից, ղեկավարվելով մարքսիզմ-լենինիզմի գաղափարներով՝ Սովետական Միության աշխատավորներն ստեղծել են նոր, սոցիալիստական կուլտուրա, ցայտուն օրինակ տալով, որ իսկական կուլտուրան ստեղծում են ոչ թե «հոգու ընտրյալները», այլ իրենք՝ մասսաները, հենց որ նրանք տապալում են շահագործողների ճնշող տիրապետությունը, փշրում են իրենց կաշկանդող շղթաները։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայից հետո անցած 40 տարվա ընթացքում ստեղծվել է սոցիալիստական բարձր կուլտուրա, որը ՍՍՌՄ-ում տեղի ունեցած կուլտուրական ռևոլյուցիայի կոնկրետ մարմնացումն է։ Սոցիալիստական հասարակության հոգեկան կյանքի որ բնագավառն էլ նայելու լինենք, կտեսնենք զարմանալի նվաճումներ, որոնք ցույց են տալիս ազատագրված ժողովրդի հոգեկան անսպառ ուժերը։

Անցյալի մռայլ և զարգացումն արգելակող նզովքից մեկը մեր երկրի բնակչության ճնշող մեծամասնության անգրագիտությունն էր։ Ցարիզմը շահագրգռված էր ստրկացված ժողովրդին ճնշել ոչ միայն սոցիալապես ու տնտեսապես, այլև հոգեպես։ Լենինն ասում է, որ «Անգրագետ մարդը քաղաքականությունից դուրս է, նրան նախ պետք է այբուբեն սովորեցնել։ Առանց սրան չի կարող քաղաքականություն լինել» (Երկեր, հատ. 33, էջ 72)։ Շահագործող դասակարգերը շատ լավ հասկանալով, թե բնակչության ընդհանուր գրագիտությունն ինչպիսի նշանակություն ունի նրա քաղաքական լուսավորության գործում, աշխատում են սահմանափակել գրագիտության աճը երկրում։ Նախառևոլյուցիոն Ռուսաստանում միլիոնավոր երեխաներ, մանավանդ գիր չունեցող ազգությունների երեխաները, զուրկ էին դպրոցում գրագիտություն սովորելու հնարավորությունից։ Գրագետ բնակչության տոկոսը շատ ցածր էր, մանավանդ գյուղական բնակչության և կանանց մեջ։ Գրագիտու-

թյան ամենաբարձր տոկոսը Ռուսաստանի եվրոպական մասումն էր, բայց այստեղ էլ այն 19 տոկոսից չէր անցնում։

Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիան ՍՍՌՄ բոլոր ժողովուրդների երեխաների համար ամենալայն հնարավորություն ստեղծեց դպրոց մտնելու և սովորելու մայրենի լեզվով։ Սովետական քաղաքացիների ուսման իրավունքն ամրապնդված է ՍՍՌՄ Կոնստիտուցիայի 121-րդ հոդվածով, ըստ որում այդ իրավունքն ապահովվում է ընդհանուր պարտադիր յոթնամյա կրթությամբ։ Ներկայումս յոթնամյա կրթությունից ընդհանուր տասնամյա կրթության անցում է կատարվում ռեսպուբլիկաների մայրաքաղաքներում և խոշոր քաղաքներում։ ՍՄԿՊ XX համագումարի որոշումներին համապատասխան վեցերորդ հնգամյակում ընդհանուր տասնամյա միջնակարգ կրթություն իրականացվելու է ամենուրեք։ Հնգամյակների տարիներին ՍՍՌՄ-ն դարձել է համատարած գրագիտության երկիր։ Այլ է դրությունը կապիտալիստական երկրներում, մանավանդ գաղութային ու կախյալ երկրներում, որտեղ բնիկների մեջ անգրագետների տոկոսը տատանվում է 40-ից (Հարավային Կորեա) մինչև 80 տոկոսը (Ալժիր)։

Սովետական Միության մեջ ժողովրդական կրթության հաջողություններն իսկապես որ հսկայական են. 1914 թվականին Ռուսաստանում տարրական ու միջնակարգ հանրակրթական դպրոցներում սովորողների թիվը հասնում էր 7,9 միլիոնի, իսկ այժմ 30 միլիոնից ավելի է։

Վիթխարի թափ է ստացել պրոֆեսիոնալ կրթությունը։ Մասսայական պրոֆեսիաների բանվորներ են պատրաստում ֆաբրիկա-գործարանային ուսուցման 6-ամսյա դպրոցները։ Որակյալ բանվորներ պատրաստում է պետական աշխատանքային ռեզերվների դպրոցների սիստեմը՝ արհեստավորական, երկաթուղային ու լեռնարդյունաբերական ուսումնարանները՝ երկամյա ուսուցումով։

Միջին որակի մասնագետներ (զանազան մասնագիտության տեխնիկներ, տարրական դպրոցի դասատուներ, բժշկական աշխատողներ) տալիս են մասնագիտացված տեխնիկումները (ինդուստրիալ, գյուղատնտեսական, մանկավարժական, բժշկական և այլն), ուսուցման 4-ամյա ժամկետով։ Այդ տեխնիկումներում ընդունվում են յոթնամյա կրթություն ունեցողները։ 1954 թվականին ՍՍՌՄ-ում կար 2224 տեխնիկում, որտեղ սովորում էր 1.250 հազար մարդ։

Սոցիալիստական կուլտուրայի կարևոր տարրը և կոմունիստական դաստիարակության օրգանական մասն է պոլիտեխնիկական կրթությունը, այսինքն՝ միջնակարգ դպրոցում սովորողներին ժամանակակից արտադրության գիտական հիմունքները սովորեցնելը, աշխատանքի ամենագործածական գործիքների կիրառելը, որ հնարավորություն կտա նրանց դպրոցն ավարտելուց հետո պրոֆեսիա ընտրելու իրենց համար։

Պարտիայի XX համագումարը նախատեսել է մի շարք միջոցառումներ, որոնք անհրաժեշտ են պոլիտեխնիկական ընդհանուր ուսուցման անցնելու համար։

Սովետական պետությունը բարձրագույն ուսումնական հաստատությունների դռները լայն բաց է անում հանրակրթական միջնակարգ դպրոցները, ինչպես նաև միջնակարգ պրոֆեսիոնալ դպրոցներն ավարտածների առաջ։ Բուհերը (համալսարանները, ինստիտուտները, ակադեմիաները) 4—6-ամյա



ուսուցումով բարձրորակ մասնագետներ են պատրաստում ժողովրդական տնտեսության և կուլտուրայի ամենաբազմապիսի ճյուղերի համար։

1914 թվականի համեմատությամբ ՍՍՌՄ-ում բարձրագույն ուսումնական հաստատությունների և նրանցում սովորող ուսանողների թիվն աճել է ավելի քան 10 անգամ։ 1956—57 ուս. տարում ՍՍՌՄ-ում կար 767 բարձրագույն ուսումնական հաստատություն՝ 2001 հազար ուսանողով (ներառյալ նաև հեռակայողները)։ Ուսանողների թվով վաղուց արդեն ՍՍՌՄ-ն գերազանցում է եվրոպական մյուս բոլոր երկրներին՝ միասին վերցրած։

Ժողովրդական կրթության բնագավառում ձեռք բերած հաջողություններն առանձնապես ապշեցուցիչ են ազգային ռեսպուբլիկաներում, որտեղ նախասովետական տարիներին ցարական կառավարության վարած մեծապետական քաղաքականության հետևանքով կուլտուրական հետամնացությունն է՛լ ավելի մեծ էր։

Այսպես, Հայաստանի տերիտորիայում 1920 թվականին, մինչև Սովետական իշխանության հաստատվելը, կար ընդամենը 446 տարրական դպրոց և մի քանի միջնակարգ ուսումնական հաստատություն։ Ներկայումս ռեսպուբլիկայում, չհաշված տարրական դպրոցները, գործում են 620 թերի միջնակարգ ու 403 միջնակարգ դպրոց և 44 տեխնիկում։ Սրան պետք է ավելացնել, որ ինչպես տարրական ու միջնակարգ դպրոցում, այնպես էլ բուհերում ուսումը ձրի է, իսկ տեխնիկումների ու բուհերի առաջադեմ և կարիքավոր ուսանողները ապահովվում են պետական թոշակով։

Ամբողջ Կովկասում (ներառյալ նաև Հյուսիսային Կովկասը) ցարի օրոք ոչ մի բարձրագույն ուսումնական հաստատություն չկար։ Կովկասյան ինտելիգենցիայի առաջադեմ շրջանները իզուր էին ջանում թեկուզ մեկ բարձրագույն ուսումնական հաստատություն (համալսարան կամ պոլիտեխնիկական ինստիտուտ) բացել Թիֆլիս քաղաքում, որն այն ժամանակ Կովկասի վարչական ու կուլտուրական կենտրոնն էր։ Ցարական կառավարությունը համառորեն մերժում էր այդ, և Կովկասի երիտասարդները բարձրագույն կրթություն ստանալու համար ստիպված էին լինում գնալ իրենց համար անսովոր կլիմա ունեցող քաղաքները՝ Պետրոգրադ, Մոսկվա, Խարկով, Տոմսկ և այլն։ Բայց, ահա, Սովետական իշխանության տարիներին Կովկասի ռեսպուբլիկաները ծածկվել են բարձրագույն ուսումնական հաստատությունների խիտ ցանցով. Հենց միայն Հայկական ՍՍՌ-ում ներկայումս 11 բարձրագույն ուսումնական հաստատություն կա, որոնք ամեն տարի բարձրորակ մասնագետների նորանոր ջոկատներ են տալիս։ Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության մեջ աշխատում են բարձրագույն կրթությամբ 29.600 մասնագետ, այդ թվում 6000 ինժեներ, 3400 գյուղատնտես ու զոոտեխնիկ, 3.800 բժիշկ։

Սովետական կարգերի հարազատ ծնունդն է հեռակա ուսուցման սիստեմը, որը լայն թափ է ստացել մեր երկրում։ Պարտիայի XX համագումարը նշեց, որ աշխատավորներին առանց արտադրությունից կտրվելու ուսուցանելու համար անհրաժեշտ է է՛լ ավելի ծավալել հեռակա ու երեկոյան բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունների ցանցը։

Շատ բարձրագույն ուսումնական հաստատություններին ու գիտահետազոտական ինստիտուտներին կից կա ասպիրանտուրա, որտեղ երեք տարվա ընթացքում պատրաստվում են բուհերի դասատուներ և գիտական աշխատողներ։ ՍՍՌՄ-ում կա մինչև 30 հազար ասպիրանտ։

ՍՍՌՄ ժողովրդական կրթության սիստեմին բնորոշ է նաև 3-ից մինչև 7 տարեկան երեխաների նախադպրոցական դաստիարակության վիթխարի ցանցը՝ մանկապարտեզները, մանկական հրապարակները, որոնք իրենց դաստիարակած երեխաների թվով աշխարհում առաջին տեղն են գրավում: Դրանց պետք է ավելացնել մանկական արտադպրոցական հիմնարկությունները՝ պիոներների պալատներն ու տները, մանկական գրադարանները, մանկական ընթերցասրահներն ու մանկական քաղաքները, պատանի բնասերների, պատանի տեխնիկների կայանները, էքսկուրսիա-տուրիստական կայանները և այլն:

Ժողովրդական լայն մասսաների ընդհանուր կուլտուրական մակարդակի բարձրացման գործին և նրանց հարաճուն կուլտուրական պահանջների բավարարմանն են ծառայում այն բազմապիսի միջոցառումները, որ իրականացնում են սովետական պետության ստեղծած կուլտուր-լուսավորական հիմնարկությունները:

Պետության և հասարակական կազմակերպությունների (պրոֆմիությունների, կոլտնտեսությունների) միջոցներով ստեղծվել ու պահվում են գրադարաններ, ակումբներ, թանգարաններ, լեկտորիումներ, կուլտուրայի ու հանգստի զբոսայգիներ: Կուլտուր-լուսավորական աշխատանքները կատարվում են վիթխարի մասշտաբով: Ինչպես քաղաքներում, այնպես էլ գյուղերում մեծահասակների համար գործող կուլտուր-լուսավորական հիմնարկություններն իրենց թվով ու բազմապիսությամբ գերազանցում են աշխարհի մյուս բոլոր երկրներին. մեր երկրի կուլտուր-լուսավորական հիմնարկությունների ցանցը ամենալայնն է աշխարհում: Ռևոլյուցիայից առաջ Հայաստանում տաս գրադարան էլ չկար: Ներկայումս ռեսպուբլիկայում գործում է ավելի քան 1000 գրադարան: Գյուղական կուլտուր-լուսավորական հիմնարկությունների պահպանման ու ընդարձակման, ինչպես և նրանց գործադրած միջոցառումների համար ամեն տարի պետական բյուջեից մի քանի միլիարդ ռուբլի է ծախսվում:

Սոցիալիստական հասարակության մեջ կուլտուր-լուսավորական աշխատանքի մի առանձնահատկությունն էլ այն է, որ դա կատարվում է աշխատավոր մասսաների ինքնագործունեության հիման վրա: Այդ գործին ակտիվ մասնակցություն է ունենում սովետական ինտելիգենցիան՝ ուսուցիչները, բժիշկները, գյուղատնտեսները, ինժեներները, տեխնիկները, որոնք հանդես են գալիս որպես զեկուցողներ, դասախոսներ, ինքնագործ խմբակների ղեկավարներ և այլն:

Տարածելով քաղաքական ու գիտական գիտելիքներ, նպաստելով քաղաքի ու գյուղի աշխատավորների կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացմանը, պրոպագանդելով գիտության ու արվեստի, տեխնիկայի ու արտադրական առաջավոր փորձի նվաճումները, կազմակերպելով աշխատավորների կուլտուրական հանգիստը՝ կուլտուր-լուսավորական հիմնարկությունները նրանց մեջ դաստիարակում են սոցիալիստական գիտակցություն ու սովետական հայրենասիրություն, պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգի են ներշնչում նրանց, օգնում են մշակելու մատերիալիստական աշխարհայացք, զարգացնելու ստեղծագործական ընդունակությունները, որոնք անհրաժեշտ են կոմունիստական հասարակության կառուցման համար:

Սոցիալիստական կուլտուրայի առավել վառ արտահայտություններից և դրա հետ միասին նրա տարածման ամենազորեղ միջոցներից մեկը մամուլն



է և հրատարակչական գործը: Այս բնագավառում ևս ՍՍՌՄ-ն հսկայական թռիչք է գործել՝ 1913 թվականին լույս ընծայած 28 հազար անուն գրքից մինչև 55 հազար անուն գիրքը, որ հրատարակվել է 1955 թվականին: Այդ նույն թվականների ընթացքում ԱՄՆ-ում հրատարակվող գրքերի թիվը նվազել է, 1913 թվականի 12,2 հազար անունից իջնելով մինչև 11,9 հազար անուն, որ հրատարակվել է 1954 թվականին: «Ամերիկյան զարգացման ուղու» ավելի քան 40 տարին ոչ թե աճման, այլ անկման է հասցրել ժողովրդական լուսավորության գործը այնպիսի մի կարևոր բնագավառում, ինչպիսին է գրքերի հրատարակությունը: Հրատարակվող գրքերի ընդհանուր թվի նվազման հետ միասին զգալիորեն աճել է անճաշակ, դետեկտիվ վեպերի, ամեն տեսակ կոմիկսների լույս ընծայումը, որոնք անբարոյացնող ազդեցություն են ունենում հասարակության, մանավանդ աճող սերնդի վրա:

Ճշգրիտ գիտությունների գծով (ներառյալ բժշկականությունը) ՍՍՌՄ-ում 1955 թվականին լույս է ընծայվել 4561 անուն գիրք, Անգլիայում՝ 1110 անուն, իսկ ԱՄՆ-ում՝ (1954 թվականին) 707 անուն, այսինքն համարյա յոթ անգամ պակաս, քան մեր երկրում: Բայց գուցե կապիտալիստական երկրները սովետական երկրից առաջ են գնում հումանիտար գիտությունների՞ գծով: Այստեղ ևս դիմենք փաստերին:

Ֆիլոլոգիայի գծով ՍՍՌՄ-ում 1955 թվականին լույս է ընծայվել 1497 անուն գիրք, Անգլիայում՝ 582 անուն, իսկ ԱՄՆ-ում՝ ընդամենը 181 անուն, այսինքն ութ անգամ պակաս, քան մեզ մոտ:

Բուրժուական երկրների համար է՛լ ավելի անմխիթար է վիճակը կիրառական գիտությունների (արդյունաբերություն, գյուղատնտեսություն, տրանսպորտ և այլն) գծով հրատարակվող գրքերի գործում. մինչդեռ ՍՍՌՄ-ում այդ գիտությունների գծով 1955 թվականին հրատարակվել է 25.891 անուն գիրք, ԱՄՆ-ում լույս է ընծայվել ընդամենը 1583 անուն, այսինքն 16 անգամ պակաս:

Միաժամանակ պետք է նշել, որ ՍՍՌՄ-ում գրքերը հրատարակվում են հսկայական տիրաժով, մի բան, որ կապիտալիստական երկրների համար միանգամայն անհնարին է: 1956 թվականին հենց միայն Հայաստանում լույս է ընծայվել 6 միլիոն օրինակ գիրք. սա զգալիորեն ավելի շատ է, քան հայ գրքի տպագրության 400 տարվա ընթացքում երկրագնդի բոլոր մասերում հայոց լեզվով տպագրված գրքերի ընդհանուր թիվը:

Երկրում արագ թափով է զարգանում պարբերական մամուլը, աճում է թերթերի ու ամսագրերի տիրաժը: Այսպես, թերթերի միաժամանակյա տիրաժը ՍՍՌՄ-ում 1950 թ. կազմում էր 36 միլիոն, 1955 թվականին հասավ 49 միլիոնի, զգալիորեն գերազանցելով Անգլիայում, Ֆրանսիայում և Շվեդիայում միաժամանակյա թերթերը միասին վերցրած:

Հայաստանում ամեն օր հայերեն, ռուսերեն, ադրբեջաներեն և քրդերեն լույս են տեսնում հարյուր հազարավոր օրինակ թերթեր ու ամսագրեր:

Կուլտուրական ռևոլյուցիան ՍՍՌՄ-ում մեծ փոփոխություն առաջացրեց նաև գիտության բնագավառում, որը ծաղկում է հավերժ կենդանի ու զարգացող մարքսիստական-լենինյան ուսմունքի հիման վրա:

Սովետական Միությունում պատմության մեջ առաջին անգամ լայն ասպարեզ բացվեց գիտության բոլոր ճյուղերի անարգել զարգացման համար: Սոցիալիստական հասարակության արտադրական հարաբերությունները ապա-

հովելով արտադրողական ուժերի բուռն աճը՝ պայմաններ ստեղծեցին գիտության արագ զարգացման համար։ Պատմության մեջ դեռ երբեք գիտությունն այնպիսի բազմակողմանի զարգացում չի ստացել, ինչպես սովետական հասարակության մեջ, որը ժողովրդական մասսաներին ակտիվ մասնակից է դարձրել գիտական աշխատանքներին։ Իսկ ամենագլխավորն այն է, որ միայն սոցիալիզմի օրոք գիտությունն ի սպաս է դրված հասարակությանը, բազմադարյան քաղաքակրթության պտուղները և գիտության արդի նվաճումները ծառայում են ժողովրդի շահերին, նրա նյութական բարեկեցության և կուլտուրական մակարդակի բարձրացման գործին։ Եթե միջին դարերում գիտությունը կրոնի սպասուհին էր, իսկ արդի բուրժուական հասարակության մեջ նա դարձել է իմպերիալիզմի ուժերի սպասուհին, ապա սոցիալիստական երկրում գիտությունը ծառայում է սովետական հասարակության նյութական ու կուլտուրական պահանջմունքների առավել լրիվ բավարարման վեհ խնդրին։ Գիտության զարգացման հասարակական պայմանների արմատական փոփոխման և դրա հետ միասին նրա հասարակական նշանակության փոփոխման ցայտուն օրինակ է ատոմային էներգիայի օգտագործումը խաղաղ նպատակներով, առաջին անգամ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության մեջ այնպիսի հզոր ուժի կիրառումը, ինչպիսին է միջուկային էներգիան։

Սովետական գիտության ու տեխնիկայի տրիումֆ հանդիսացավ երկրագնդի արհեստական արբանյակների թողարկումը Սովետական Միությունից։ Երկրագնդի արհեստական արբանյակների հաջող թողարկումը ոչ միայն ապացուցեց սովետական գիտական-տեխնիկական մտքի հոյակապ ծաղկումը, այլև նոր դարագլուխ նշանավորեց գիտության զարգացման բազմադարյա պատմության մեջ։ Ամբողջ աշխարհի պրոգրեսիվ մամուլը հիացմունքով է խոսում մեր գիտության այդ հաղթանակի մասին։ Բայց այդ վիթխարի գիտական նվաճումը սոսկ մի օրինաչափական օղակն է այն հայտնագործությունների ու նվաճումների շղթայում, որոնցով իրավամբ հպարտանում է սովետական ժողովուրդը։ Չի կարելի պատահականություն համարել, որ հատկապես Սովետական Միությունում ստեղծվեցին երկրագնդի առաջին արհեստական արբանյակները։

Սովետական իշխանության քառասուն տարիներում՝ աշխատանքի լիակատար ազատության պայմաններում, բազմակողմանի նախադրյալներ ստեղծվեցին ամենահամարձակ ստեղծագործական խոյանքների համար։ Պատմական նման կարճատև ժամանակամիջոցում մեր հզոր Հայրենիքի գիտությունն ու տեխնիկան այնքան զարգացան, որ լուծելով մարդկային մտքի առաջխաղացման առջև ծառացած ամենաբարդ առեղծվածները, սկիզբ դրին միջմոլորակային տարածությունները նվաճելու պրոբլեմի լուծման։

Սովետական գիտական մտքի միավորող կենտրոնը ՍՍՌՄ Գիտությունների Ակադեմիան է, որի շուրջն են համախմբված ազգային ռեսպուբլիկաների գիտությունների ակադեմիաները և ՍՍՌՄ Գիտությունների Ակադեմիայի ֆիլիալները։ ՍՍՌՄ-ում գիտական աշխատանք է կատարվում ոչ միայն Գիտությունների Ակադեմիայի սիստեմում, այլև զանազան ճյուղային մինիստրությունների մի ամբողջ շարք գիտա-հետազոտական հիմնարկություններում, համալսարաններում և այլ բարձրագույն ուսումնական հաստատություններում։ Սակայն գիտա-հետազոտական աշխատանքը սրանով էլ չի սահմանափակվում։ Զգալի մասշտաբներով գիտա-հետազոտական աշխատանք է



կատարվում նաև ամեն մի խոշոր արդյունաբերական ձեռնարկությունում, կոլտնտեսություններում և սովետական տնտեսություններում։ Սա սովետական հասարակության առանձնահատկություններից մեկն է. սովետական գիտությունն առաջ են մղում ու զարգացնում ոչ միայն պրոֆեսիոնալ գիտական աշխատողները, այլև բազմահազար մասնագետներ, որոնք աշխատում են ժողովրդական տնտեսության զանազան ճյուղերում, կուլտուրայի այլ և այլ բնագավառներում։ Գիտությունն առաջ են մղում նաև նորարար բանվորները, կոլտնտեսականները, արդյունաբերության ու գյուղատնտեսության առաջավորները, որոնք ստեղծագործաբար յուրացնում են ժամանակակից արտադրության բարդ տեխնիկան։ Սովետական իշխանության 40 տարիների ընթացքում մեր երկրում աճել են համաշխարհային հռչակ ունեցող բարձրորակ կադրեր, որոնք նոր ուղիներ են բացում գիտության մեջ, հարստացնում են այն առաջնակարգ նշանակություն ունեցող նվաճումներով։ Տարեցտարի ընդարձակվում է գիտական հիմնարկությունների ցանցը, ամրապնդվում է գիտական աշխատանքի նյութա-տեխնիկական բազան, որի համար տարեկան մի քանի միլիարդ ռուբլի միջոցներ են հատկացվում։

Հայաստանի Գիտությունների ակադեմիան՝ ականավոր գիտնական Վ. Համբարձումյանի գլխավորությամբ, միավորում է 49 գիտա-հետազոտական հիմնարկություն։ Ռեսպուբլիկայի գիտական հիմնարկություններում աշխատում են բազմահազար բարձրորակ գիտական աշխատողներ։ Նրանք մշակում են ժամանակակից գիտության ու տեխնիկայի խոշոր պրոբլեմներ, որոնք կապված են ժողովրդական տնտեսության պրակտիկ պահանջմունքների հետ։

Սովետական գիտության ծաղկումը բոլոր ճյուղերում կարևոր գործոն է սոցիալիստական հասարակության արտադրողական ուժերի հետագա արագ աճման համար։



ՍՍՌՄ-ում տեղի ունեցած կուլտուրական ռևոլյուցիան իր հզոր արտացոլումն է գտել նաև սովետական գեղարվեստական գրականության ծաղկման գործում։ Գրականության բնագավառում սովետական ժողովուրդը հարուստ ժառանգություն ունի ի դեմս Սովետական Միության ժողովուրդների կլասիկ գրականության։

Հոկտեմբերյան ռևոլյուցիան բազմամիլիոն բանվորների ու գյուղացիների սեփականություն դարձրեց Պուշկինի, Տոլստոյի, Չեխովի, Շևչենկոյի, Նիզամիի, Նավոյիի, Ռուսթավելու, Աբովյանի, Թումանյանի և ՍՍՌՄ ժողովուրդների ուրիշ մեծ զավակների, գեղարվեստական խոսքի վարպետների ստեղծագործությունները։

Սովետական գրականությունը հարստացրեց մեր ժողովրդի կուլտուրան և անդադրում զարգանալով սոցիալիստական ռեալիզմի ուղիներով՝ տվեց մեր դարաշրջանին արժանի ստեղծագործություններ։

Գորկու, Մայակովսկու, Ալ. Տոլստոյի, Շոլոխովի, Ջամբուլի, Սուլեյման Ստալսկու, Ջաբարլիի, Ջավախաշվիլու, Կորնեյչուկի, Լացիսի, Յանկա Կուպալայի, Ավ. Իսահակյանի, Չարենցի և այլ գրողների ստեղծագործությունները գեղարվեստական կերպարներով վերարտադրում են սովետական իրականությունը, նրա հերոիկան և ստեղծագործական առօրյան։

ՍՍՌՄ-ում տեղի ունեցած կուլտուրական ռևոլյուցիայի թափի մասին

կարելի է դատել թեկուզ նրանով, որ հենց միայն պրոլետարական գրականության հիմնադիր Ա. Մ. Գորկու գործերը 1918 թվականից մինչև 1956 թվականը լույս են տեսել 2.279 անգամ 73 լեզվով, ավելի քան 85 միլիոն օրինակ ընդհանուր տիրաժով։

Մեծ տիրաժներով լույս են տեսնում նաև ինչպես անցյալի, այնպես էլ արդի համաշխարհային գրականության լավագույն նմուշները։ Սովետական իշխանության տարիներին հրատարակվել են ավելի քան 1700 օտարերկրյա հեղինակների գործեր, իսկ նրանց տիրաժը կազմել է ավելի քան 360 միլիոն օրինակ։

Բեղմնավոր կերպով կիրառելով սոցիալիստական ռեալիզմի մեթոդը՝ սովետական իշխանության տարիներին ծաղկել է նաև բազմազգ սովետական արվեստը։

Դեռ երբեք արվեստի աշխատողները չեն ունեցել այնպիսի լայն աուդիտորիա, այնպիսի մասսայական, զգայուն ու խստապահանջ հանդիսատես և ունկնդիր, ինչպես սոցիալիստական երկրում։ Թատրոնը, երաժշտությունը, նկարչությունը վաղուց արդեն հաստատորեն մտել են սովետական մարդու կուլտուրական կենցաղի մեջ։ Ներկայումս ՍՍՌՄ-ում կա ավելի քան 500 պրոֆեսիոնալ թատրոն։ 15 միութենական ռեսպուբլիկաների մայրաքաղաքներում գործում են ազգային օպերային ու դրամատիկական թատրոններ, որոնց հենց միայն 1955 թվականին հաճախած հանդիսատեսների ընդհանուր թիվը կազմել է 78 միլիոն։

Շատ ժողովուրդներ՝ ղազախները, կիրգիզները, թուրքմենները, բաշկիրները, մարիները և այլն առաջին անգամ Սովետական իշխանության ժամանակ են ստեղծել իրենց պրոֆեսիոնալ թատրոնը։

Սակայն, բացի պրոֆեսիոնալ թատրոններից կան և մեծ թվով ինքնագործ թատերական կոլեկտիվներ, որոնք հանդես են գալիս արդյունաբերական ձեռնարկություններում, կոլտնտեսություններում, հիմնարկություններում։

Սովետական Միությունում հսկայական տարածում է ստացել երաժշտությունը, որն իսկապես դարձել է ամբողջ ժողովրդի սեփականությունը։

Գուցե և կուլտուրական ռեվոլյուցիան ուրիշ ոչ մի բնագավառում այնպես ակնառու չի արտահայտվել, ինչպես երաժշտության մեջ, որը, բացի այն, որ համաշխարհային հռչակ ունեցող շատ անուններ ունի, այլև, որ ամենագլխավորն է, թափանցել է ժողովրդի ամենալայն խավերի մեջ։ Ռուսական և համաշխարհային կլասիկ երաժշտության ստեղծագործությունները շարունակ հնչում են բազմաթիվ համերգային դահլիճներում, գրավելով հսկայական թվով ուշադիր ունկնդիրներ։ Բեթհովենի հերոսական սիմֆոնիաները և Շոպենի ինտիմ նոկտյուրնները մեր երկրում պակաս ընկալող ունկնդիր չունեն, քան Գլինկայի էպիքական երաժշտությունը և Չայկովսկու ու Կոմիտասի հուզիչ մեղեդին։ Սովետական կուլտուրայում հսկայական ներդրում են արել Պրոկոֆևն ու Գլիերը, Շոստակովիչն ու Խաչատրյանը, Կաբալևսկին, Շապորինը, Ալեքսանդրովը, որոնց ստեղծագործությունները ամբողջ աշխարհին հայտնի դառնում շնորհիվ Բեթհովենի և Կոմիտասի անվան կվարտետների, Դ. Օյստրախի, Է. Գիլելսի, Գ. Բարինովի, Շաֆրանի, Ռիխտերի նման խոշոր դաշնակահարների ու ջութակահարների կուլտուրական բարձր վարպետության։ Սրանց պետք է ավելացնել Սովետական իշխանության ժամանակ աճած առաջնակարգ վոկալիստներին՝ Բարսովային, Օբուխովային, Զերժինսկայա-



յին, Մաքսակովային, Հ. Դանիելյանին, Գոհար Գասպարյանին, Զարա Դոլուխանովային, Ռեյզենին, Պիրոգովին, Կոզլովսկուն, Լիսիցյանին, Լեմեշևին և ուրիշ շատերին, որոնց արվեստը սովետական երաժշտական դպրոցի բարձր արժանիքների առավել ցայտուն վկայությունն է։

Մեր ժամանակի մեծագույն արտիստուհի Գալինա Ուլանովայի ստեղծած գեղարվեստական կերպարները, Լեպեշինսկայայի, Սեմյոնովայի, Պլիսեցկայայի, Կորենիի, Ճաբուկիանիի, Ցարմանյանցի և սովետական բալետային արվեստի այլ վարպետների տաղանդավոր կատարումները ընդհանուր հիացմունք են առաջացնում ինչպես մեր երկրում, այնպես էլ ամբողջ աշխարհում։

Սովետական երաժշտական կուլտուրան հենվում է կազմակերպական ու նյութական հզոր բազայի վրա. 22 կոնսերվատորիաները (այդ թվում նաև Երևանի Կոմիտասի անվան կոնսերվատորիան), 120-ից ավելի երաժշտական դպրոցները, մոտ 50 հիանալիորեն կազմված խոշոր սիմֆոնիկ նվագախմբերը, բազմահազար երաժշտական խմբակներն ու կոլեկտիվները բարձրորակ երաժիշտների կադրեր են դաստիարակում։

Մեծ հաջողությունների են հասել Երևանի Ալ. Սպենդիարյանի անվան օպերայի և բալետի ակադեմիական թատրոնը և Սունդուկյանի անվան պետական դրամատիկական թատրոնը, որոնք իրենց նվաճումները մի անգամ ևս ցուցադրեցին 1956 թվականին Մոսկվայում կայացած հայ արվեստի ու գրականության տասնօրյակում և արժանացան Մոսկվայի հասարակայնության ջերմ հավանությանը։

Սովետական կերպարվեստը ժառանգելով նախասովետական ժամանակների դեմոկրատ նկարիչների ռեալիստական արվեստի ազնիվ տրադիցիաները, ինչպես և մեր երկրի արվեստի մյուս ճյուղերը, հաջողությամբ առաջ է ընթանում սոցիալիստական ռեալիզմի ուղիով։ Նկարիչները, քանդակագործները, գրաֆիկները ստեղծել են մի շարք երևելի գործեր, որոնց մեջ գաղափարական խոր բովանդակությունը հմտորեն զուգակցված է պրոֆեսիոնալ բարձր վարպետության հետ։ Երևանի գեղարվեստական ինստիտուտը և Երևանի նկարչական ուսումնարանը ամեն տարի տալիս են մեծ թվով տաղանդավոր նկարիչներ, որոնք գալիս են փոխարինելու հին սերնդի վարպետներին։

Վիթխարի են կինոֆիկացման մասշտաբները։ Եթե ցարիզմի ժամանակ Ռուսաստանի քաղաքներում կար ընդամենը 1368 կինոսարքավորում, ապա 1956 թվականին ՍՍՌՄ քաղաքներում կար 13.000։ Էլ ավելի ապշեցուցիչ է գյուղական վայրերի կինոֆիկացման գործում եղած փոփոխությունը. Ներկայումս գյուղական վայրերում կա մոտ 50 հազար կինո, այնինչ ցարական ժամանակներում եղել է ընդամենը 142։

Չտեսնված արագ թափով է զարգանում ռադիոն, որ ամենուրեք խորապես մտել է աշխատավորների կենցաղի մեջ և մեր սոցիալիստական Հայրենիքի ...որ անկյունների աշխատավորների կուլտուրական կյանքը ամուր կապում ...նի հետ, միաժամանակ ապահովելով մեր երկրի մշտական կուլտուրական ...արտասահմանի հետ։

...յումս ՍՍՌՄ-ում ռադիոհաղորդումներ են լինում մեր երկրում ...46 ժողովուրդների լեզվով և ավելի քան 30 արտասահմանյան լեզու...վ։ Գործում են ...0 հազար ռադիոհանգույցներ, որոնք սպասարկում են համարյա 20 միլիոն ռադիոտրանսլյացիոն կետ, ինչպես նաև միլիոնավոր ռադիոընդունիչներ քաղաքացիների բնակարաններում։

Աճման տեմպերով ռադիոհաղորդման հետ հաջողությամբ մրցում է հեռուստատեսությունը, որն իր գոյությամբ ավելի երիտասարդ է, բայց զարգանում է բուռն թափով։ Մի 2—3 տարի սրանից առաջ մեր երկրում կար ընդամենը երկու հեռուստատեսային կայան՝ Մոսկվայում և Լենինգրադում, այնինչ ներկայումս արդեն կա մի քանի տասնյակ կայան, իսկ 1960 թվականին դրանց թիվը հասնելու է 60-ի։ Երևանում հեռուստատեսային կայանը հաջողությամբ գործում է 1956 թվականից։

Հնարավոր չէ ամսագրային մեկ հոդվածի սահմաններում շատ թե քիչ հանգամանորեն կանգ առնել մեր երկրում լուսավորության ու կուլտուրայի մյուս օջախների վրա (բանվոր երիտասարդության դպրոցներ, բժիշկների, ուսուցիչների վերապատրաստման դասընթացներ, գյուղական գրադարաններ, ակումբներ)։ Բայց կա մի բնագավառ, որ կազմում է ՍՍՌՄ-ում կատարված կուլտուրական ռևոլյուցիայի անբաժան մասը և Սովետական իշխանության տարիներին չտեսնված թափ է ստացել։

Դա ֆիզկուլտուրան է և սպորտը։

1957 թվականին ՍՍՌՄ-ում գործում են 200 000 ֆիզկուլտ կոլեկտիվներ, որոնք ընդգրկում են 19 միլիոն մարդ։ 38 կամավոր սպորտային ընկերություն և 992 երիտասարդական սպորտային դպրոց զբաղված են ինչպես աճող սերնդի, այնպես էլ ավագ սերնդի ֆիզիկական դաստիարակության գործով։ Կոմունիստական հասարակության կառուցման վեհ խնդիրները հաջողությամբ լուծել կարող են հոգեպես ու ֆիզիկապես բազմակողմանիորեն զարգացած մարդիկ։

Սովետական սպորտի բոլոր առավելությունները և ամենից առաջ նրա մասսայականությունը իր վառ արտահայտությունն է գտնում միջազգային սպորտային մրցություններում, որտեղ սովետական սպորտսմենները միշտ առաջին շարքերում են ընթանում։

ՍՍՌՄ-ում տեղի ունեցած կուլտուրական ռևոլյուցիան ծավալուն կուլտուրական շինարարության նախատիպ հանդիսացավ Եվրոպայի ու Ասիայի ժողովրդա-դեմոկրատական երկրների համար, որտեղ բանվորներն ու գյուղացիները իշխանության գլուխ անցնելով, կառուցում են սոցիալիստական էկոնոմիկա և սոցիալիստական կուլտուրա։

Կապիտալիզմի երկրների աշխատավորների համար ՍՍՌՄ-ում տեղի ունեցած կուլտուրական ռևոլյուցիան ակնառու ապացույց է սոցիալիստական կարգի առավելության, որն ապահովում է աշխատավոր ժողովրդի նյութական բարեկեցության և կուլտուրական մակարդակի անընդհատ վերելքը։

Մարքսիզմ-լենինիզմի վեհ սկզբունքներն արդեն 40 տարի է, ինչ սովետական ժողովրդի առաջ լուսավորում են կոմունիստական հասարակության կառուցման, նրա էկոնոմիկայի ու կուլտուրայի ծաղկման հոյակապ ուղին։

Մարքսիստական-լենինյան թեորիան ստեղծագործաբար զարգացնող ու կենսագործող Սովետական Միության անպարտելի Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ մեր մեծ Հայրենիքի աշխատավորները նորանոր հաջողությունների կհասնեն սոցիալիստական շինարարության բոլոր բնագավառներում, այդ թվում նաև կուլտուրայի բնագավառում։

---

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԻՆԴՈՒՍՏՐԱՑՈՒՄԸ

Ա. ՋՐԱՂԱՑՊԱՆՅԱՆ

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան ՍՍՌՄ աշխատավոր
ժողովրդի միայն սոցիալական ու քաղաքական ազատագրումը չէր կալվածա-
տիրական և կապիտալիստական շահագործումից։ Հոկտեմբերը միաժամանակ
սկիզբ դրեց մեր երկրի բազմազգ ժողովուրդների տնտեսական ու կուլտուրա-
կան զարթոնքին, նրանց նյութական բարեկեցության չտեսնված վերելքին։
Հոկտեմբերյան ռևոլյուցիան հիմք դրեց արտադրության հասարակական կազ-
մակերպման այնպիսի եղանակի, որի ժամանակ ոչ միայն բացառվում է
մարդու շահագործումը մարդու կողմից, այլև արտադրողական ուժերի ան-
կաշկանդ զարգացման համար անսահման հնարավորություններ ու աննախըն-
թաց պայմաններ են ստեղծվում թե երկրի կենտրոնական շրջաններում և թե
նրա հեռավոր ծայրամասերում։

Հայտնի է, որ կապիտալիզմի զարգացման անհամաչափության օրենքը
դրսևորվում է ինչպես կապիտալիստական տարբեր պետությունների միջև,
այնպես էլ այդ պետություններից յուրաքանչյուրի ներսում։ Այդ օրենքի գոր-
ծողությունը, որ իմպերիալիզմի շրջանում կատաստրոֆիկ բնույթ է ստանում,
վկայում է արտադրողական ուժերի խիստ անհամաչափ զարգացումը։ Ընդ-
որում այդ անհամաչափությունը վերաբերում է ոչ միայն արտադրության
տարբեր ճյուղերի հարաբերակցությանը, այլև արտադրողական ուժերի տե-
ղաբաշխմանը։ Այս տեսակետից չափազանց բնորոշ էր ցարական Ռուսաս-
տանը։ Նրա տնտեսական և հատկապես արդյունաբերական զարգացումը ետ
էր մնացել կապիտալիզմի առաջավոր երկրներից։ Չնայած խոշոր արդյունա-
բերության և բանկային կապիտալի բարձր աստիճանի հասած կենտրոնացման
ու մոնոպոլացման, ծանր արդյունաբերության ճյուղերը, թեթև արդյունաբե-
րության համեմատությամբ, Ռուսաստանում թույլ էին զարգացած։ Օրինակ,
1913 թվականին արդյունաբերության համախառն արտադրանքի մեջ արտա-
դրության միջոցների արտադրությունը կազմում էր ընդամենը 33,3 տոկոս,
իսկ սպառման առարկաների արտադրությունը՝ 66,7 տոկոս։ Մինչդեռ Ռու-
սաստանի մետալուրգիան, նավթի հանույթը համեմատաբար առաջ էին անցել,
արտադրության այլ կարևոր ճյուղեր, ինչպիսիք էին էլեկտրաէներգետիկան,
քիմիան և մանավանդ մեքենաշինությունը, ընդհակառակը, զարգացման խիստ
ցածր աստիճանի վրա էին գտնվում։ Բավական է ասել, որ մեքենաշինության
տեսակարար կշիռը ցարական Ռուսաստանի արդյունաբերական ողջ արտա-
դրանքի մեջ 1913 թվականին կազմում էր միայն 6 տոկոս։ Այն ժամանակ
երկրի մեքենաների պահանջի ավելի քան կեսը բավարարվում էր ներմուծման
միջոցով։ Հենց այդ հանգամանքն էլ բնորոշում էր ցարական Ռուսաստանի

տեխնիկա-տնտեսական տեսակետից կախյալ վիճակը առաջավոր կապիտալիստական պետություններից:

Խոսելով տնտեսական անհամաչափ զարգացման մասին, ավելորդ չէ հիշատակել նաև պատմականորեն ստեղծված այն մեծ խզումը, որ առկա էր մի կողմից Ռուսաստանի ճորտատիրական վերապրուկներով կաշկանդված հետամնաց գյուղատնտեսության, մյուս կողմից իմպերիալիզմի փուլը թևակոխած արդյունաբերության միջև:

Սակայն տնտեսական զարգացման անհամաչափությունը չէր սպառվում Ռուսաստանի նյութական արտադրության վերոհիշյալ կարևոր ճյուղերի անբարենպաստ հարաբերակցությամբ: Անհամաչափությունն արտահայտվում էր նաև արտադրողական ուժերի ո՛չ ռացիոնալ, այլանդակ տեղաբաշխման մեջ: Ցարական Ռուսաստանի արդյունաբերության մոտավորապես կեսը 1912 թվականի տվյալներով գտնվում էր Կենտրոնական-արդյունաբերական և Հյուսիս-արևմտյան շրջաններում: Արդյունաբերական արտադրանքի տեսակետից չնչին տեղ էին գրավում Ուրալը (4,4%), Սիբիրը (2,2%), Միջին Ասիական ազգային շրջանները (1,7%) և Անդրկովկասը (6,4%), այն էլ գերազանցապես նավթի, մարգանեցի հանույթ և պղնձարդյունաբերություն: Կենտրոնական արդյունաբերական շրջաններում և Պետերբուրգում էր կուտակված Ռուսաստանի վերամշակող արդյունաբերության հիմնական մասը: Երկրի կենտրոնում տեղադրված վերամշակող արդյունաբերությունը կտրված էր հումքի ակունքներից և պատրաստի արտադրանքի սպառման հիմնական շուկաներից: Իսկ արդյունաբերության հումքը հայթայթող վայրերում, կենտրոնից հարյուրավոր և հազարավոր կիլոմետր հեռավորության վրա, արդյունաբերությունը, այդ թվում և վերամշակող արդյունաբերությունը, հաճախ սաղմնային վիճակում էր գտնվում, շատ դեպքերում էլ իսպառ բացակայում էր:

Այսպիսով, Ռուսաստանի պայմաններում տնտեսական զարգացման ոլորտը չէին ներգրավվում, կամ թույլ ու միակողմանի էին ներգրավվում երկրի ազգային շրջանների և ծայրամասերի հարուստ բնական ու աշխատանքային ռեսուրսները: Ցարական Ռուսաստանի տնտեսական հետամնացության պատճառների մեջ այս հանգամանքը վերջին տեղը չէր գրավում:

Նախասովետական Հայաստանը, որ ցարական Ռուսաստանի կազմի մեջ էր գտնվում, չէր կարող զերծ լինել երկրի տնտեսական զարգացման այս առանձնահատկություններից: Այս առանձնահատկությունները խտացած ձևով իրենց արտահայտությունը գտնում էին Ռուսաստանի էկոնոմիկայի ագրարային բնույթի մեջ: Հայաստանը այն ժամանակ առավելապես ագրարային երկիր էր՝ թույլ զարգացած արդյունաբերությամբ: Հայաստանի արդյունաբերական արտադրանքը 1913 թվականին կազմում էր արդյունաբերության և գյուղատնտեսության ողջ արտադրանքի միայն երկու հինգերորդ մասը: Ավելին, Հայաստանի էկոնոմիկան իր վրա կրում էր գաղութային տնտեսության կնիքը: Դա արտահայտվում էր նրանով, որ վերամշակող արդյունաբերությունը գրեթե ամբողջովին բացակայում էր, իսկ արդյունաբերության ճյուղային կառուցվածքը աղքատ էր: Այսպես, 1913 թվականին Հայաստանի խոշոր արդյունաբերությունն ընդգրկում էր արտադրության միայն 6 ճյուղ, ընդ որում այդ ճյուղերի տնտեսական կշիռն առանձին-առանձին վերցրած խիստ տարբեր էր: Եթե Հայաստանի 1913 թվականի խոշոր արդյունաբերության ամբողջ արտադրանքն ընդունենք 100 տոկոս, ապա դրա մեջ պղնձաքարի հանույթը և նրա



մետաղաձուլական մշակությունը (սև պղնձի ստացում) կկազմի 59,2 տոկոս, գինու-կոնյակի և սննդամթերքի արտադրությունը՝ 30,3 տոկոս, կաշվի վերամշակությունը և կոշիկի արտադրությունը՝ 5,8 տոկոս, մետաղամշակությունը՝ 2,6 տոկոս, անտառարդյունահանությունը՝ 1,9 և վերջապես, էլեկտրական էներգիայի արտադրությունը՝ 0,2 տոկոս:

Այսպիսով, նախասովետական Հայաստանի արդյունաբերության մեջ միայն պղնձի ու գինու-կոնյակի արդյունաբերական ճյուղերն էին քիչ թե շատ աչքի ընկնում: Նրանք տալիս էին արդյունաբերական արտադրանքի ամենախոշոր մասը (84,5 տոկոս):

Մեքենաշինության բացակայության հետևանքով պղնձի հանույթը տեղում չէր օգտագործվում, մանավանդ, որ այդ պղինձը իրենից ավարտված արտադրանք չէր ներկայացնում: Լրացուցիչ վերամշակման և այնուհետև օգտագործման համար պղինձն ամբողջությամբ փոխադրվում էր երկրի կենտրոնական շրջանները: Գրեթե ամբողջությամբ արտահանվում էր նաև գինու-կոնյակի արտադրանքը:

Թեև նախասովետական Հայաստանի գյուղատնտեսությունը որոշ չափով բամբակ ու բուրդ էր արտադրում, սակայն տեքստիլ արդյունաբերություն, որպես այդպիսին, տեղում գոյություն չուներ: Կտորեղենի տնայնագործական արտադրությունը չէր կարող բավարարել ազգաբնակչության պահանջը: Տեքստիլ գործվածքները Հայաստան էին ներմուծվում Ռուսաստանի կենտրոններից: Հակառակ ընթացքով որպես հումք, այդ նույն շրջաններն էին ուղարկվում բամբակն ու բուրդը:

Պղնձի հանույթն ու նախնական վերամշակումը կենտրոնացած էր Ալավերդում և Զանգեզուրում, գինու և կոնյակի արտադրությունը՝ Երևանում և Արտաշատում: Բացի դրանից, Երևանում գործում էին փոքրիկ մեխանիկական արհեստանոցներ և կաշվի գործարանը՝ տարեկան 150 հազար մանր մորթիների (երեսացու) վերամշակությամբ: Երևանում և Մեղրիում կային պրիմիտիվ ձեռնարկություններ, որոնք տարեկան մոտ մեկ միլիոն պայմանական տուփ մրգի պահածոներ էին արտադրում: Ալեքսանդրոպոլում երկաթուղուն կից գործում էին շոգեքարշերի վերանորոգման արհեստանոցներ:

Եթե չհաշվենք երկրի տարբեր շրջաններում տարածված տնայնագործական տիպի մանր արհեստանոցները, ապա թված ձեռնարկություններով սպառվում է նախասովետական Հայաստանի արդյունաբերությունը:

Թույլ էր նախասովետական Հայաստանի տնտեսության էներգետիկ բազան: Չնայած հանածո վառելանյութի բացակայությանը, որ հրամայաբար պահանջում էր եղած հիդրոէներգետիկ հնարավորությունների լայն օգտագործում, 1913 թվականին գործում էին միայն 10 փոքրիկ էլեկտրակայան՝ 3100 կիլովատ ընդհանուր կարողությամբ, այսինքն ավելի պակաս, քան դեռ 1926 թվականին կառուցած Երևանի առաջին հիդրոէլեկտրակայանի կարողությունն էր: Արտադրվող էլեկտրաէներգիայի ավելի քան իննսուն տոկոսը սպառվում էր պղնձի, գինու-կոնյակի ձեռնարկություններում: Արտադրության մյուս ճյուղերը, մանավանդ գյուղատնտեսությունը, ամբողջապես զուրկ էին էլեկտրաէներգիայից: Կենցաղը որևէ չափով էլեկտրիֆիկացված չէր, եթե հաշվի չառնենք Երևանի մի քանի կենտրոնական փողոցների աղոտ լուսավորումը:

Ցածր էր Հայաստանի արդյունաբերության տեխնիկական մակարդակը: Նույնիսկ այնպիսի ճյուղերում, ինչպիսիք էին պղնձարդյունաբերությունը և

գինեգործությունը, ուր տիրապետում էր ֆրանսիական և ռուսական մոնոպոլիստական կապիտալը, արտադրության տեխնիկան, մանավանդ լեռնահանքային աշխատանքներում, չափազանց պրիմիտիվ էր։

Հայաստանի տնտեսությունն է՛լ ավելի մեծ անկում ապրեց դաշնակների տխրահռչակ տիրապետության տարիներին։

Տնտեսական կյանքի քայքայումն այդ ժամանակաշրջանում առանձնապես ցայտուն կերպով դրսևորվում էր արդյունաբերության բնագավառում։ 1919 թվականին Հայաստանի արդյունաբերության արտադրանքը 1913 թվականի համեմատությամբ կրճատվել էր 12 անգամ։ Պղնձահանքերն ու ձուլարանները բոլորովին դադարել էին գործելուց։ Անգործության մատնված հանքերը լցվել էին ջրով, եղած գույքը փչանում և դաշնակցական պարագլուխների ողորմածությամբ հափշտակվում էր աջ ու ձախ։

Այսպիսով, արտադրական այն համեստ բազան, որ պատմականորեն պիտի ժառանգեր Սովետական իշխանությունը հին հասարակարգից, դաշնակների օրոք ծայր աստիճանի անկման էր հասել։ Այդ անկումը այնքան խորն էր, որ երբ 1920 թվականի նոյեմբերի 29-ին Հայաստանում հաստատվեցին սովետական կարգեր, տնտեսական կյանքի վերակենդանացումն առանց Սովետական Ռուսաստանի և Ադրբեջանի եղբայրական օգնության անհնարին դարձավ։ 1920 թվականի վերջերին ՌՍՖՍՌ կառավարությունը Վ. Ի. Լենինի գլխավորությամբ որոշում է ընդունում Սովետական Հայաստանին 3 միլիարդ ռուբլու չափով վարկ տալու մասին (600 հազար ռուբլի ոսկով)։ Սովետական Ռուսաստանը Հայաստան ուղարկեց մեծ քանակությամբ արդյունաբերական ապրանքներ, սարքավորում, պարենամթերք, իսկ Ադրբեջանը՝ նավթամթերքներ։

Սովետական կարգերի հաստատումը արմատական հեղաշրջում մտցրեց Հայաստանի տնտեսական, քաղաքական և հոգևոր կյանքի բոլոր բնագավառներում։ Ազգայնացված արտադրական ձեռնարկություններում, շնորհիվ արտադրության միջոցների հանրայնացման, ծնունդ առան սոցիալիստական տիպի արտադրահարաբերություններ, որոնք հետագա տարիների ընթացքում տիրապետող հանդիսացան ինչպես ողջ արդյունաբերության մեջ, այնպես էլ նյութական արտադրության ու բաշխման մյուս բոլոր բնագավառներում։ Սակայն սկզբնական շրջանում սոցիալիզմի և սոցիալիստական արտադրահարաբերությունների նյութական բազան դեռ թույլ էր։ Այդպիսին, ինչպես ուսուցանել է Վ. Ի. Լենինը, կարող է լինել միայն ժամանակակից խոշոր արդյունաբերությունը, որն ընդունակ է վերակառուցելու նաև գյուղատնտեսությունը։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակը նախկին կայսրության կենտրոնական շրջաններում ու ծայրամասերում իշխանության գլուխ դնելով բանվոր դասակարգին, որը դաշնակցած էր աշխատավոր գյուղացիության հետ, սոցիալիզմի նյութական բազայի կառուցման համար ամենաբարենպաստ քաղաքական նախադրյալներ ստեղծեց։ Սոցիալիստական ռևոլյուցիան աշխատավորական լայն մասսաների մեջ բորբոքեց ստեղծագործ, ինքնուրույն աշխատանքի չտեսնված խանդավառություն։ Ազատագրվելով կալվածատերերի ու կապիտալիստների անարգ լծից՝ պատմության մեջ առաջին անգամ աշխատավոր մարդիկ, ինչպես ասել է Վ. Ի. Լենինը, աշխատում էին իրենց համար, իրենց հարազատ բանվորա-գյուղացիական իշխանության համար։ Է՛լ ավելի խանդավառությամբ էր համակված հայ աշխատավորը,



որի համար Հոկտեմբերյան ռևոլյուցիան և սովետական կարգերի հաստատումը նշանակում էր ոչ միայն սոցիալական, այլև ազգային ազատագրում։

Ինչպես Սովետական Ռուսաստանում, այնպես էլ Հայաստանում սոցիալիստական շինարարության առաջին քայլերն սկսվեցին երկրի ավերված տնտեսության վերականգնումից։

Անհրաժեշտ էր նախ և առաջ վերականգնել երկրի քայքայված գյուղատնտեսությունը։ Առանց այդ պայմանի վերամշակող արդյունաբերությունը, որ կապված էր գյուղատնտեսական հումքի օգտագործման հետ, չէր կարող վերսկսել իր աշխատանքը։ Այսպես, Երևանի նախկին Շուստովի գինու-կոնյակի գործարանը, որը համեմատաբար պակաս ավերման էր ենթարկվել, Սովետական իշխանության հաստատման առաջին տարիներին խաղողագործության ծայր աստիճան անկման ու հումքի պակասության պատճառով չէր կարողանում լրիվ կարողությամբ աշխատել։

Ահա թե ինչու վերականգնման շրջանում արդյունաբերության գծով ձեռնարկված միջոցառումները վերջին հաշվով հետապնդում էին գյուղատնտեսության բարձրացման խնդիրները։ Ընդ որում նոր շինարարության համեմատաբար բարձր տեսակարար կշիռը կազմում էր Հայաստանի վերականգնման շրջանի առանձնահատկություններից մեկը։

Այսպես, վերականգնման տարիներին Հրազդան գետի վրա Երևանում կառուցվեց առաջին խոշոր հիդրոէլեկտրակայանը, որը բացի մայրաքաղաքի արդյունաբերության մատակարարումից խնդիր ուներ նաև էլեկտրաէներգիայով ապահովել նույն ժամանակաշրջանում կառուցված Այգր լճի պոմպակայանը և նրա հիման վրա ստեղծված ոռոգման սիստեմը։ Զուգակցելով արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացման խնդիրները՝ նույն տարիներին Լենինականում կառուցվեց Շիրակի ջրանցքը և նրա ջրվեժների վրա գործող հիդրոէլեկտրակայանը։

Գյուղատնտեսության վերականգնման ասպարեզում 1923—1925 թվականներին ձեռք բերված հաջողությունները պահանջեցին արագացնել վերամշակող արդյունաբերության զարգացումը։ Արդեն 1923 թվականին Երևանում ստեղծվեց առաջին բամբակազտիչ գործարանը, իսկ 1925 թվականին կառուցվեց նաև Սարդարաբադի ավելի մեծ բամբակազտիչ գործարանը։ 1923 թ. սկզբին Իվանովո-Վոզնեսենսկի բանվորների նվիրաբերած սարքավորման հիման վրա Լենինականում հիմք դրվեց տեքստիլ արդյունաբերության։

1924—1925 թվականներին գինու-կոնյակի գործարանները նույնպես ապահովվեցին հումքով և լրիվ չափով վերսկսեցին իրենց աշխատանքը։ Լրիվ վերականգնվեցին նաև Երևանի մեխանիկական արհեստանոցները։

Վերականգնման ժամանակաշրջանի վերջում արդյունաբերության բոլոր ճյուղերի գծով, բացառյալ գունավոր մետալուրգիան և կոնյակի արտադրությունը, Հայաստանը հասել և գերազանցել էր 1913 թվականի մակարդակը։ Եթե նոր տնտեսական քաղաքականության առաջին տարիների ընթացքում արդյունաբերական արտադրանքի մեջ դեռ զգալի տեղ էր գրավում մասնավոր-կապիտալիստական սեկտորի արտադրանքը, ապա վերականգնման ժամանակաշրջանի վերջում մասնավոր-կապիտալիստական սեկտորն արդյունաբերության մեջ արդեն էական դեր չէր խաղում. սոցիալիստական ձեռնարկությունները տալիս էին արդյունաբերական արտադրանքի բացարձակապես գերակշռող մասը։

Սոցիալիստական Հայաստանի արդյունաբերությունը բուռն կերպով զարգացավ մինչպատերազմյան հնգամյակների ընթացքում։ Կոմունիստական պարտիայի լենինյան ազգային քաղաքականության հետևողական ու անշեղ կենսագործման շնորհիվ, որի նպատակն է տարբեր ազգությունների և ժողովուրդների քաղաքական իրավահավասարությունն ամրապնդել նրանց տնտեսական հետամնացության հաղթահարման միջոցով, էլ ավելի ուժեղ թափ հաղորդվեց Հայաստանի արդյունաբերության զարգացմանը։ Այդ նպատակով Հայաստանում չտեսնված մասշտաբով արդյունաբերական շինարարություն ծավալվեց։ Կապիտալ շինարարության արագ աճման մասին կարելի է գաղափար կազմել ներքոհիշյալ տվյալներից.

Կապիտալ ներդրումներ Հայկական ՍՍՌ արդյունաբերության մեջ

| Ժամանակաշրջանը | Աճը տոկոսներով նախորդ շրջանի համեմատությամբ |
|---|---|
| 1920 թ. մինչև 1928 թ. | 100 |
| Առաջին հնգամյակի ընթացքում | 435 |
| Երկրորդ հնգամյակի ընթացքում | 327 |
| Երրորդ հնգամյակի երեք տարիների ընթացքում | 84 |

Կոմունիստական պարտիայի կողմից անցկացվող երկրի ինդուստրացման քաղաքականության առանձնահատկությունը Հայաստանում արտահայտվեց նրանով, որ մեծ թափ ստացավ հիդրոէլեկտրաշինարարությունը։ Այսպես, առաջին և երկրորդ հնգամյակների ընթացքում արդյունաբերական շինարարության գծով կատարած կապիտալ ներդրումների մի երրորդ մասը գործադրվել է ռեսպուբլիկայի էներգետիկ բազայի ստեղծման համար։ Առաջին հնգամյակում կառուցվեց և 1932 թ. գործարկվեց Ձորագէսի հիդրոէլեկտրակայանը՝ 22 հազար կիլովատ կարողությամբ։ Այդ նույն տարին գործարկվեց ՍՍՌՄ առաջին ավտոմատիկ հիդրոէլեկտրակայանը Երևանում (№ 2)։

Դեռ առաջին հնգամյակի տարիներին ուսումնասիրվեցին Սևան—Հրազդան էներգետիկ սիստեմի ստեղծման հնարավորությունները։ Քանաքեռի հզոր հիդրոէլեկտրակայանի կառուցումը և գործարկումը 1936 թվականին այդ սիստեմի իրականացման սկիզբը դրեց։

Լայն մասշտաբներով սկսված հիդրոէլեկտրաշինարարությունը հնարավորություն տվեց մեծ չափերով ընդլայնելու Հայաստանի ժողովրդական տնտեսության և առաջին հերթին արդյունաբերության էներգետիկ բազան։ Էլեկտրաէներգիայի արտադրությունը 1940 թ. հասավ մինչև 395,3 միլիոն կիլովատ-ժամի։

Մինչպատերազմյան շրջանում էներգետիկ կարողությունները և էլեկտրաէներգիայի արտադրությունը գերազանցում էին արդյունաբերության զարգացման տեմպերը։ Արտադրվող էլեկտրաէներգիան կլանելու և նպատակահարմար կերպով օգտագործելու նպատակով կառուցվեցին մի շարք էներգատար ձեռնարկություններ։

Նրանցից ամենաանդրանիկը 1927 թվականին Երևանում ստեղծված կարբիդի գործարանն էր, որ կարբիդագործության սկիզբը դրեց մեր ռեսպուբլիկայում։ 1927—1928 թվականներին ձեռնարկվում է Կիրովականի քիմիական գործարանի շինարարությունը, որն ավարտվեց երկրորդ հնգամյակի



սկզբին։ 1932 թվականին Երևանում սկսվում է Կիրովի անվան խոշոր քիմիական կոմբինատի կառուցումը, որն ավարտվեց 1940 թվականին։ Դա Սովետական Միության մեջ առաջին ձեռնարկությունն էր, որտեղ սինթետիկ կաուչուկն ստացվում է անօրգանական հումքից։ Այսպիսով, Երևանի Կիրովի անվան գործարանը և Կիրովականի քիմիական կոմբինատը Հայաստանի արդյունաբերության զարգացման մեջ նոր ուղղություն բաց արին։

Նախապատերազմյան հնգամյակների ընթացքում գունավոր մետալուրգիայի ձեռնարկությունները, պղնձահանքերը և Ալավերդու պղնձաձուլական գործարանը արմատապես վերակառուցվեցին։ 1940 թ. պղնձի հանույթը և մետաղաձուլությունը 1927 թ. համեմատությամբ աճեց մոտ հինգ անգամ։

Մինչպատերազմյան տարիներին շինարարության հսկայական ծավալման շնորհիվ Հայաստանում ստեղծվեց արդյունաբերության մի նոր ճյուղ։ Դա շինանյութերի արդյունաբերությունն էր։ Խոշոր մասշտաբով սկսվեց Արթիկ-տուֆի և Անի-պեմզայի հարուստ հանքավայրերի օգտագործումը։ Արարատ կայարանում կառուցվեց ցեմենտի մեծ գործարան։ Բուռն կերպով աճեց բնական շինանյութերի՝ տուֆի, բազալտի, պեմզայի, մարմարի, գրանիտի հանույթը։ Շինանյութերի արդյունաբերական արտադրությունը միայն առաջին հնգամյակի ընթացքում աճեց մի քանի տասնյակ անգամ, իսկ 1940 թ. համախառն արտահայտությամբ, շինանյութերի արտադրությունը 1932 թվականի արդեն աճած մակարդակի համեմատությամբ ավելացավ 2,3 անգամ։

Թեև մինչպատերազմյան հնգամյակների ընթացքում Հայաստանում ծագեցին ծանր արդյունաբերության այնպիսի կարևոր ճյուղեր, ինչպիսիք քիմիական ու շինանյութերի արդյունաբերությունն էր, ու չտեսնված չափերով զարգացան էներգետիկան ու գունավոր մետալուրգիան, այնուամենայնիվ այդ շրջանի համար մեր ռեսպուբլիկայում բնորոշ էր թեթև և սննդի արդյունաբերության առավել արագ աճը։ Այսպես, եթե խոշոր արդյունաբերության համախառն արտադրանքը 1940 թվականին 1913 թվականի հետ համեմատած ընդհանուր առմամբ ավելացավ 23 անգամ, ապա այդ թվում թեթև ու սննդի արդյունաբերության արտադրանքը աճեց 42 անգամ։ Դա արդյունք էր սոցիալիստական գյուղատնտեսության մեջ դեռ երեսնական թվականներին կոլտնտեսությունների ու սովետական տնտեսությունների հաղթանակի։ Գյուղի սոցիալիստական վերակառուցումը բարձրացրեց գյուղատնտեսական արտադրանքի ապրանքայնությունը։ Դա իր հերթին վերամշակող արդյունաբերության ծավալման խթան հանդիսացավ։

Հայաստանում կառուցվեցին և գործարկվեցին տասնյակ նոր, բարձր տեխնիկայով հագեցած սննդի ու թեթև արդյունաբերության ձեռնարկություններ։ Այսպես՝ Լենինականում հիմնվեց խոշոր տեքստիլ կոմբինատը, գուլպատրիկոտաժի գործարանը, մեծ կարողությամբ մսի կոմբինատը, կոշիկի և կարի ֆաբրիկաները և այլն։ Երևանում գործարկվեցին ձեթ-օճառ կոմբինատը, կոնսերվի, հրուշակեղենի, մի քանի հացի գործարաններ, մետաքսի գործարանը, կարի և կոշիկի ֆաբրիկաները, կահույքի գործարանները և այլն։ Կիրովականում կառուցվեց մուշտակի ֆաբրիկան։ Ռեսպուբլիկայի գրեթե բոլոր շրջանային կենտրոններում հիմնվեցին սննդի և սպառման այլ առարկաների արտադրության օբյեկտներ։ Ծավալվեց «Արարատ» գինու-կոնյակի տրեստի ձեռնարկությունների թիվը Երևանում և ռեսպուբլիկայի խաղողագործական շրջաններում։

Այսպիսով, ի տարբերություն նախառևոլյուցիոն շրջանի, մինչպատերազմյան հնգամյակների ընթացքում Հայաստանում ստեղծվեց թեթև ու սննդի արդյունաբերության մի ամբողջ կոմպլեքս, հիմնված գյուղատնտեսական հումքի արդյունաբերական վերամշակման վրա։ Դա հնարավորություն տվեց սպառման առարկաների հսկայական մասը, որ անցյալում դրսից էր ներմուծվում, տեղում արտադրել։ Այդ հանգամանքը չափազանց մեծ դեր խաղաց Հայրենական պատերազմի տարիներին, երբ ապրանքափոխանակությունը Միության այլ տնտեսական շրջանների հետ պատերազմական գործողությունների պատճառով չափազանց դժվարացել էր։

Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիայի մեծագույն նվաճումներից մեկն այն է, որ նա նախադրյալներ ստեղծելով արտադրության սոցիալիստական եղանակի հաղթանակի համար, դրանով իսկ ապահովեց արտադրողական ուժերի առավել բազմակողմանի ու ներդաշնակ զարգացումը Սովետական Միության մեջ մտնող բոլոր ռեսպուբլիկաներում։ Դրա շնորհիվ վերացավ ցարիզմին բնորոշ երկրի կենտրոնական շրջանների և այսպես կոչված՝ ծայրամասերի հակադրությունը։

Հայրենական պատերազմի նախօրեին Սովետական Հայաստանը, ինչպես Անդրկովկասի մյուս եղբայրական ռեսպուբլիկաները՝ Ադրբեջանն ու Վրաստանը, ուներին զարգացած, բազմաճյուղ արդյունաբերություն։

Չնայած պատերազմի հետևանքով ծագած մեծ դժվարություններին, այդ արդյունաբերությունը վճռական դեր խաղաց հատկապես 1942—1943 թվականներին Անդրկովկասի ակտիվ պաշտպանության գործում։ Հայաստանի արդյունաբերությունը պատերազմի տարիներին Սովետական Բանակի համար արտադրում էր հանդերձանք, կոշկեղեն, սննդամթերք, սպառազինության որոշ միջոցներ, արժեքավոր գունավոր մետաղներ ու քիմիկատներ՝ ռազմական տեխնիկայի արտադրության, ինչպես նաև զենքի վերանորոգման համար և այլն։

Արտադրության սոցիալիստական սիստեմի մեծագույն առավելությունների շնորհիվ ինչպես Սովետական Միության մյուս չօկուպացված շրջաններում, այնպես էլ Հայաստանում, պատերազմը հիտլերյան Գերմանիայի դեմ՝ չկարողացավ խափանել երկրի տնտեսական կյանքը։ Հայաստանի արդյունաբերության արտադրանքը 1941 թ., երբ դեռ նոր էր սկսել պատերազմը, նախորդ 1940 թ. համեմատությամբ նույնիսկ 10 տոկոսով աճեց։ Դրանում արտահայտվեց ռեսպուբլիկայի բանվոր դասակարգի հայրենասիրությունը՝ արտադրական պլանների կատարման և գերակատարման միջոցով օգնել քաջարի Սովետական Բանակին, որ ծանր մարտեր էր մղում հարձակվող թշնամու դեմ։

Սակայն հաջորդ 1942 և 1943 թվականներին, որակյալ աշխատուժի բանակ զորակոչվելու և արտադրության նյութա-տեխնիկական մատակարարման դժվարացման հետևանքով, արդյունաբերական արտադրանքը կրճատվեց, բայց այն 1940 թվականի համեմատությամբ 81 տոկոսից ցած չիջավ։ Ավելին, արտադրության որոշ ճյուղերում, այդ թվում այն ձեռնարկություններում, որոնք անմիջապես սպասարկում էին բանակը, արտադրանքի հատուկ տեսակների թողարկումը ոչ միայն չկրճատվեց, այլև զգալի չափով ավելացավ։ Սա հատկապես վերաբերում է քիմիական, մետաղամշակման ձեռնարկություններին և Լենինականի տեքստիլ կոմբինատին։

Ռեսպուբլիկայի արդյունաբերության ընդլայնված վերարտադրության մասին են վկայում նաև այն զգալի կապիտալ ներդրումները, որոնք պատերազմի



ամենաթեժ տարիներին կատարվում էին արտադրական նոր ճյուղեր ստեղծելու, եղած ձեռնարկությունները տեխնիկապես վերակառուցելու և ընդլայնելու ուղղությամբ։ Այսպես, 1941—1945 թվականների ընթացքում ռեսպուբլիկայում ներդրած 925 միլիոն ռուբլուց 492 միլիոն ռուբլին, կամ միջոցների 53 տոկոսը, հատկացվել է արդյունաբերական շինարարության նպատակներին։

Պատերազմի տարիներին, 1943—1944 թվականներին վերսկսվեց Քաջարանի կոմբինատի, Քանաքեռի ալյումինի, Ալավերդու ծծմբաթթվի, Երևանի էլեկտրամեքենաշինական և ավտոդողերի գործարանների, ինչպես նաև Սևանի ստորերկրյա հիդրոէլեկտրակայանի ու ջրաթող սարքի շինարարությունը։ Այդ ժամանակաշրջանում սկսվեց Ալավերդու պղնձաձուլական գործարանին կից պղնձի էլեկտրոլիզի և վայերբարսների արտադրության ցեխի կառուցումը։

Դեռ պատերազմը չավարտված, 1944 թվականից ռեսպուբլիկայի արդյունաբերությունը նորից սկսեց առաջ ընթանալ, և 1946 թվականի արտադրանքի թողարկման ծավալը 6 տոկոսով գերազանցեց մինչպատերազմյան 1940 թվականի մակարդակը։

Պատերազմի հաղթական ավարտումից հետո երկրի ավերված ժողովրդական տնտեսության արագ վերականգնումը կրկին անգամ հաստատեց Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիայի ծնունդ սովետական հասարակարգի կենսունակությունը, նրա մեծագույն առավելությունները կապիտալիզմի նկատմամբ։ Այդ առավելություններով պայմանավորվեց արդյունաբերության նոր վերելքը, որ համակեց ողջ Սովետական Միությունը։

Հետպատերազմյան շրջանում ծավալվեցին Հայկական ՍՍՌ արդյունաբերության զարգացման թե՛ մասշտաբները և թե՛ տեմպերը։ Դա ձեռք բերվեց նոր, զգալի կապիտալ ներդրումների միջոցով։ Այսպես, չորրորդ և հինգերորդ հնգամյակների ընթացքում արդյունաբերության զարգացման նպատակներին հատկացվող միջին տարեկան կապիտալ ներդրումների ծավալը ավելի քան երկու անգամ գերազանցեց ռեսպուբլիկայի արդյունաբերության մեջ առաջին հնգամյակում կատարած ողջ կապիտալ ներդրումները։ Հետպատերազմյան շրջանում արդյունաբերական շինարարության նպատակին հատկացված տարեկան ներդրումներն իրենց ծավալով գրեթե հավասար են եղել երկրորդ հնգամյակի երեք տարիների ներդրումների գումարին։ Կարևոր է նշել, որ հետպատերազմյան տարիներին Հայաստանի ժողովրդական տնտեսության մեջ կատարվող կապիտալ ներդրումների 56 տոկոսն ուղղվել է արդյունաբերության շինարարության նպատակին, մինչդեռ նախորդ հնգամյակներում այդ ներդրումների տեսակարար կշիռը համեմատաբար ավելի պակաս է եղել։

Չորրորդ և մանավանդ հինգերորդ հնգամյակներում մեծ թափ ստացավ Սևան—Հրազդան կասկադի հիդրոէլեկտրակայանների կառուցումը։ 1949 թվականին ավարտվեց Սևանի ստորերկրյա կայանի, իսկ 1953 թվականին՝ Գյումուշի խոշորագույն կայանի կառուցումը և գործարկումը։ Անցյալ տարի գործարկվեց Արզնիի նույնպես ժայռի մեջ կառուցված էլեկտրակայանը։ Այդ կայանների գործարկումը զգալի չափով մեղմացրեց էլեկտրաէներգիայի այն սուր պակասը, որ նշմարվել էր դեռ պատերազմի տարիներին։ Մյուս կողմից, բարձրացավ Սևանա ջրի էներգետիկ օգտագործման գործակիցը, որ մինչ այդ չափազանց ցածր էր։

Շնորհիվ էլեկտրակայանների գործարկման, 1956 թ. Հայկական ՍՍՌ-ում էլեկտրաէներգիայի արտադրությունն ավելացավ և կազմեց 2304,2 միլիոն կի-

լովատ ժամ։ 1940 թ. համեմատությամբ էլեկտրաէներգիայի արտադրությունն աճեց մոտ վեց անգամ։

Մեկ միլիոն վեց հարյուր հազար ազգաբնակչություն ունեցող Սովետական Հայաստանում այժմ երկու անգամ ավելի էլեկտրաէներգիա է արտադրվում, քան 24 միլիոն բնակիչ ունեցող Թուրքիայում։

Էլեկտրաէներգիայի արտադրության աճի հիման վրա հետպատերազմյան տարիներին ավելի քան վեց անգամ ավելացավ ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերության արտադրանքի թողարկումը։ Այդ տարիներին Կիրովականում կազմակերպվեց ազոտային, իսկ Ալավերդում՝ ֆոսֆորային պարարտանյութերի արտադրությունը։ Կառուցվեցին և գործարկվեցին Երևանի պոլիվինիլացետատ և Ալավերդու ծծմբաթթվի գործարանները։ Ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերության կողմից այժմ արտադրվող նյութերի ցանկը մի քանի տասնյակ է կազմում, որոնցից կարևոր է նշել սինթետիկ կաուչուկը, կաուստիկ սոդան, աղաթթուն, ծծմբաթթուն, քացախաթթուն, ազոտային և ֆոսֆորային պարարտանյութեր, մոնոխրոմատ, վինիլացետատ, պոլիվինիլքլորերալ և այլն։

Արժանի է հատուկ նշել Երևանի ավտոդողերի գործարանի կառուցումը։ Այդ գործարանը կարճ ժամանակամիջոցում դարձավ Սովետական Միության այդ կարգի առաջավոր ցուցանիշներ ունեցող գործարաններից մեկը։ Նրա արտադրանքը տարածման մեծ շառավիղ ունի, որ ընդգրկում է Կովկասը և Միության հարավային այլ շրջաններ։

Նույնպիսի արագ տեմպերով աճեց մեր ռեսպուբլիկայի գունավոր մետալուրգիան։ Նրա արտադրանքը 1940—1955 թվականների ընթացքում 5,5 անգամ ավելացավ։ Հայաստանի հարավում գործարկվեցին Քաջարանի և Դաստակերտի կոմբինատները։ Սկսվեց Ախթալայի պոլիմետաղի հանքերի արդյունաբերական շահագործումը։ Չորրորդ հնգամյակի վերջում շահագործման հանձնվեց Քանաքեռի ալյումինի գործարանը։

Պղնձի, ալյումինի և մոլիբդենի արտադրության գծով Հայաստանը հետպատերազմյան շրջանում դարձավ Սովետական Միության կարևոր կենտրոններից մեկը։

Հայաստանի արդյունաբերության հետպատերազմյան տարիների զարգացման ամենախոշոր առանձնահատկությունը դա մեքենաշինության շեշտակի վերելքն է։ Մեքենաշինության արտադրանքը 1940—1956 թվականների ընթացքում աճել է 68 անգամ։ Չորրորդ և հինգերորդ հնգամյակներում ավարտվեց և գործարկվեց էլեկտրամեքենաշինական խոշոր ձեռնարկությունը՝ Հայէլեկտրագործարանը։ Ընդլայնվեց Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանը։ Կազմակերպվեցին նոր կոմպրեսորների, հիդրոտուրբինների, ավտոպահեստային մասերի, էլեկտրատեխնիկական առարկաների, ճշգրիտ էլեկտրագործիքների, էլեկտրաապարատների, էլեկտրաարմատուրաների, կաբելի, հեծանիվի, քարհատ հաստոցների, էլեկտրալամպերի, շաղափող հաստոցների գործարաններ և մի շարք այլ մետաղամշակման ձեռնարկություններ։

Մեքենաշինության ծավալումը, որ աչքի է ընկնում արտադրության կուլտուրայով և համեմատաբար մեծ քանակությամբ բարձր որակավորում ունեցող բանվորներ և ինժեներա-տեխնիկական աշխատողներ է ընդգրկում, որակական խոշոր բեկում է մտցնում Հայկական ՍՍՌ-ի արդյունաբերության զարգացման մեջ։ Այդ բեկումը էլ ավելի նշանակալից կլինի, եթե մեքենաշինությունը առավել չափերով հենվի ռեսպուբլիկայի արտադրած գունավոր մետաղների օգտագործման վրա։ Այդ առումով պղնձի և ալյումինի արդեն կազմակերպված գլանումը մեր ռեսպուբլիկայում կստեղծի մի չափազանց արժեքավոր արտադրական կոմպլեքս։ Դրա շնորհիվ կվերանան մինչև հիմա շարունակվող գունավոր մետաղների հանդիպակաց ու ոչ ռացիոնալ բեռնափոխադրումները։



Մեքենաշինությունն այժմ արտադրության այն ամենակարևոր ճյուղերից մեկն է, որ առաջիկայում կարող է էական չափերով նոր աշխատուժ ներգրավել արդյունաբերության մեջ։ Այդ հանգամանքը մեր ռեսպուբլիկայի համար չափազանց խոշոր նշանակություն ունի։

Չնայած այն բանին, որ Հայաստանի մեքենաշինությունը դեռ շատ երիտասարդ է, բայց արդեն Սովետական Միությունում իր ուրույն տեղն է գրավել։ Հայաստանի մեքենաշինության մեջ գերակշռում է էլեկտրատեխնիկական և գործիքաշինական, պրիբորաշինական ուղղությունը։ Այդ ուղղությամբ է ընթանում նրա հետագա մասնագիտացումը։

Սովետական Հայաստանի արդյունաբերության մեջ հետպատերազմյան շրջանում ավելի արագ զարգացավ արտադրության միջոցների արտադրությունը։ Եթե մինչև պատերազմը արտադրական բանվորների մեծ մասը զբաղված էր սպառման առարկաների արտադրության ճյուղերում, ապա այժմ պատկերը ճիշտ հակառակն է։

Սակայն դա չի նշանակում, որ սպառման առարկաների արտադրության ճյուղերը մեր ռեսպուբլիկայում չեն աճում։ Ծանր արդյունաբերության ճյուղերի զարգացման հետ մեկտեղ, ինչպես և ռեսպուբլիկայի գյուղատնտեսության ապրանքայնության բարձրացման համընթաց, ծավալվում է սննդի և թեթև արդյունաբերությունը։ Այս ուղղությամբ ևս բավականին խոշոր շինարարություն է տեղի ունեցել։ Այսպես, պատերազմից հետո կառուցվել և գործարկվել են մի շարք ձեռնարկություններ, այդ թվում Սպիտակի շաքարի, Հոկտեմբերյանի և Այրումի պահածոների, Երևանի կոնյակի և շամպան գինիների գործարանները և տասնյակ այլ համեմատաբար մանր ձեռնարկություններ։ Այնուհետև, թեթև արդյունաբերության գծով կառուցվել և այժմ շահագործվում են Վ. Ի. Լենինի անվան Երևանի մետաքսե գործվածքների գործարանը, Երևանի նուրբ բրդյա գործվածքների և մահուդի գործարանները, Կիրովականի Տրիկոտաժի գործարանը, Լենինականի Տեքստիլ կոմբինատի հարդարման ֆաբրիկան և այլն։

Ինչպես ամբողջ Սովետական Միությունում, այնպես էլ մեզ մոտ Հայաստանում, արդյունաբերությունը զարգանում է տեխնիկայի անընդհատ պրոգրեսի պայմաններում։ Ռեսպուբլիկայի արտադրական ձեռնարկություններում տեղադրված տեխնիկան, կիրառվող առաջավոր տեխնոլոգիան և, վերջապես, թողարկվող արտադրանքի որակական ցուցանիշները վկայում են Հայաստանում ստեղծված արդյունաբերության, նրանում զբաղված բանվորական ու ինժեներա-տեխնիկական անձնակազմի բարձր մակարդակը։

Սովետական Հայաստանի արդյունաբերության ասպարեզում ձեռք բերված նվաճումները չափազանց պերճախոս են։ Հայաստանը այժմ ունի զարգացած գունավոր մետաղագործություն, հարուստ հիդրոէներգետիկական սիստեմ, քիմիական, ռետինի, մեքենաշինական ու մետաղամշակության, անտա-

ռահատման ու անտառամշակության, շինանյութերի, ապակու, ֆայանսի, պոլիգրաֆիական, սննդի, ճարպի, օճառի, թեթև արդյունաբերություն։

Հայաստանը դեռ չունի սև մետալուրգիայի, թղթի և ստվարաթղթի արդյունաբերություն։ Բացակայում է նաև հանածո վառելիքի արտադրությունը, քանի որ երկրի ընդերքում արդյունաբերական նշանակություն ունեցող նման պաշարներ առայժմ դեռ չեն հայտնաբերվել։ Նույնիսկ ռեսպուբլիկայում ստեղծված արդյունաբերության վերոհիշյալ 12 ճյուղերը բոլոր դեպքերում չէ, որ ապահովում են արտադրանքի այս կամ այն պահանջվող տեսակի արտադրությունը։ Սակայն արտադրության այդ կարևոր ճյուղերի և առանձին նմուշների բացակայությունը չի կասեցնում Հայաստանի արդյունաբերության զարգացումը, քանի որ այն ընթացել և ընթանում է Սովետական Միության ժողովրդական տնտեսության հետ սերտորեն շաղկապված, կազմելով այդ տնտեսության անբաժանելի մասը։

Ահա այս փոխադարձ կապերի բնույթը, նրանց բազմերանգությունը վկայում են այն մասին, որ Սովետական Հայաստանի արդյունաբերությունը հասարակական աշխատանքի համամիութենական բաժանման մեջ իր պատվավոր և հաստատուն տեղն է գրավել։ Սակայն այդ կապերը սոսկ առարկայական բնույթ չեն կրում։ Աններևակայելի կլիներ Սովետական Հայաստանի արդյունաբերության զարգացումը առանց այն լայն, անշահախնդիր տեխնիկական օգնության՝ մասնագետներով, որակյալ բանվորներով, որ Հայաստանը առատությամբ ստացել է և շարունակում է ստանալ սովետական եղբայրական բոլոր ժողովուրդներից, առաջին հերթին ռուս մեծ ժողովրդից։

Արդյունաբերության բուռն զարգացումը Սովետական Հայաստանում տեղի է ունենում ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության ընդհանուր զարգացման ուղեգծով, այդ տնտեսության վերելքի բարերար ազդեցության ներքո։ Ամբողջ Սովետական Միությունում, այդ թվում և Հայաստանում արդյունաբերությունը զարգանում է սոցիալիստական արտադրաեղանակին հատուկ տնտեսական օրենքների գործողության պայմաններում, որոնք ապահովում են սոցիալիստական տնտեսության բարձր տեմպերով առաջխաղացումը, առանց կապիտալիստական արտադրությանը բնորոշ զարգացման մեջ տեղի ունեցող ընդհատումների, տնտեսական ճգնաժամերի, գործազրկության և այլն։

Պարտիայի և կառավարության վերջերս ձեռնարկած արդյունաբերության և շինարարության կառավարման վերակառուցումը, Միութենական ռեսպուբլիկաների իրավունքների ընդլայնումը էլ ավելի պայծառ հեռանկարներ են բացում ամբողջ Սովետական Միության, այդ թվում և Հայաստանի արդյունաբերության առջև։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի շնորհիվ ՍՍՌՄ-ում ստեղծված սոցիալիստական հզոր բազան, աճած հիանալի տեխնիկական կադրերի առկայությունը կապահովեն ՍՄԿՊ XX համագումարի առաջադրած հիմնական տնտեսական խնդրի լուծումը՝ ամենակարճ ժամանակամիջոցում ազգաբնակչության շնչին ընկած արտադրանքի արտադրության չափով հասնել և անցնել կապիտալիզմի գլխավոր երկրներից։

---

# ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՈՒՄԸ

*Ա. ԱՅՐՈՒՄՅԱՆ*

Ընթանալով լենինյան ուղիով, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ մեր երկրի աշխատավորները մեծ ու փառավոր ուղի են անցել, հասել համաշխարհային-պատմական հաղթանակների։ Պատմականորեն կարճ ժամանակամիջոցում մեր երկիրը դարձավ հզոր ինդուստրիալ տերություն։ ՍՍՌՄ արդյունաբերության համախառն արտադրանքը 1957 թվականին 1913 թվականի համեմատությամբ աճել է ավելի քան 33 անգամ, իսկ սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման հիմքը հանդիսացող ծանր ինդուստրիան՝ ավելի քան 74 անգամ։ Արդյունաբերական արտադրանքի ծավալով ՍՍՌՄ-ն ներկայումս աշխարհում գրավում է երկրորդ տեղը, իսկ Եվրոպայում՝ առաջին տեղը։

Արմատական փոփոխություններ են տեղի ունեցել նաև գյուղատնտեսության մեջ։

Մանր գյուղացիական արտադրության սոցիալիստական վերակառուցման միակ ճիշտ ուղին, ինչպես նշել է Վ. Ի. Լենինը, գյուղատնտեսության մեջ խոշոր սոցիալիստական արտադրություն ստեղծելն է։ Դեռևս Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակից առաջ, 1917 թվականի հունիսին գյուղացիական դեպուտատների Համառուսական I համագումարում արտասանած ճառում Վ. Ի. Լենինն ասել է. «Եթե հին ձևով մենք շարունակենք նստել մանր տնտեսությունների վրա, թեկուզ և որպես ազատ քաղաքացիներ ազատ հողի վրա, միևնույն է, մեզ անխուսափելի կորուստ է սպառնում... Սա դժվար գործ է, բայց անհրաժեշտ է անցնել ընդհանուր մշակման օրինակելի խոշոր տնտեսություններում» (հատ. 24, էջ 638—639)։

1923 թվականին Վ. Ի. Լենինը «Կոոպերացիայի մասին» հոդվածում ծավալուն ծրագիր տվեց, թե գյուղացիությանն ինչպես հաղորդակից անել սոցիալիստական շինարարությանը, մասնավոր տնտեսության ռելսերից նրան աստիճանաբար փոխադրել սոցիալիստական տնտեսության ռելսերի վրա՝ սկզբում վաճառքի ու մատակարարման, ապա նաև արտադրության գծով։

Չնայած նրան, որ բազմամիլիոն, ցաք ու ցրիվ գյուղացիական տնտեսությունները խոշոր սոցիալիստական արտադրության ռելսերի վրա փոխադրելու խնդիրն անասելի բարդ էր և մեծ, այնուամենայնիվ Կոմունիստական պարտիան Լենինի ցուցումներին հետևելով՝ սովետական գյուղացիությանը դուրս բերեց զարգացման սոցիալիստական ճանապարհը։ 25 միլիոն մանր, անհատական գյուղացիական տնտեսությունների փոխարեն այժմ ՍՍՌՄ-ում ստեղծված է աշխարհում ամենախոշոր մեքենայացված գյուղատնտեսական

արտադրություն։ Ներկայումս մեր երկրում կա մոտ 78,9 հազար կոլտնտեսություն, 5,8 հազար սովետական տնտեսություն և 8 հազար մեքենա-տրակտորային կայան։

Աշխատավոր գյուղացիության կոլտնտեսությունների ուղին փոխադրելը հասցրեց կապիտալիզմի վերջին արմատների ոչնչացմանը երկրում, սոցիալիզմի հաղթանակի ավարտմանը գյուղատնտեսության մեջ, և «ով—ումի» լուծումը հօգուտ սոցիալիզմի։ Կոլտնտեսային կարգը լիովին վերացրեց գյուղացիության բաժանումը տարբեր ունեցվածքային խմբերի ու հակադիր դասակարգերի։ Նա իրականություն դարձրեց գյուղի բոլոր աշխատավորների կողմից հողի լայնորեն օգտագործումը, որ կապիտալիզմի պայմաններում գյուղացիության բաղձանքն էր հանդիսանում։

ՍՍՌՄ-ում սոցիալիստական գյուղատնտեսություն ստեղծելը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի խոշորագույն նվաճումներից մեկն է։ Դա ցայտուն կերպով երևում է նաև Հայաստանի օրինակով, որը Սովետական Միության բոլոր ռեսպուբլիկաների հետ միասին Մեծ Հոկտեմբերի քառասնամյակը դիմավորեց պատմական խոշոր հաղթանակներով։



Հայաստանը դարեր շարունակ, մինչև Սովետական իշխանության հաստատվելը, եղել է ագրարային երկիր։ Բնակչությունը գերազանցապես զբաղվում էր գյուղատնտեսությամբ։ 1913 թվականին երկրի ամբողջ համախառն արտադրանքի մեջ, ներառյալ նաև տնայնագործական ձեռնարկությունների արտադրանքը, արդյունաբերության բաժինը կազմում էր 23 տոկոս, գյուղատնտեսությանը՝ 77 տոկոս։ Գյուղատնտեսությունն էլ աչքի էր ընկնում իր չափազանց ցածր, պրիմիտիվ տեխնիկայով։ Ամենատարածված գործիքներն էին փայտե արորը և փոցխը։ Երկաթե գութաններ հանդիպում էին միայն ունևոր տնտեսություններում, որովհետև նրանց օգտագործման համար շատ եզներ էին հարկավոր։ Կալսելու համարյա միակ գործիքը կամն էր։ Ավելի բարձր տեխնիկայի մասին խոսք անգամ լինել չէր կարող ոչ միայն նրա համար, որ հայ գյուղի արտադրողական ուժերը կաշկանդում էին ֆեոդալական-կապիտալիստական կարգերը և մեքենաների անհրաժեշտ արտադրություն չկար, այլև այն պատճառով, որ մեքենա ձեռք բերելը գյուղացու ուժից վեր բան էր։

Լինելով սակավահող և մեծ մասամբ բանող անասուններից ու մեքենաներից զուրկ՝ գյուղացիությունը ստիպված էր միևնույն հողում առանց որևէ սիստեմի հացաբույսեր ցանել։

Չափազանց ցածր մակարդակի վրա էր գտնվում ագրոտեխնիկան։ Ամենուրեք տիրապետում էր հողագործության տրադիցիոն եռադաշտ ու երկդաշտյան սիստեմը։

Հողագործական ագրոտեխնիկայի չափազանց ցածր մակարդակի պայմաններում գյուղատնտեսական կուլտուրաների ցածր բերք էր ստացվում։ Հացահատիկային կուլտուրաների միջին բերքատվությունը 1909—1913 թվականներին կազմել է հեկտարից 5,8 ցենտներ, բամբակինը՝ 8,8 ցենտներ։ Խաղողագործությունն ու պտղաբուծությունը, որոնք բարձր ապրանքայնություն ու եկամուտ էին ապահովում, մեծ մասամբ կենտրոնացված էին խոշոր հողատերերի ու եկեղեցու ձեռքում։



Չափազանց ցածր մակարդակի վրա էր գտնվում նաև անասնաբուծությունը, որը մինչև Հայաստանում սովետական կարգերի հաստատումը որևէ չափով չէր բարելավվել և հիմնականում սպառողական ճյուղ էր հանդիսանում։ Հայաստանի վիճակագրական վարչության տվյալներով 1913 թվականին կովի միջին կաթնատվությունը մեկ տարում կազմում էր ընդամենը 350—400 կիլոգրամ։

Անասնաբուծությունը առավելապես հիմնված էր բնական կերի բազայի վրա։ Կերի արտադրություն և ձմեռվա կերի մթերում կատարվում էր շատ աննշան չափերով։ Մսուրային շրջանում անասունների հիմնական և համարյա միակ կերը դարմանն էր։ Դրա համար էլ Հայաստանում անասնաբուծությունը քոչվորական բնույթ էր կրում, մի շարք շրջաններում՝ կիսաքոչվորական։

Նախառևոլյուցիոն ժամանակաշրջանում Հայաստանի գյուղատնտեսության դեգրադացիան ակնբախ էր։ Այդ դեգրադացիայի գլխավոր պատճառը գյուղատնտեսության արտադրողական ուժերի կաշկանդվածությունն էր գոյություն ունեցող հասարակական հարաբերությունների հետևանքով, որը հնարավորություն չէր տալիս գյուղատնտեսությունը վարել ռացիոնալ, ինտենսիվ եղանակներով։ Այսպիսով, արտադրողական ուժերի զարգացումն արգելակում էին ոչ թե բնական ու տեխնիկական պայմանները, այլ արտադրության կապիտալիստական եղանակի հակասություններն ու նեխվածությունը։

Հայաստանի առանց այն էլ խղճուկ գյուղատնտեսությունը առաջին իմպերիալիստական պատերազմի տարիներին վերջնական անկման հասավ, իսկ դաշնակների տիրապետության ժամանակ լիովին քայքայվեց։ Բավական է ասել, որ գյուղատնտեսական կուլտուրաների ցանքատարածությունը 1919 թվականին 1913 թվականի համեմատությամբ Հայաստանում իջել էր 75 տոկոսով, անասունների գլխաքանակը նվազել էր 67 տոկոսով, իսկ գյուղատնտեսության ընդհանուր արտադրանքը կազմում էր նախապատերազմյան մակարդակի սոսկ 17,2 տոկոսը։

Աղքատացման ու տնտեսության քայքայման հետևանքով ընչազուրկ գյուղացիությունը դարձել էր վարձու աշխատող ուժ։ Հայկական վիճակագրական վարչության տվյալներով 1912—1913 թվականներին աշխատանք գտնելու համար գյուղից դուրս էր եկել՝ Հայաստանի ներսում 32 հազար մարդ, Հայաստանի սահմաններից դուրս՝ 50 հազար մարդ և արտասահման էր գաղթել մոտ 3000 մարդ։

Ընդհանուր գծերով այսպես էր նախառևոլյուցիոն Հայաստանի գյուղատնտեսության վիճակը։



Հայաստանում Սովետական իշխանություն հաստատելուց հետո երիտասարդ ռեսպուբլիկան Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության ղեկավարությամբ մեծ ջանքեր գործադրեց արագորեն վերականգնելու և զարգացնելու արդյունաբերությունը, գյուղատնտեսությունը և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերը։

Հայկական ՍՍՌ Ժողովրդական Կոմիսարների Սովետի 1920 թվականի դեկտեմբերի 28-ի դեկրետով Հայաստանի սահմաններում գտնվող ամբողջ հողը հայտարարվեց պետական սեփականություն։ Դա հսկայական նշանակու-

թյուն ունեցավ Հայաստանի գյուղացիության հետագա ամբողջ կյանքի, գյուղատնտեսության սոցիալ-տնտեսական վերակառուցման համար։ Հողի հետ միասին ազգայնացվեցին նաև ջրերը և ոռոգման սիստեմը, որը նույնպես իր հերթին մեծ դեր խաղաց գյուղատնտեսության արագ վերականգնման ու հետագա զարգացման գործում։ Հարկավոր էր խոշոր աշխատանք կատարել հողօգտագործումը կարգավորելու համար, որովհետև այս բնագավառում կային այլանդակություններ, որոնք ֆեոդալական-ճորտատիրական ու կապիտալիստական կարգերի մնացորդներ էին։ Հայաստանում պետության հաշվին հողաշինարարություն կատարվեց։

Սովետական Միության արդյունաբերության բուռն աճման շնորհիվ հայ գյուղն սկսեց ստանալ գյուղատնտեսական մեքենաներ ու գործիքներ։ Բավական է ասել, որ արդեն իսկ 1926 թվականին ցանքի տակ դրված հողերի կեսից ավելին հերկվեց գութաններով, այնինչ 1921 թվականին գութանով հերկվել էր ընդամենը 5 տոկոսը։

Անշեղորեն իրականացնելով Կոմունիստական պարտիայի ու Սովետական կառավարության դիրեկտիվները և շնորհիվ պետության հարաճուն օգնության՝ Հայաստանի գյուղատնտեսությունը ոչ միայն վերականգնվեց, այլև շատ կարճ ժամանակամիջոցում 1913 թվականի մակարդակից էլ ավելի բարձրացավ։

Հետևելով Վ. Ի. Լենինի ցուցումներին՝ Հայաստանի աշխատավոր գյուղացիությունն սկսեց մտնել կոոպերատիվ միավորումների մեջ։ Դրանից հետո, սկսած 1929 թվականի երկրորդ կեսից, չքավորության հետ միասին լայն հոսանքով կոլտնտեսությունները մտան նաև միջակները։ Կարճ ժամանակամիջոցում Հայկական ՍՍՌ-ն դարձավ համատարած կոլեկտիվացման երկիր, խոշոր սոցիալիստական գյուղատնտեսության երկիր։

Գյուղացիությանը դեպի կոլեկտիվացման ուղին վարելու գործում խոշոր դեր խաղացին սովետական տնտեսություններն ու մեքենա-տրակտորային կայանները։ Արդեն իսկ 1928 թվականին ռեսպուբլիկայում կար 15 սովետական տնտեսություն, որոնց թիվը 1956 թվականին հասավ 55-ի։ 1929 թվականին կազմակերպվեց Հայաստանում առաջին ՄՏ կայանը՝ Հոկտեմբերյանի մեքենա-տրակտորային կայանը։ 1932 թվականին ՄՏ կայանների թիվը ռեսպուբլիկայում արդեն հասել էր 7-ի, 1940 թվականին՝ 33-ի, 1950 թվականին՝ 46-ի և 1957 թվականին՝ 52-ի։ Ինչպես ՄՏ կայանները, այնպես էլ սովետական տնտեսությունները հագեցված են նորագույն մեքենայական տեխնիկայով։

Կոլտնտեսությունների, սովետական տնտեսությունների ու ՄՏ կայանների հիման վրա ռեսպուբլիկայում վերջ տրվեց գյուղատնտեսության դարավոր հետամնացությանը։ Արմատապես փոխվել է Հայաստանի գյուղատնտեսության դեմքը։ Ինչպես ժողովրդական տնտեսության ու կուլտուրայի, այնպես էլ գյուղատնտեսության բնագավառում Սովետական իշխանության տարիներին ձեռք են բերվել հսկայական հաջողություններ։

Մեծ չափերի է հասել գյուղատնտեսության մեքենայացումը։ Առ 1-ը հուլիսի 1957 թվականի ռեսպուբլիկայի ՄՏ կայաններում տրակտորային պարկը 1940 թվականի համեմատությամբ ավելացել է 2,7 անգամ։ Ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների ու սովետական տնտեսությունների դաշտերում աշխատող տրակտորների թիվն անցնում է 5200-ից։ Բացի դրանից, կոլտնտեսությունների դաշտերում աշխատում են 813 հացահատիկային կոմբայն



և ուրիշ շատ մեքենաներ։ 1956 թվականին ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում մեքենա-տրակտորային կայանների կատարած աշխատանքի ընդհանուր ծավալը հասնում էր 1.456 հազար հեկտարի՝ վերածած փափուկ վարի, ի դիմաց 1940 թվականի 552 հազար հեկտարի և 1950 թվականի 802 հազար հեկտարի։ Դա ապահովեց գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացման բարձր աստիճան, որը հիմնական պրոցեսներում հասնում է 90—100 տոկոսի։

Մեքենայացման այսպիսի բարձր աստիճանը հնարավոր դարձավ շնորհիվ այն բանի, որ պետությունը խոշոր միջոցներ է ներդնում ՄՏ կայանների շինարարության ու տեխնիկական հագեցման գործում։

ՄՏ կայանների հիմնական արտադրական միջոցների աճը Հայաստանի գյուղատնտեսության ինտենսիֆիկացման աստիճանի լավագույն ցուցանիշներից մեկն է։ Այսպես, եթե 1940 թվականին կոլտնտեսային վարելահողերի մեկ հեկտարին ՄՏ կայանների հիմնական արտադրական միջոցներ ընկնում էր 54 ռուբլու չափով, ապա 1950 թվականին կազմեց 147 ռուբլի, իսկ 1956 թվականին՝ 460 ռուբլի։ 1956 թվականին ՄՏ կայանների հիմնական արտադրական միջոցների տեսակարար կշիռը արտադրամիջոցների ընդհանուր արժեքի մեջ հասավ 19 տոկոսի, ի դիմաց 1940 թվականի 11,2 տոկոսի։ ՄՏ կայանների տեսակարար կշռի այսպիսի աճը կոլտնտեսությունների հիմնական արտադրական միջոցների անընդհատ ավելացման հետ վկայում է այն հսկայական հոգատարության մասին, որ ցուցաբերում են Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը Հայաստանի գյուղատնտեսության մեքենայացման և ՄՏ կայանների շինարարության նկատմամբ։

Հայաստանի գյուղատնտեսության էներգետիկան նույնպես սիստեմատիկորեն աճում է ի հաշիվ պետական, կոլտնտեսային ու միջկոլտնտեսային էլեկտրակայանների կառուցման, ավտոմոբիլների և այլ շարժիչների աճման։

1957 թվականի առաջին կիսամյակի վերջում Հայաստանի կոլտնտեսությունների 83 տոկոսից ավելին էլեկտրիֆիկացված էր, իսկ էլեկտրաէներգիա օգտագործող կոլտնտեսությունների տոկոսը կազմում էր 96։ էլեկտրականությունը հաստատորեն մտել է կոլտնտեսականների, ՄՏ կայանների ու սովետական տնտեսությունների աշխատողների կենցաղի և գյուղատնտեսական արտադրության մեջ։ Շատ կոլտնտեսություններում ու սովետական տնտեսություններում էլեկտրիֆիկացված է կալսումը, սերմազտումը, սիլոսացումը և այլ աշխատանքներ, իսկ ոչխարների էլեկտրախուզը հասել է 100 տոկոսի։ Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության մեջ արտադրական նպատակներով և լուսավորության համար էլեկտրաէներգիայի ծախսումը 1956 թվականին 1950 թվականի համեմատությամբ աճել է ավելի քան 3 անգամ։

Հայ գյուղում կատարված սոցիալ-տնտեսական վերակառուցումը ապահովել է մեքենայական շարժիչների տեսակարար կշռի խիստ բարձրացումը գյուղատնտեսության մեջ։

Ռեսպուբլիկայում խոշոր աշխատանք տարվեց ոռոգման հին ջրանցքները վերականգնելու և նորերը կառուցելու ուղղությամբ։ Վ. Ի. Լենինն այս հարցին բացառիկ մեծ նշանակություն էր տալիս։ Դեռ 1921 թվականին Կովկասի կոմունիստներին ուղղված նամակում Վ. Ի. Լենինը ուշադրություն էր հրավիրում ջրոռոգման վրա, նշելով, որ դա հարուստ երկրամասի արտադրողական ուժե-

րի զարգացման ակունքն է։ «Ռոգումը հատկապես կարևոր է հողագործությունն ու անասնաբուծությունը ինչ գնով էլ լինի բարձրացնելու համար»։ Եվ այնուհետև՝ «իսկույն աշխատել բարելավել գյուղացիների դրությունը և սկսել էլեկտրիֆիկացիայի, ոռոգման խոշոր աշխատանքներ։ Ոռոգումը ամենից ավելի է պետք և ամենից ավելի կվերստեղծի երկիրը, կվերածնի նրան, կթաղե անցյալը, կամրապնդի անցումը դեպի սոցիալիզմ» (Երկեր, հատոր 32, էջ 404)։

Վ. Ի. Լենինի այդ ցուցումը կենսագործելու համար հսկայական աշխատանք կատարվեց։ Բավական է նշել, որ ջրային տնտեսության շինարարության մեջ պետական միջոցների ներդրումներ են արված մինչև 1940 թվականը 113,7 միլիոն ռուբլի, 1941—1950 թվականների ընթացքում՝ 135 միլիոն և 1951—1956 թվականների ընթացքում 140,8 միլիոն ռուբլի։ Այսպիսով, Սովետական իշխանության տարիներին ջրային տնտեսության մեջ (չհաշված 1957 թվականին ներդրված 26,2 միլիոն ռուբլին) պետական բյուջեով ներդրումների գումարը կլոր թվով կազմել է 390 միլիոն ռուբլի։ Պետական այս միջոցների ներդրումների հետևանքով ռեսպուբլիկայում ոռոգվող հողերի տարածությունը 1913 թվականի 97 հազար հեկտարից 1957 թվականին հասել է 215 հազար հեկտարի։ Ներկայումս էլ կառուցվում են Արզնի-Շամիրամ ջրառոգման խոշոր սիստեմը, որ ոռոգելու է 30 հազ. հեկտար տարածություն, Թալինի ջրանցքի առաջին հերթը (12 հազ. հեկտար), Կոտայքի ջրանցքը (7,5 հազ. հեկտար) և մի շարք այլ ջրանցքներ։ Միաժամանակ շարունակվում է Արարատյան դաշտի ճահճակալած հողերի չորացման աշխատանքը։

Անցյալում չյուրացված և չօգտագործվող ավելի քան 150 հազ. հեկտար հող գյուղատնտեսական շրջանառության մեջ մտցնելու հետևանքով զգալիորեն ավելացել է գյուղատնտեսական կուլտուրաների ցանքերի և այգիների տարածությունը։ 1956 թվականին, 1913 թվականի համեմատությամբ գյուղատնտեսական կուլտուրաների ցանքային տարածությունները Հայաստանում ավելացել են 28 տոկոսով։ Զգալիորեն բարձրացել է տեխնիկական կուլտուրաների, բանջարանոցային և մանավանդ կերաբույսերի տեսակարար կշիռը։ Տեխնիկական կուլտուրաների մեջ առանձնապես մեծ չափով զարգացել է ծխախոտագործությունը (1913 թվականի 100 հեկտարից հասնելով մոտավորապես 8 հազար հեկտարի) և շաքարի ճակնդեղի մշակությունը, որոնք ապահովել են կոլտնտեսային արտադրության հետագա ինտենսիֆիկացիան և եկամտի ավելացումը։

Լուրջ փոփոխություններ են եղել խաղողագործության և պտղաբուծության զարգացման մեջ։ Հայաստանի գյուղատնտեսության այդ հնադարյան ճյուղերը միայն Սովետական իշխանություն հաստատվելուց հետո սկսեցին մեծ ծավալով զարգանալ։ 1913 թվականի համեմատությամբ ռեսպուբլիկայում խաղողի և պտղատու այգիների տարածությունն ավելացել է ավելի քան 3 անգամ։

Նշանակալից է նաև այն, որ ինչպես ամբողջ Սովետական Միության, այնպես էլ Հայաստանի գյուղատնտեսությունը վարվում է խիստ գիտական հիմունքներով։ Սրա լավագույն ապացույցն են գյուղատնտեսական արտադրության հագեցումը նորագույն մեքենայական տեխնիկայով, կոլտնտեսություններում ու սովետական տնտեսություններում հողագործության խոտա-



դաշտյան սիստեմի կիրառումը, հանքային պարարտանյութերի լայն օգտագործումը և այլ առաջավոր ագրոտեխնիկական եղանակների կիրառումը։

Հիմնական դաշտային աշխատանքների մեքենայացման, ոռոգվող տարածությունների ընդարձակման և ագրոտեխնիկայի մակարդակի բարձրացման հետևանքով զգալիորեն բարձրացել է նաև գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը և համախառն արտադրանքը։ 1955—1956 թվականներին 1913 թվականի համեմատությամբ հողագործական արտադրանքն աճել է հետևյալ չափերով. հացահատիկ՝ 30—50 տոկոսով, բամբակ՝ 2,7 անգամ, ծխախոտ՝ 112—135 անգամ, բանջարանոցային կուլտուրաներ՝ 4—5,8 անգամ, կարտոֆիլ՝ 3,8—3,9 անգամ։ Շաքարի ճակնդեղի արտադրությունը (որ անցյալում մեզ մոտ չէր մշակվում) 1956 թվականին կազմել է 76 հազ. տոննա։

Խաղողը, պտուղները և բանջարեղենը ոչ միայն տեղական սպառողական նշանակություն ունեն, այլև այդ արտադրանքի մի մասը հումքի բազա է հանդիսանում գինի-կոնյակի ու պահածոների արդյունաբերության համար, որը մեզ մոտ լայն զարգացում է ստացել։ Հայկական ՍՍՌ գինի-կոնյակի և պահածոների արդյունաբերության տեսակարար կշիռը թեթև արդյունաբերության համախառն արտադրանքի ընդհանուր արժեքի մեջ 1956 թվականին կազմեց մոտ 20 տոկոս։ Սովետական Միության մասշտաբով մեր ռեսպուբլիկայում արտադրվող ծխախոտի տեսակարար կշիռը կազմում է մինչև 12 տոկոս։

Նշանակալից են հաջողությունները անասնաբուծության զարգացման բնագավառում։ 1928 թվականին ռեսպուբլիկայում զգալիորեն գերազանցված էր բոլոր տեսակի մթերատու անասունների 1916 թվականի գլխաքանակի մակարդակը։ 1956 թվականին 1916 թվականի համեմատությամբ ոչխարների ու այծերի գլխաքանակը աճեց 129 հազար գլխով, իսկ խոզերինը՝ ավելի քան 5,7 անգամ։ Սակայն 1956 թվականի վերջին ռեսպուբլիկան խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակով դեռևս 1916 թվականի մակարդակին չէր հասել։

Պետք է նշել, որ ՍՄԿՊ Կենտկոմի 1953 թվականի Սեպտեմբերյան պլենումից հետո, պարտիայի ու կառավարության նշած միջոցառումների իրականացման հետևանքով անասնաբուծությունը մեզ մոտ ավելի արագ թափով է զարգանում։

Հայաստանի անասնաբուծության առանձնահատկությունն է անասունների համեմատաբար բարձր խտությունը, որ զգալիորեն գերազանցում է միութենական միջին ցուցանիշները։ 1956 թվականին (առ 1-ն հոկտեմբերի) 100 հեկտար հողատարածության դիմաց ռեսպուբլիկայում ընկնում էր խոշոր եղջերավոր անասուն 41 գլուխ, այդ թվում կովեր՝ 13 գլուխ, ոչխար ու այծ՝ 123 գլուխ, խոզ՝ 23 գլուխ։

Պլանաչափ կերպով տոհմաբուծական աշխատանք կատարելը նպաստեց անասունների որակական կազմի լուրջ բարելավմանը։ Ներկայումս ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում ու սովետական տնտեսություններում հոտի ընդհանուր քանակի երկու երրորդը տոհմային անասուններ են։ Կոլտնտեսություններում ու սովետական տնտեսություններում խոշոր աշխատանք է կատարված անասնապահական շենքերի, սիլոսի աշտարակների ու հորերի կառուցման ուղղությամբ։

Խիստ բարելավվել է անասունների կերի բազան։ 1913 թվականի համե-

մատությամբ ցանովի խոտերի տարածությունն ընդարձակվել է ավելի քան 18 անգամ։ Կերի ասորտիմենտը լրացվել է սիլոսով, կերի ճակնդեղով, կոմբինացված կերով, եգիպտացորենով։

Անասունների խնամքի, կերակրման ու տոհմային կազմի լուրջ բարելավումը զգալիորեն բարձրացրել է նրանց մթերատվությունը և ավելացրել անասնաբուծական մթերքների արտադրությունը։ Այսպես, 1956 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, կովերի կաթն ավելացել է մոտավորապես 3 անգամ, ոչխարների բրդատվությունը՝ մոտ 1,3 անգամ, մսի արտադրությունն ավելացել է 1,7 անգամ։ 100 հեկտար հողատարածության դիմաց 1956 թվականին ռեսպուբլիկայում արտադրվել է միս (սպանդանոցային քաշով) 23,1 ցենտներ, կաթ՝ 168,5 ցենտներ, բուրդ՝ 201 կիլոգրամ, ձու (100 հեկտար հացաբույսերի ցանքի հաշվով) 30,4 հազար հատ։

Գյուղատնտեսական հումքի արտադրության աճը Հայկական ՍՍՌ-ում լուրջ բազա հանդիսացավ սննդի ու թեթև արդյունաբերության լայն զարգացման համար, որը հագեցած է ժամանակակից սարքավորումներով ու մեքենաներով։ Հենց միայն 1940 թվականի համեմատությամբ ռեսպուբլիկայում 1956 թվականին գինու արդյունաբերական արտադրանքն ավելացել է 6,7 անգամ, կոնյակինը՝ 4,6 անգամ, պահածոներինը՝ 4,1 անգամ, գլանակինը՝ 5,3 անգամ, յուղինը՝ 2 անգամ, պանրինը՝ 3,5 անգամ։ Կառուցվել են շաքարի, բամբակազտիչ, ֆերմենտացիոն, կոմբինացված կերի և մի շարք այլ գործարաններ, տեքստիլ, մսի կոմբինատներ և ուրիշ ձեռնարկություններ։

Հայաստանի կոլտնտեսությունների հանրային տնտեսության զարգացման ու ամրապնդման կարևոր ցուցանիշներից մեկը նրանց դրամական եկամուտների ավելացումն է։ Կոլտնտեսությունների դրամական եկամուտները 1940 թվականի 225 միլիոն ռուբլուց բարձրանալով, 1950 թվականին հասել են 421,7 միլիոն ռուբլու, 1956 թվականին՝ 747,8 միլիոն ռուբլու։ Ըստ որում ՍՄԿԿ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումից հետո գյուղատնտեսական արտադրանքի աճման տեմպերի ավելացման և մթերման ու գնման գների բարձրացման հետևանքով, 1954—1956 թվականներին դրամական եկամուտների տարեկան միջին աճը կազմել է 72 միլիոն ռուբլի, մինչդեռ նախորդ երեք տարում կազմում էր 36 միլիոն ռուբլի։ Հենց միայն 1956 թվականին նախորդ տարվա համեմատությամբ կոլտնտեսությունների եկամուտներն ավելացել են 118 միլիոն ռուբլով։ Այժմ ռեսպուբլիկայում յուրաքանչյուր չորրորդ կոլտնտեսությունը միլիոնատեր է։

Կոլտնտեսությունների հանրային տնտեսության զարգացումը երևում է նաև նրանց անբաժանելի ֆոնդերի ավելացումով, որ 1956 թվականին հասել էր 1,150 միլիոն ռուբլու, որը 881 միլիոն ռուբլով, կամ 4,3 անգամով ավելի է քան 1940 թվականին էր և 331 միլիոն ռուբլով, կամ 44 տոկոսով ավելի, քան 1950 թվականին էր։

Դրամական եկամուտների ու անբաժանելի ֆոնդերի աճը որպես կոլտնտեսությունների արտադրական բազայի ընդարձակման հիմք՝ վճռական նշանակություն ունի։ Դրա հետ միասին գյուղատնտեսության մեջ պետական կապիտալ ներդրումների անընդհատ ավելացումը նպաստում են գյուղատնտեսական արտադրության սոցիալիստական ընդլայնված վերարտադրությանը։ Հայտնի է, որ ի հաշիվ պետական ներդրումների կառուցվում են մեքենա-տրակտորային կայաններ, սովետական տնտեսություններ, ընդարձակվում



է նրանց մեքենա-տրակտորային պարկը, կառուցվում են ոռոգացիոն խոշոր սիստեմներ, հզոր էլեկտրակայաններ և այլն։ Բացի դրանից, պետությունը կոլտնտեսություններին օգնություն է ցույց տալիս կապիտալ շինարարության համար վարկեր տրամադրելով։ Այս ամենի շնորհիվ կոլտնտեսություններն իրենց կապիտալ ներդրումներն օգտագործում են տոհմային անասուններ ձեռք բերելու, անասնաբուծական ֆերմաները մեքենայացնելու, արտադրական ու կուլտուր-կենցաղային շենքեր կառուցելու, այգիների տարածությունն ընդարձակելու, ավտոմեքենաներ գնելու, էլեկտրիֆիկացման և այլ կարիքների համար, որոնք նպաստում են նրանց հանրային տնտեսության հաջող զարգացմանը և կազմակերպական-տնտեսական ամրապնդմանը։

Հայկական ՍՍՌ վիճակագրական վարչության տվյալներով Սովետական իշխանության տարիներին ռեսպուբլիկայի գյուղատնտեսության մեջ պետությունը ներդրել է մոտ 1,4 միլիարդ ռուբլի և կոլտնտեսությունները՝ կլոր հաշվով 2 միլիարդ ռուբլի, ընդամենը 3,4 միլիարդ ռուբլի։

Ընդհանուր առմամբ 1956 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, կոլտնտեսությունների արտադրության հիմնական միջոցներն աճել են ՄՏ կայանների հետ միասին 4,6 անգամ։

Կոլտնտեսությունների հանրային տնտեսության էկոնոմիկայի զարգացման գործում ձեռք բերած հաջողությունները ապահովում են կոլտնտեսականների նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացումը։ Կոլտնտեսականների նյութական ու կուլտուրական բարեկեցության բարձրացման մասին վկայում է նախ և առաջ ըստ աշխօրերի կոլտնտեսականներին բաշխվող մթերային և դրամական եկամուտների անընդհատ աճը։ 1956 թվականին, 1940 թվականի համեմատությամբ կոլտնտեսականներին ավելի է բաշխված հացահատիկ՝ 16,3 հազար տոննա, կարտոֆիլ՝ 8,4 հազար տոննա, խաղող՝ 16,3 հազար տոննա, բանջարեղեն՝ 5,3 հազար տոննա, յուղ ու պանիր (կաթի վերածած) 28 հազար տոննա և դրամ՝ 262 միլիոն ռուբլի։ Կոլտնտեսությունների հանրային տնտեսությունը դարձել է կոլտնտեսականների ամբողջ կյանքի հաստատուն հիմքը։ Ըստ որում չի կարելի մոռանալ, որ կոլտնտեսականների եկամուտները չեն սահմանափակվում հանրային տնտեսության բաշխած մթերային ու դրամական եկամուտներով։ Մի կողմից պարտադիր հանձնումների նորմաների սիստեմատիկ իջեցումը և գյուղատնտեսական մթերքների մթերման ու գնման գների բարձրացումը և մյուս կողմից արտելի կանոնադրությամբ նախատեսված սահմաններում անձնական տնտեսության աճը ապահովում են կոլտնտեսականների նյութական բարեկեցության անընդհատ վերելքը։ 1958 թվականի հունվարի 1-ից, երբ կոլտնտեսականների, բանվորների ու ծառայողների տնտեսությունները այլևս պարտադիր կարգով գյուղատնտեսական մթերքներ չեն հանձնի պետությանը, նրանց եկամուտները է՛լ ավելի կաճեն։

Վերջին տարիներս Հայաստանի սովետական տնտեսությունները ևս զգալիորեն ամրապնդվել և սկսել են ավելի շատ գյուղատնտեսական մթերքներ հանձնել պետությանը։ 1940 թվականի համեմատությամբ սովետական տնտեսությունների հողային ֆոնդը ավելացել է երեք անգամ և հասել 118 հազար հեկտարի։ Այդ նույն ժամանակամիջոցում նրանց հիմնական միջոցները ավելացել են համարյա 7 անգամ և կազմում են 330 միլիոն ռուբլի։ Տարեցտարի ավելանում է մթերատու անասունների գլխաքանակը, բարձրանում է

նրանց մթերատվությունը, ընդարձակվում է գյուղատնտեսական կուլտուրաների ցանքատարածությունը, մանավանդ խաղողի ու պտղատու այգիների տարածությունը, որոնք Հայաստանի սովետական տնտեսությունների էկոնոմիկայի մեջ կարևոր դեր են խաղում։

Սովետական տնտեսությունները, լինելով պետական խոշոր ձեռնարկություններ, բոլոր հնարավորություններն ունեն աշխատանքի ու միջոցների նվազագույն ծախսումով արագորեն ավելացնելու գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։ Հաշվի առնելով սովետական տնտեսությունների խոշոր նշանակությունը գյուղատնտեսության հետագա զարգացման գործում՝ պետությունը խոշոր միջոցներ է ծախսում նրանց ընդարձակման ու նորերի կազմակերպման համար։ Գյուղատնտեսական արտադրության մեջ սովետական տնտեսությունների արտադրանքի տեսակարար կշիռը շարունակ ավելի ու ավելի է բարձրանալու։

Սովետական կարգերի ստեղծագործական վիթխարի ուժը սոցիալ-տնտեսական վերափոխումների հետ միասին ապահովեց կուլտուրական ռևոլյուցիան Հայաստանի գյուղում։

Գյուղացիության մեջ անգրագիտությունը վերացված է։ Եթե 1914—15 ուս. տարում Հայաստանի գյուղական դպրոցներում սովորում էր 27,1 հազար աշակերտ, ապա 1956—1957 ուս. տարում սովորում է 156,8 հազար աշակերտ։ Գյուղական երիտասարդության մի խոշոր մասը ավարտել է կամ սովորում է բուհերում, տեխնիկումներում, մեքենայացման դպրոցներում և զանազան դասընթացներում, մի բան, որ սովետական կարգեր հաստատվելուց առաջ Հայաստանում ամենևին չկար։ Հենց միայն գյուղատնտեսության մասնագետների թիվը հասնում է 6000-ի, որից բարձրագույն կրթությամբ՝ 3,3 հազար մարդ։ Գյուղական դպրոցներում ներկայումս աշխատում է 11.250 ուսուցիչ, որոնք հիմնականում բարձրագույն կրթություն ունեն, այնինչ 1914—1915 ուս. տարում կար ընդամենը 861 ուսուցիչ։

Գյուղատնտեսության արտադրության առանձին ճյուղերի առավել էֆեկտիվ կազմակերպման գործում արտադրությանը օգնություն ցույց տալու, գյուղատնտեսության կուլտուրայի ու էկոնոմիկայի սիստեմատիկ բարձրացմանը նպաստող կոմպլեքսային հարցերի մշակման և հայրենական գիտության հարստացմանը մասնակցելու համար Հայաստանում ստեղծված է գիտահետազոտական հիմնարկությունների լայն ցանց՝ իր բարձրորակ գիտական կադրերով։

Արմատապես փոխվել են հայ գյուղացու կյանքի պայմանները։ Սովետական իշխանության տարիներին նրանցից շատերը իրենց համար կառուցել են ընդարձակ լուսավոր տներ, ձեռք են բերել հիանալի կահույք, ռադիոընդունիչներ, իսկ վերջին տարիներս սկսել են ձեռք բերել նաև ավտոմեքենաներ։ Հենց միայն վերջին տասնամյակներում կոլտնտեսականները, բանվորներն ու ծառայողները գյուղական վայրերում կառուցել են 49.300 տուն։ Ռադիոկետերի թիվը գյուղական վայրերում կազմում է 79 հազար, մի բան, որ անցյալում ամենևին չկար։

Կոլտնտեսությունների մեծ մասում և բոլոր սովետական տնտեսություններում ու ՄՏ կայաններում կառուցվել են հիանալի ակումբներ։ Ստեղծված է նաև այլ կուլտուր-լուսավորական հիմնարկությունների՝ գրադարանների, կինոների լայն ցանց։ Եթե 1913 թվականին գյուղական վայրերում կար ընդամենը 12 գրադարան, 5400 օրինակ գրքի ֆոնդով, ապա այժմ կա 1052 գրադարան՝ 3.185 հազար օրինակ գրքի ֆոնդով, իսկ կինոսարքավորումների թիվը հասնում է 288-ի, ակումբներինը՝ 1020-ի։



Գյուղատնտեսության սոցիալ-տնտեսական վերակառուցումը վերադաստիարակեց մանր-սեփականատեր գյուղացուն՝ դարձնելով նրան կոմունիզմի գործի մարտիկ, փրկեց նրան շահագործումից ու աղքատությունից։ Նա կայտառ և ուրախ է նայում վաղվա օրվան։

***

Մեր երկրի արտադրողական ուժերի արդի մակարդակը լայն հնարավորություններ է ստեղծում մոտակա տարիներին գյուղատնտեսական մթերքների արտադրությունը մեծ չափով ավելացնելու համար։

Քննադատաբար գնահատելով գյուղատնտեսության զարգացման գործում ձեռք բերած հաջողությունները, անհրաժեշտ է նշել, որ այդ մակարդակը դեռևս չի համապատասխանում այն խոշոր հնարավորություններին, որ ունի Հայաստանի գյուղատնտեսությունը և լրիվ չափով չի բավարարում բնակչության սննդամթերքի հարաճուն պահանջմունքները և թեթև ու սննդի արդյունաբերության հումքի պահանջմունքները։ Առանձնապես անբավարար են մսի, կաթի և այլ անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու տեմպերը։ Դրա հետևանքով անհամապատասխանություն է ստեղծվել մի կողմից արդյունաբերության զարգացման մակարդակի, քաղաքային բնակչության աճման և մյուս կողմից գյուղատնտեսական արտադրության մակարդակի միջև։ Այն ժամանակ, երբ ռեսպուբլիկայի արդյունաբերության արտադրանքը 1956 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, ավելացել է 5 անգամ, քաղաքային բնակչությունը մոտավորապես կրկնապատկվել է, գյուղատնտեսության արտադրանքն ավելացել է միայն 35 տոկոսով։

Դրա համար էլ Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունն իրենց բոլոր ջանքերն ուղղելով աշխատավորների նյութական բարեկեցության բարձրացմանը՝ խնդիր են դրել առաջիկա տարիներին շեշտակի ավելացնել գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ ՍՄԿՊ XX համագումարի դիրեկտիվներով կոնկրետ խնդիրներ են նշված Հայկական ՍՍՌ գյուղատնտեսության հետագա զարգացման համար։ Նախատեսված է մինչև 1960 թվականը, 1955 թվականի համեմատությամբ, ռեսպուբլիկայում ավելացնել հացահատիկի արտադրությունը մոտավորապես 1,5 անգամ, մսինը՝ 2,1 անգամ, կաթինը՝ 2,2 անգամ, բրդինը՝ 1,8 անգամ, բոժոժինը՝ 1,8 անգամ։ Նախատեսված է նաև խաղողագործության, պտղաբուծության ու բամբակաբուծության հետագա զարգացում։ Նախատեսված է ոռոգման ցանց կառուցել 39 հազար հեկտար տարածության վրա և ջրարբի դարձնել 150 հազար հեկտար արոտավայր։

XX համագումարի դիրեկտիվներով առաջադրված խնդիրների ամբողջ վեհությունը հասկանալու և ճիշտ գնահատելու համար բավական է հիշել, որ անցած հնգամյակներից ոչ մեկում Հայաստանի գյուղատնտեսությունը չի հասել գյուղատնտեսական մթերքների աճման արտադրության այնպիսի թափի, որպիսին նախատեսված է վեցերորդ հնգամյակում։ Աճման այնպիսի

տեմպեր, ինչպիսին նախատեսված է վեցերորդ հնգամյակում, չի տեսել և չէր կարող տեսնել ոչ մի կապիտալիստական երկիր։

Գյուղատնտեսության վերելքի այդպիսի ծրագրի իրականացման հնարավորությունը ամրապնդվում է գյուղատնտեսության արտադրությունը է՛լ ավելի մեծ չափերով մեքենայական նոր տեխնիկայով հագեցմամբ, կապիտալ ներդրումների ավելացումով ու հանքային պարարտանյութերի արտադրությամբ, կոլտնտեսությունների հետագա կազմակերպական-տնտեսական ամրապնդումով, գյուղատնտեսության բոլոր ճյուղերի զարգացման գործում ՄՏ կայանների դերի բարձրացումով, նոր սովետական տնտեսությունների կազմակերպումով, աշխատանքի արտադրողականության բարձրացումով և մի շարք այլ միջոցառումներով։

Գյուղատնտեսության առջև դրված խնդիրները լիովին ու ամբողջովին ելնում են նրանից, որ յուրաքանչյուր շրջանի ու տնտեսության բնական և տնտեսական պայմանների ռացիոնալ օգտագործման բազայի վրա ապահովվի բնակչության պարենամթերքների հարաճուն պահանջմունքների բավարարումը, իսկ արդյունաբերությունն ապահովվի հումքով, արտադրանքի մեկ միավորի արտադրման վրա առավել չափով քիչ աշխատանք ու նյութական միջոցներ ծախսելով։

Հայաստանի գյուղատնտեսության առջև դրված խնդիրների իրականացման գործում խոշոր աշխատանք է կատարվում ինչպես կենտրոնում, այնպես էլ տեղերում։ Հեռու չէ այն ժամանակը, երբ գյուղատնտեսության տեղադրումն ու մասնագիտացումը, որ իրականացվում է ռեսպուբլիկայում յուրաքանչյուր կոլտնտեսության ու սովետական տնտեսության բնական և տնտեսական պայմաններին համապատասխան և հաշվի առնելով ինչպես միութենական, այնպես էլ տեղական պահանջմունքները, կտան բարձր արդյունքներ։



Գյուղի աշխատավորները ամեն օր զգում են Կոմունիստական պարտիայի ու Սովետական կառավարության հոգատարությունը սոցիալիստական գյուղատնտեսության բարգավաճման, իրենց նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացման նկատմամբ։ Դա ոգեշնչում է նրանց նորանոր աշխատանքային սխրագործությունների՝ ի փառս մեր Հայրենիքի։ Այս նշանավոր օրերին Հայաստանի, ինչպես և երկրի գյուղատնտեսության բոլոր աշխատողները անսպառ ուժով ու ստեղծագործական եռանդով պայքարում են յուրաքանչյուր շնչին ընկնող կաթի, մսի և յուղի արտադրությամբ առաջիկա տարիներին ԱՄՆ-ին հասնելու՝ պարտիայի առաջադրած խնդիրը պատվով կատարելու համար։ Այդ ուղղությամբ արդեն ձեռք են բերված փայլուն հաջողություններ, որոնցով և սոցիալիստական գյուղատնտեսության աշխատողները դիմավորեցին Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-րդ տարեդարձը։

---

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԷՆԵՐԳԵՏԻԿԱՅԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅԱՆ ՏԱՐԻՆԵՐԻՆ

Վ. ՄԱՐՏԻՆՈՎ

Հայաստանը, որ ցարական Ռուսաստանի հետամնաց ծայրամասերից մեկն էր, Սովետական իշխանության տարիներին դարձել է ծաղկող ռեսպուբլիկա իր հզոր արդյունաբերությամբ, զարգացած գյուղատնտեսությամբ և առաջավոր կուլտուրայով։ Երկրի ազգային վերածնունդը և տնտեսական արագ զարգացումը անխզելի կերպով կապված են հիդրոէներգետիկ շինարարության և լայն էլեկտրիֆիկացման հետ, որ իրագործել են աշխատավորները՝ Կոմունիստական պարտիայի անմիջական ղեկավարությամբ։

Սովետական Հայաստանում էներգետիկան հսկայական զարգացում է ստացել։ Էլեկտրաէներգիայի արտադրությունը 1913 թվականի համեմատությամբ աճել է գրեթե 440 անգամ։ Ներկայումս ռեսպուբլիկայում ավելի շատ էլեկտրաէներգիա է արտադրվում, քան 1913 թվականին ամբողջ ցարական Ռուսաստանում։ Եթե 1913 թվականին Հայաստանի էլեկտրաէներգիայի արտադրության տեսակարար կշիռը կազմել է ամբողջ ցարական Ռուսաստանում արտադրվող էլեկտրաէներգիայի մոտ 0,3 տոկոսը, ապա 1956 թվականին այն կազմել է ՍՍՌՄ-ում արտադրվող էլեկտրաէներգիայի 1,3 տոկոսը։

Ներկայումս Հայաստանում, բնակչության յուրաքանչյուր շնչի հաշվով, ավելի շատ էլեկտրաէներգիա է արտադրվում, քան Անգլիայում, Ֆրանսիայում, Արևմտյան Գերմանիայում, Իտալիայում, Ճապոնիայում և այլ երկրներում։

Հայաստանում տերիտորիայի մեկ քառակուսի կիլոմետրին ավելի շատ արտադրված էլեկտրաէներգիա է ընկնում, քան ԱՄՆ-ում, Կանադայում, Շվեդիայում և շատ ուրիշ երկրներում։

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԷՆԵՐԳԵՏԻԿԱՆ ՄԻՆՉԵՎ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅԱՆ ՀԱՍՏԱՏՈՒՄԸ

Հայաստանի արտադրողական ուժերը մինչև Սովետական իշխանության հաստատումը շատ թույլ էին զարգացած։ Այն ժամանակ Հայաստանը գերազանցապես գյուղատնտեսական երկիր էր։ Սակայն գյուղատնտեսությունն էլ գտնվում էր զարգացման ցածր մակարդակի վրա. հողը մշակվում էր պրիմիտիվ գործիքներով։

Արդյունաբերության տեսակարար կշիռը երկրի էկոնոմիկայում կազմում էր 23,9 տոկոս։ Ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը հասնում էր ընդամենը 20,7 միլիոն ռուբլու։

Արդյունաբերությունն ընդգրկում էր հիմնականում Ալավերդու և Զանգեզուրի հանքագործական ու պղնձաձուլական արտադրաճյուղերը, որոնք շահագործվում էին ֆրանսիական կապիտալի միջոցով, ինչպես նաև Երևանի Շուստովի գինու-կոնյակի ձեռնարկությունը։ Մնացած արտադրությունները, ինչպես, օրինակ, կաշվի, օճառի, գարեջրի, մետաղամշակման և այլ փոքր գործարաններն ու արհեստագործական արտադրությունները տալիս էին արդյունաբերության համախառն արտադրանքի աննշան մասը։

1913 թվականին Հայաստանում աշխատում էին ընդամենը 13 փոքր էլեկտրակայան՝ 3165 կիլովատ ընդհանուր կարողությամբ։ Էլեկտրակայաններից ինը հիդրավլիկական էին և չորսը՝ ջերմային, որոնք գործում էին ներքին այրման շարժիչներով։ Էլեկտրաէներգիայի տարեկան արտադրությունը կազմում էր 5,1 միլիոն կիլովատ-ժամ։

Բոլոր հիդրոկայանները, բացառությամբ Ալավերդու և Ջրախորի հիդրոկայանների, չափազանց պրիմիտիվ էին ինչպես իրենց հիդրոտեխնիկական կառուցումներով, այնպես էլ էլեկտրամեխանիկական սարքավորումով։ Էլեկտրակայաններն աշխատում էին անջատ կերպով՝ իրենց բեռնավորումը ծածկելու համար։ Օրինակ, Երևանում անջատ գործում էին երեք հիդրոկայան՝ իրենց ցանցերի համար։ Նրանցում ամենախոշորը, որը պատկանում էր «Ամպեր» ընկերությանը, ուներ 200 կվտ կարողություն։

Առաջին համաշխարհային պատերազմի տարիներին Հայաստանում պղնձագործական արդյունաբերության արտադրանքը հետզհետե իջավ։ Հետագայում, դաշնակների տիրապետության ժամանակ, բոլորովին քայքայվեց երկրի էկոնոմիկան, այդ թվում նաև էներգետիկ տնտեսությունը։ Մի քանի էլեկտրակայաններ դուրս եկան շարքից և թալանի մատնվեցին։ 1919 թվականին Հայաստանում էլեկտրաէներգիայի արտադրությունն իջել էր մինչև 2 միլիոն կվտ-ժամ, իսկ 1920 թվականին՝ մինչև 1 միլիոն կվտ-ժամ։

1920 թվականի նոյեմբերի 29-ին Հայաստանի բանվոր դասակարգն ու աշխատավոր գյուղացիությունը Կարմիր Բանակի եղբայրական օգնությամբ թոթափեցին հարստահարման դարավոր լուծը և հաստատեցին Սովետական իշխանություն։

Երիտասարդ ռեսպուբլիկայի աշխատավորները Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ ձեռնարկեցին պատերազմի և դաշնակցականների տիրապետության տարիներին քայքայված ժողովրդական տնտեսության վերականգնմանը և նորակառույցների շինարարությանը։

Հայաստանի ազգային վերածնունդը ապահովելու և երկրի էկոնոմիկան բարձրացնելու համար Լենինը 1921 թվականի ապրիլի 14-ի իր նամակում, որն ուղղված էր Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի, Դաղստանի, Լեռնականների ռեսպուբլիկայի կոմունիստ ընկերներին, դրեց երկու հիմնական խնդիր՝ էլեկտրիֆիկացման և ոռոգման զարգացումը։ Նա գրում էր.

«...զարգացնել հարուստ երկրի արտադրողական ուժերը, սպիտակ ածուխը, ոռոգումը։ Ոռոգումը հատկապես կարևոր է հողագործությունն ու անասնապահությունը ինչ գնով էլ որ լինի բարձրացնելու համար... Իսկույն աշխատել բարելավել գյուղացիների դրությունը և սկսել էլեկտրիֆիկացիայի, ոռոգման խոշոր աշխատանքներ» (Լենին, Երկեր, հ. 32, էջ 403—404)։

Լենինի այդ ցուցումները դրվեցին ժողովրդական տնտեսության կազմակերպման ու զարգացման և էներգետիկ բազայի ստեղծման համար տարվող աշխատանքի հիմքում։



Հայաստանը զուրկ է վառելանյութային հանածոներից։ Էլեկտրաէներգիայի արտադրությունը և երկրի էլեկտրիֆիկացումը լիովին կապված են ջրի էներգիայի օգտագործման հետ։ Խոշոր և միջին կարողության հիդրոկայանների կառուցման համար էներգետիկ նշանակություն ունեն միայն մի քանի գետեր։ Դրանցից Հրազդանը (Սևանա լճի օգտագործմամբ) էներգիայի հիմնական աղբյուրն է ռեսպուբլիկայում։ Որոտան և Դեբետ գետերը միասին վերցրած կարող են արտադրել ավելի քիչ էլեկտրաէներգիա, քան Հրազդան գետը։ Նրանց զգալիորեն զիջում են Արփա և Ողջի գետերը։ Էներգետիկ նշանակություն ունի նաև սահմանային Արաքս գետը։

Հայաստանի բոլոր գետերը, հատկապես Սևան-Հրազդան սիստեմը, բացի էներգետիկ օգտագործումից խոշոր նշանակություն ունեն նաև ոռոգման համար։ Տեղական պայմաններում հողերի ոռոգումը գյուղատնտեսության բոլոր ճյուղերում վճռական դեր է խաղում։ Անապատային հողերի հսկայական զանգվածները, կանոնավոր կերպով ջուր ստանալով դառնում են ծաղկող փարթամ դաշտեր, պտղատու և խաղողի այգիներ։ Հենց այդ էլ որոշում է ռեսպուբլիկայի գետերի պարտադիր կոմպլեքսային օգտագործումը էներգետիկայի և ոռոգման կարիքների համար։

## ԷՆԵՐԳԵՏԻԿԱՅԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅԱՆ ՍԿԶԲԻ ՏԱՐԻՆԵՐԻՆ ԵՎ ԱՌԱՋԻՆ ՀՆԳԱՄՅԱԿԻ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ

1922 թվականին սկսվեց Հայաստանի առաջին խոշոր ոռոգիչ ջրանցքի շինարարությունը, որի շնորհիվ հնարավոր դարձավ Ախուրյան գետի (Արևմտյան Արփաչայի) ջուրը փոխադրել Շիրակի հովիտը՝ 12 000 հեկտար հողերի ոռոգման համար։ Ջրթող քարե պատվարը, ջրընդունիչը և մոտ 3 կմ երկարությամբ անճնշումնային թունելը միաժամանակ հանդիսանում են Լենինականի հիդրոկայանի ջրահավաք և դերիվացիոն կառուցումները։ Այդ կառուցումներն այն ժամանակվա համար տեխնիկական մեծ հետաքրքրություն էին ներկայացնում և բարդ ինժեներական խնդիր էին։

1925 թվականի հունիսին Լենինի անվան Շիրակի ջրանցքի գործարկումը համաժողովրդական տոնի բնույթ էր ստացել՝ նշանավորելով մի խոշոր հաղթանակ երկրի բարեկեցությունը բարձրացնելու գործում։ Ջրանցքի բացման օրը հանդիսավոր պայմաններում դրվեց Լենինականի հիդրոէլեկտրակայանի շինարարության հիմքը, որի առաջին հերթը շահագործման հանձնվեց 1928 թվականի նոյեմբերին։

Ս. Օրջոնիկիձեի անվան Լենգէսի գործարկումից հետո իր մեծությամբ ռեսպուբլիկայի երկրորդ քաղաքը՝ Լենինականը և սահմանակից շրջանները արդյունաբերության զարգացման և կոմունալ-կենցաղային սպասարկման հնարավորություն ստացան։ Տեքստիլ կոմբինատի, մանվածքային ֆաբրիկայի, մսի կոմբինատի, ինչպես նաև շինանյութերի, սննդի արդյունաբերության և շատ ուրիշ ձեռնարկությունների կառուցումը վերափոխեց շրջանի էկոնոմիկան

ու կուլտուրան և նպաստեց բանվոր դասակարգի աճմանը։ Լենգէսը օգտագործում է 110 մ նետտո ճնշում և ունի 5,2 հազար կվտ կարողություն։

Ռեսպուբլիկայի մայրաքաղաք Երևանին էլեկտրաէներգիա մատակարարելու համար 1923 թվականին Հրազդան գետի վրա սկսվեց Երևանի առաջին հիդրոէլեկտրակայանի շինարարությունը 4560 կվտ կարողությամբ, որը 16,5 անգամ գերազանցեց այն ժամանակ Երևանում գոյություն ունեցող երեք էլեկտրակայանների կարողությունը։

Առաջին Երգէսը գործարկվել է 1926 թվականի մայիսին։ Նրա հիդրոտեխնիկական կառուցումները նույնպես սերտորեն կապված են ոռոգման կարիքների հետ։ Երևան քաղաքի և սահմանակից շրջանների արդյունաբերությունը, ինչպես նաև կոմունալ և կենցաղային բարեկարգումը սկսեց արագորեն զարգանալ։

Շահագործման հանձնվեց քիմիական արդյունաբերության առաջին ձեռնարկությունը՝ Կարբիդի փոքր գործարանը, սկսվեց տրամվայի շինարարությունը, Էջմիածնի շրջանում՝ Այղր լճի մոտ կառուցվեց առաջին խոշոր պոմպակայանը ոռոգման համար։

Լենգէսի և առաջին Երգէսի էլեկտրաէներգիան շրջաններին մատակարարելու համար կառուցվեցին 22 000 վոլտ լարման էլեկտրահաղորդման գծեր։

Երևան քաղաքի էլեկտրաէներգիայի արագորեն աճող պահանջն ապահովելու համար 1932 թվականի օգոստոսին հարավային ղռերի (անջրդի հողերի) ոռոգման ջրանցքի վրա կառուցվեց և շահագործման հանձնվեց Երևանի երկրորդ հիդրոէլեկտրակայանը 2400 կվտ կարողությամբ։ Երկրորդ Երգէսը Սովետական Միության առաջին ավտոմատ հիդրոկայանն էր։

Փոքր կարողությունների հիդրոկայանների շինարարությունը չէր կարող ապահովել պահանջվող էներգետիկ բազայի ստեղծումը ռեսպուբլիկայի արտադրողական ուժերի զարգացման համար։ Երկրի ինդուստրացման մասին պարտիայի XIV համագումարում ընդունված որոշումից հետո անհրաժեշտ էներգետիկ բազայի ստեղծման նպատակով սկսվեցին ռեսպուբլիկայի հիմնական էներգետիկ աղբյուրի՝ Սևանա լճի օգտագործման և Ձորագետի վրա առաջին շրջանային հզոր էլեկտրակայանի շինարարության հետազոտական աշխատանքները։ Ձորագէսը նախատեսվում էր Կիրովականի քիմիական պարարտանյութերի գործարանին և Ալավերդու պղնձի աճող արդյունաբերությանը էլեկտրաէներգիա մատակարարելու համար։

Ձորագէսը մտավ առաջին հնգամյակի պլանի մեջ։ 1928 թվականի մարտին սկսվեցին նրա կառուցման հիմնական աշխատանքները։ Շինարարությունը գլխավորեց ինժեներ Հ. Ա. Տեր-Աստվածատրյանը. հիդրոկայանը գործարկվեց 1932 թվականի նոյեմբերի 15-ին, Սովետական Հայաստանի 12-րդ տարեդարձի նախօրյակին։ Ձորագէսը Սովետական Միության առաջին շրջանային էլեկտրակայաններից մեկն է և շարք է մտել Վոլխովի (1926 թ.), Զեմո-Ավճալայի (1927 թ.), Դնեպրի (1932 թ. մայիս) հիդրոկայաններից անմիջապես հետո։

Միաժամանակ կառուցվել են Կիրովականի շրջանային ենթակայանը և Ձորագէս—Կիրովական բարձրալեռնային էլեկտրահաղորդման գիծը 110 000 վոլտ լարումով, որը Հայաստանում առաջին անգամն էր կիրառվում։

Ձորագէսը զգալի չափով օրիգինալ կառուցում էր և պահանջել է մի շարք մեծ դժվարությունների հաղթահարում։ Սովետական Միությունում առաջին



անգամ իրագործվել է Ձորագէսի ճնշումնային թունելը (2,5 կմ երկարությամբ և 3,2 մ տրամագծով), ինչպես նաև համաշխարհային պրակտիկայում ամենախոշոր, ինքն իրեն ներս գլորվող ավտոմատ գլանային փականը, որը տեղադրված է պատվարի վրա և պատրաստվել է Պուտիլովյան գործարանում՝ լենինգրադցի պրոֆ. Վ. Գ. Գեբելի նախագծով։

Ձորագէսն օգտագործում է Ձորագետի ջուրը և ունի 114 մ ճնշում։ Հիդրոկայանում տեղադրված են 3 ուղղաձիգ ագրեգատ 22 500 կվտ ընդհանուր կարողությամբ։

Չնայած Ձորագէսի կառուցումների նորությանը, հսկայական դժվարությանը և սարքավորման բարդությանը, ինչպես շինարարության նախագծումն ու կազմակերպումը, այնպես էլ ամբողջ սարքավորման պատրաստումն ու մոնտաժումը կատարվել են բացառապես սովետական մասնագետների և սովետական արդյունաբերության միջոցով։ Ձորագէսում ակնառու կերպով ցույց է տրված Սովետական Միության տեխնիկական հզորության և սոցիալիստական ինդուստրիայի բացառիկ աճը, որ ձեռք էր բերվել նրա գոյության 15 տարում։ Լինելով բարձր ճնշումնային տիպիկ տեղակայում, համեմատաբար կարճ դերիվացիայով (թունելով), Ձորագէսը հանդիսանում է Սովետական Միության ամենաէժան հիդրոկայաններից մեկը։

Ձորագէսի շինարարության ընթացքում կոփվեցին շինարար-էներգետիկների հմուտ կադրեր, որոնք հետագայում է՛լ ավելի խոշոր ու բարդ խնդիրներ հաղթահարեցին ռեսպուբլիկայի էներգետիկայի զարգացման գործում։

Ձորագէսի գործարկման օրը նրա շինարարներին ուղղված Հայաստանի ԿՊ(բ) Կենտրոնական Կոմիտեի ողջույնի մեջ նշվում էր. «...Ձորագէսը Լենինի կարևորագույն պատգամի իրագործման կոթողն է, սոցիալիզմի կառուցման նոր և խոշոր հաղթանակը։ Չափազանց խոշոր է Ձորագէսի նշանակությունը մեր երկրի սոցիալիստական վերակառուցման ասպարեզում։ Ձորագէսի կառուցումն ու գործարկումը՝ երբեմնի ցարական տրորված գաղութը և ապա դաշնակցական դժոխքը՝ սպիտակ ածխի, առաջավոր ինդուստրիայի երկրի վերածող ամենափայլուն դրվագներից մեկն է» («Խորհրդային Հայաստան», 1932, նոյեմբերի 15)։

Ձորագէսի շինարարությունը հանդիսացավ բեկման սահմանագիծ, որն ավարտում էր ռեսպուբլիկայի սոցիալիստական էկոնոմիկայի հիմքի կառուցումը։ Նրա գործարկումից հետո բուռն թափով զարգացան Կիրովական և Ալավերդի քաղաքները, ինչպես նաև նրանց մերձակա շրջանները։ Սկսվեց ռեսպուբլիկայի ծանր արդյունաբերության արագ վերելքը։

## ԷՆԵՐԳԵՏԻԿԱՅԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ԵՐԿՐՈՐԴ ԵՎ ԵՐՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿՆԵՐՈՒՄ

Ռեսպուբլիկայի արտադրողական ուժերի զարգացման համար պահանջվում էր ավելի հզոր էներգետիկ բազա, քան այդ կարելի էր ստանալ Լենգէսի, առաջին Երգէսի և նույնիսկ Ձորագէսի շինարարությամբ։ Մյուս կողմից Արարատյան դաշտավայրի գյուղատնտեսության համար ամենից ավելի արգավանդ և արժեքավոր հողերը ոռոգման կարիք ունեին։ Այդ կապակցությամբ կատարվել էին ռեսպուբլիկայի էներգետիկայի և ոռոգման հիմնական աղբյուրի՝ Սևա-

նա լճի երկարատև ու հեղինակավոր ուսումնասիրություններ, ինչպես նաև
կազմվել էր նրա ժողովրդատնտեսական օգտագործման սխեման։

Սևանա լճի օգտագործման պրոբլեմի էությունն այն է, որ լճի մակարդակը
իջեցվում է ջրի դարավոր պաշարների նվազեցումով։ Երբ լճի մակարդակը իջ-
նում է 50 մետրով, լճի հայելու մակերեսը կրճատվում է 6 անգամ և նույնքան
անգամ էլ պակասում են գոլորշիացման կորուստները։ Դրա հետևանքով հաս-
տատվում է մի նոր հավասարակշիռ դրություն, որը թույլ է տալիս, առանց
լճի մակարդակը հետագայում իջեցնելու, զգալիորեն ավելի մեծ քանակով
ջուր ստանալ, քան ստացվում էր բնական ռեժիմի դեպքում։

Սևանա լճի ջրային բալանսը բերվում է ստորև (ըստ Վ. Կ. Դավիդովի)։

Սևանա լճի բալանսը բնական ռեժիմի դեպքում

| | |
|---|---|
| Լճի մեջ թափվող (28 գետերի) ջուրը . . . . | 770 մլն. խոր. մ. |
| Տեղումները լճի հայելու վրա . . . . . . | 552 մլն. խոր. մ. |
| Ընդամենը տարեկան մուտքը | 1322 մլն. խոր. մ. |
| Հրազդան գետով դուրս հոսող ջրի քանակը . | 50 մլն. խոր. մ. |
| Լճից դուրս եկող ստորերկրյա ջրի քանակը . . | 60 մլն. խոր. մ. |
| Գոլորշիացումը ջրային մակերևույթից . . . | 1212 մլն. խոր. մ. |
| Ընդամենը տարեկան ելքը | 1322 մլն. խոր. մ. |

Այսպիսով, լճի մեջ մտնող ջրի 92 տոկոսը գոլորշիանում է։

Սևանա լճի բալանսը, երբ նրա մակարդակն իջնում է 50 մետրով

| | |
|---|---|
| Լճի մեջ թափվող ջուրը . . . . . . . | 816 մլն. խոր. մ. |
| Տեղումները լճի հայելու վրա . . . . . . | 96 մլն. խոր. մ. |
| Ընդամենը տարեկան մուտքը | 912 մլն. խոր. մ. |
| Օգտագործման համար մնացող ջրի քանակը . | 697 մլն. խոր. մ. |
| Գոլորշիացումը ջրի մակերևույթից . . . . | 215 մլն. խոր. մ. |
| Ընդամենը տարեկան ելքը | 912 մլն. խոր. մ. |

Լիճը կազմված է երկու անհավասար մասից՝ Փոքր Սևանից մոտ 100 մ.
Լիճը կազմված է երկու անհավասար մասից՝ Փոքր Սևանից մոտ 100 մ.
խորությամբ և Մեծ Սևանից՝ 50 մ. խորությամբ և հարթ հատակով։ Հենց այդ
էլ որոշում է լճի ջրային բալանսի նման փոփոխման հնարավորությունը, ինչ
1909 թվականին առաջին անգամ առաջարկել է տնտեսագետ-մելիորատոր
Ս. Ե. Մանասերյանը։

Լճի ջրային մակերևույթը կազմում էր 1416 քառ. կմ. և սխեմայի համա-
ձայն, երբ լճի մակարդակը իջնի 50 մետրով, նա պետք է նվազի մինչև 252
քառ. կիլոմետր։

Սխեմայի համաձայն Սևանա լճից ջուրը պետք է բաց թողնվի տարեկան
1200 մլն. խոր. մետրի չափով և բանեցնի 9 հիդրոկայաններ, որոնք օգ-
տագործում են Հրազդան գետի ամբողջ անկումը (մոտ 1000 մ.), ինչպես նաև
պետք է օգտագործվի 120 հազար հեկտար հողերի ոռոգման համար՝ կառուց-
վող 17 ոռոգիչ ջրանցքների օգնությամբ։ Բաց թողնվող ջրի նշված չափի դեպ-
քում լճի մակարդակի իջեցումը 50 մետրով պետք է տեղի ունենա 50—60 տա-



րում, որից հետո բաց թողնվող ջրի չափը պակասում է մինչև 700 մլն. խոր.
մետր առանց լճի մակարդակը հետագայում իջեցնելու։

Սևանա լճի օգտագործման այդ երկրորդ ժամանակաշրջանում ջուրը բաց
է թողնվում նրանից, գլխավորապես, ոռոգման գրաֆիկի համաձայն։ Կասկա-
դի հիդրոկայանների էլեկտրաէներգիայի արտադրությունն իջնում է մինչև
սկզբնական մեծության 2/5 և այդ ժամանակ պակասորդը համակշռվում է
մյուս էներգետիկ աղբյուրների հաշվին։ Լիճը ներկայացնում է ջրի ելքերի հրս-
կայական հնարավորությունների կարգավորիչ։

Ի դեպ նշենք, որ այժմ կազմվում է Սևանա լճի ջրային ռեսուրսների
օգտագործման նոր հաշվեկշիռ։

Սևանի պրոբլեմի իրագործումը սկսվել է Քանաքեռի հիդրոկայանի շինա-
րարությամբ, որը հանդիսանում է կասկադի հինգերորդ աստիճանը, ունի զգա-
լի կարողություն, գտնվում է խոշոր արդյունաբերական կենտրոն Երևան քա-
ղաքի մոտ և նախատեսվել է առաջին հերթին սինթետիկ կաուչուկի գործարա-
նի, կարբիդի գործարանի և այլ արդյունաբերական ձեռնարկությունների էլեկ-
տրամատակարարման նպատակով։

Այն ժամանակվա համար Քանաքեռգէսի շինարարությունը խոշոր մասշ-
տաբի գործ էր։ Պահանջվում էր կատարել 2 մլն. խոր. մետր հողային և քա-
րային աշխատանքներ, 225 000 խոր. մետր բետոնային, երկաթ-բետոնային և
քարային որմածք, 3000 տոննա մետաղյա կոնստրուկցիաներ (առանց ճնշում-
նային խողովակաշարի) և այլն։ Շինարարներն ստիպված էին հաղթահա-
րել մի շարք բացառիկ մեծ դժվարություններ։

Շինարարների և մոնտաժողների հերոսական կոլեկտիվն ապահովեց Քա-
նաքեռգէսի առաջին ագրեգատի գործարկումը 1936 թվականի դեկտեմբերի
10-ին։ Հիդրոկայանի կառուցումները կազմված են 4 կմ. ընդհանուր երկարու-
թյամբ թունելներից և 8,5 կիլոմետր երկարությամբ ջրանցքներից։ Կայանի
գլխային հանգույցը բաղկացած է բետոնե պատվարից, որն ունի ավտոմատիկ
սեգմենտային փականակներ և ջրընդունիչ։ Պատվարից ոչ հեռու գտնվում է
երկկամերային ջրարանը։ Քանաքեռգէսի շահա-
գործման փորձառության ընդհանուր ելակետային տարրերը
վիզա-առանցքային տիպի տուրբիններն այն ժամանակ առաջին անգամ են
կառուցվել նման մի բարձր ճնշման համար (169 մ.)։

Քանաքեռգէսի շինարարությունում օրիգինալ կերպով լուծվել են մի շարք
տեխնիկական լուրջ հարցեր։ 1937 թվականին գործարկվել են կայանի առաջին
հերթի մնացած 3 ագրեգատները, իսկ 1940 թվականին ավարտվել է կայանի
երկրորդ հերթը։ Միաժամանակ կատարվել է էլեկտրահաղորդման գծերի և են-
թակայանների շինարարությունը։ Էներգետիկ օբյեկտների շինարարությունն
ընթացել է միանգամայն դժվարին պայմաններում, որոնք բացատրվում էին
ինչպես առաջին և երկրորդ հնգամյակների ժամանակաշրջանի ընդհանուր
դժվարություններով, այնպես էլ հենց իրենց օբյեկտների առանձնահատկու-
թյուններով։

1938 թվականի մայիսին շահագործման է հանձնվել 110 000 վոլտ լար-
ման Քանաքեռգէս—Սպիտակ—Կիրովականի ենթակայան էլեկտրահաղորդման
գիծը և իրագործվել է Քանաքեռգէսի զուգահեռ աշխատանքը Ձորագէսի հետ։
Նույն թվականի սեպտեմբերին ավարտվել և փորձարկվել է 110 000 վոլտ
լարման Սպիտակի ենթակայանը և 110 000 վոլտ լարման Սպիտակ—Լենինա-
կանի էլեկտրահաղորդման գիծը։ Իսկ նույն թվականի հոկտեմբերին օգտա-

գործվել է 110 000 վոլտ լարման Լենինականի շրջանային ենթակայանը և Լենգէսը միացվել է Հայաստանի հիդրոկայանների փնջին՝ զուգահեռ աշխատանքի համար։ Դրանով էլ ավարտվել է Հայաստանի հիդրոկայանների փընջավորումը և հայկական էներգոսիստեմի ստեղծումը։ Տեխնիկական տեսակետից Հայաստանի էլեկտրացանցերը մեծ հետաքրքրություն են ներկայացնում։ Ենթակայանները գտնվում են բարձր թվանիշների վրա և հագեցված են այն ժամանակվա նորագույն սարքավորումով։ Էլեկտրահաղորդման գծերի տրասսան տեղ-տեղ անցնում է ծովի մակերևույթից ավելի քան 2000 մ. բարձրության վրա։

Քանաքեռգէսի գործարկումից և Հայկական միասնական էներգոսիստեմի ստեղծումից հետո ռեսպուբլիկայի արդյունաբերությունը և ամբողջ ժողովրդական տնտեսությունը ստացան իրենց հետագա բուռն զարգացման հնարավորությունը։

1940 թվականին Հայաստանի արդյունաբերության համախառն արտադրանքը 1913 թվականի համեմատությամբ ավելացել էր 21 անգամ։ Էլեկտրաէներգիայի արտադրությունը աճել էր 77 անգամ և կազմել 395,3 մլն. կվտ-ժամ։

Հայաստանի արդյունաբերության համախառն արտադրանքի տեսակարար կշիռը ողջ ժողովրդական տնտեսության արտադրանքի ընդհանուր ծավալում 1940 թվականին կազմել է 80,8 տոկոս, մինչդեռ 1913 թվականին նա հավասար է եղել 23,9 տոկոսի։

Հայրենական Մեծ պատերազմի ժամանակաշրջանում հայկական էներգոսիստեմի հիդրոկայանները անխափան կերպով էլեկտրաէներգիա են մատակարարել սպառողներին, ընդ որում, արդյունաբերական ձեռնարկությունների մեծ մասն աշխատել է ռազմաճակատի կարիքների համար։

1943 թվականին վերսկսվեցին Սևանի ջրընդունիչի և կասկադի գլխային կայանի՝ Սևանգէսի կառուցման աշխատանքները, որոնք ընդհատվել էին պատերազմի տարիներին։

## ԷՆԵՐԳԵՏԻԿԱՆ ՀԵՏՊԱՏԵՐԱԶՄՅԱՆ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ

Հայրենական Մեծ պատերազմի հաղթական ավարտումից հետո ամեն կերպ արագացվել են Սևանի մշտական ջրընդունիչի և Սևանգէսի շինարարության աշխատանքները։

1947 թվականին ծավալվեցին կասկադի ամենահզոր՝ Գյումուշի հիդրոկայանի և 110 000 վոլտ լարման միացնող էլեկտրահաղորդման գծերի շինարարության աշխատանքները։

1948 թվականի նոյեմբերին շահագործման հանձնվեց Սևանի մշտական ջրընդունիչը։ Ցուցաբերելով հերոսական աշխատանքի օրինակներ, 1949 թվականի կեսերին Սևանգէսի շինարարների և մոնտաժողների կոլեկտիվն ավարտեց հիմնական շինարարական ու մոնտաժային աշխատանքները։ Սևանի ստորերկրյա հիդրոկայանը գործարկվեց 1949 թվականի հուլիսին և արդյունաբերական հոսանք տվեց հիդրոկայանների միասնական փնջին՝ 110 000 վոլտ լարման Քանաքեռգէս—Սևանգէս էլեկտրահաղորդման գծով, որն այն ժամանակ արդեն շահագործման էր հանձնվել։ Կայանում տեղադրված են երկու ագրեգատ։ Կայանի գործարկման ժամանակ օգտագործվող ճնշումը կազ-



մում էր 62 մ.։ Կայանի կողմից օգտագործվող ճնշումը հետզհետե պակասելու պատճառով նախատեսվում է երկու անգամ փոխարինել տուրբինների բանեցնող անիվները։

Սևանգէսի շինարարությունում հաջողությամբ լուծվել են մի շարք տեխնիկական հարցեր ինչպես շինարարության մեթոդների, այնպես էլ հիդրոտեխնիկական կառուցումների կոնստրուկցիաների գծով։

Ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման չորրորդ հնգամյակի տարիներին Հայաստանում էլեկտրաէներգիայի արտադրությունը 1940 թվականի համեմատությամբ աճել էր 2,4 անգամ և 1950 թվականին կազմել 949,3 մլն. կվտ-ժամ։

Հայկական ՍՍՌ ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը 1940 թվականի համեմատությամբ աճել էր 2,5 անգամ, իսկ մեքենաշինության և մետաղամշակման արտադրանքը՝ 7,2 անգամ։

1953 թվականի ապրիլին շարք մտավ Սևան—Հրազդանի կասկադի Գյումուշի հիդրոկայանը, որը խիստ բարձրացրեց Սևանա լճի ջրի օգտագործումը և էլեկտրաէներգիայի արտադրությունը։ Հիդրոկայանի շառավիղա-առանցքային տուրբինները կառուցված են 285 մ. ռեկորդային ճնշման համար։ Կայանի կառուցումներն ընդգրկում են 11,5 կմ. երկարությամբ թունելներ և 7 կմ. երկարությամբ ջրանցքներ։ Օրիգինալ կերպով են կատարվել կայանային հանգույցի և օրական կարգավորման ավազանի կառուցումները։

Գյումուշգէսը հանդիսանում է կասկադի և էներգոսիստեմի հիմնական կարգավորիչ կայանը. նա ունի 4 ագրեգատ 224 հազար կվտ ընդհանուր կարողությամբ։

Գյումուշգէսի գործարկումից հետո խիստ թեթևացավ ռեսպուբլիկայի լարված էներգոբալանսը, քանի որ էլեկտրաէներգիայի արդյունաբերական սպառումն էներգետիկ բազայի զարգացման տեմպերի դանդաղեցման պատճառով առաջ էր ընկել էլեկտրաէներգիայի արտադրությունից։

Գյումուշգէսշինի անվան կոլեկտիվը անձնվեր և օրինակելի կերպով կատարել է կայանի բարդ կառուցումները, որոնք ճարտարապետական տեսակետից շատ գեղեցիկ են ձևավորված, համապատասխանելով մեր դարաշրջանի վեհությանը և մեր կուլտուրայի ձեռք բերած բարձր մակարդակին։

1953 թվականին սկսվել է Սևան—Հրազդանի կասկադի չորրորդ աստիճանի՝ Արզնու հիդրոկայանի շինարարությունը։

Ժողովրդական տնտեսության զարգացման հինգերորդ հնգամյակի տարիներին Հայկական ՍՍՌ ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը աճել է 1,9 անգամ, իսկ 1940 թվականի համեմատությամբ՝ 4,7 անգամ։ Հնգամյակի ընթացքում էլեկտրաէներգիայի արտադրությունն աճել է 2,3 անգամ, իսկ 1940 թվականի համեմատությամբ՝ 5,6 անգամ, կազմելով 1955 թվականին 2214,7 մլն. կվտ-ժամ։

Ներկայումս Հայաստանի արդյունաբերության առաջատար ճյուղերն են գունավոր մետալուրգիան, մեքենաշինությունը, էլեկտրատեխնիկական, քիմիական և շինարարական նյութերի արդյունաբերությունը։ Լայն զարգացում են ստացել նաև թեթև և սննդի արդյունաբերությունը։

Գյուղատնտեսության լայն մեքենայացումը և էլեկտրիֆիկացումը զգալիորեն բարձրացրել են կոլտնտեսային աշխատանքի արտադրողականությունը։ Վեցերորդ հնգամյակի սկզբին արդեն էլեկտրիֆիկացվել էին սովետական տըն-

տեսությունների 85 տոկոսը, կոլտնտեսությունների՝ 79 տոկոսը և բոլոր ՄՏ կայանները: 1952 թվականի հոկտեմբերին էլեկտրիֆիկացվել է նաև երկաթուղու Ալավերդի—Սանահին—Լենինական գծամասը:

Հինգերորդ հնգամյակի տարիներին հայկական էներգետիկ սիստեմում ավտոմատիկայի արմատավորման աշխատանքներ, ինչպես օրինակ՝ էլեկտրակայանների ու էլեկտրացանցերի ավտոմատացումը և էներգոսիստեմի տելեմեխանիզացիան:

Էներգոսիստեմի բոլոր հիդրոկայանների ագրեգատները լրիվին ավտոմատացվել են: Դրա հետ միաժամանակ կատարվել են էներգոսիստեմի էլեկտրոավտոմատիկայի արմատավորման աշխատանքներ, ինչպես, օրինակ, էլեկտրահաղորդման գծերի կրկնակի ավտոմատիկ միացումը, ռեզերվի ագրեգատների ավտոմատիկ գործարկումը, ավտոմատիկ բեռնաթափումը և մի շարք այլ սարքեր:

Այդ ամենը զգալիորեն բարձրացրել է էներգոսիստեմի աշխատանքի հուսալիությունը, թեթևացրել է սպասարկող անձնակազմի աշխատանքը և ազատել նրա մոտ 50 տոկոսը, տալով արտադրանքի ինքնարժեքի իջեցում և աշխատանքի արտադրողականության բարձրացում: Հինգերորդ հնգամյակի ընթացքում հիդրոկայանների տեղադրված կարողության 1000 կվտ-ին ընկնող անձնակազմի թիվը պակասել է գրեթե 3 անգամ: Աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 300 տոկոսով:

Հիդրոագրեգատների ավտոմատացման ավարտումը հնարավորություն տվեց էներգոսիստեմում արմատավորելու ավելի կատարյալ տեխնիկա՝ տելեմեխանիզացիա: Ներկայումս տելեմեխանիզացված են էներգոսիստեմի բոլոր հիմնական հիդրոկայաններն ու ենթակայանները, ինչպես նաև կենտրոնական դիսպետչերական կայանը:

Հիդրոկայանների տելեմեխանիզացիան, բացի հիմնական սարքավորման դրության հեռազդանշումից, ընդգրկում է նույնպես էլեկտրակայանների աշխատանքի ռեժիմը բնութագրող մեծությունների հեռաչափումը, ինչպես նաև հիմնական ագրեգատների հեռաղեկավարումը: Այդ նշանակում է, որ ագրեգատների գործարկումը, կանգառումը, բեռնավորումների փոփոխումը կատարվում է կենտրոնական դիսպետչերական կայանից:

Վերևում թվարկված, ինչպես նաև մյուս միջոցառումները, որոնք արմատավորվել և յուրացվել են էներգոսիստեմում, նպաստել են շահագործման տեխնիկական կուլտուրայի բարձրացմանը: Դրա շնորհիվ հայկական էներգոսիստեմը դուրս է եկել Սովետական Միության առաջավոր էներգոսիստեմների շարքը:

## ԷՆԵՐԳԵՏԻԿԱՆ ՎԵՑԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿՈՒՄ

Հայաստանի էներգետիկ բազայի զարգացումը վեցերորդ հնգամյակում, ՍՄԿԿ XX համագումարի դիրեկտիվների համաձայն, ընդգրկում է հիդրոշինարարության մեծ ծրագիր:

Հնգամյակի ընթացքում էլեկտրաէներգիայի արտադրությունը պետք է ավելացվի մոտավորապես 1,3 անգամ: Այդ նպատակով նախատեսվում է ավարտել Սևան-Հրազդանի կասկադի բոլոր հիդրոկայանների շինարարությու-



նը և սկսել Որոտանի կասկադի ամենախոշոր հիդրոկայանի՝ Տաթևի հիդրոկայանի շինարարությունը: Հնգամյակի վերջում նախագծվում է միավորել Վրացական, Ադրբեջանական և Հայկական էներգոսիստեմները այն հաշվով, որ հետագայում կարելի լինի նրանց միավորել Հյուսիսային Կովկասի հետ, իսկ այնուհետև ՍՍՌՄ եվրոպական մասի միասնական էներգոսիստեմի հետ:

Հայկական ՍՍՌ մյուս գետերի վրա միաժամանակ ուսումնասիրվում և նախագծվում են այլ հիդրոուժային տեղակայումներ:

Հիդրոկայանների շինարարության հետ միասին կառուցվում են նաև էլեկտրահաղորդման գծեր և ենթակայաններ, այդ թվում Հայաստանում առաջին 220 000 վոլտ լարման Աթարբեկյան—Տաթև էլեկտրահաղորդման գիծը, որը մինչև Աթարբեկյանգէսի գործարկումը ժամանակավորապես աշխատելու է 110 000 վոլտ լարումով:

Վեցերորդ հնգամյակի առաջին երկու տարիներին ռեսպուբլիկայում էներգոշինարարությունը տարվել է աճող տեմպերով:

1956 թվականի դեկտեմբերին գործարկվել է Արզնու հիդրոկայանը, որը Սևանա լճի ջրի էներգիայի օգտագործումը բարձրացրել է մինչև 65 տոկոս, հիդրոկայանի օգտագործած ճնշումը 121 մ. է:

1957 թվականին ծավալվել է Երևանի հիդրոկայանի շինարարությունը: Միաժամանակ ինտենսիվ կերպով ծավալվում են Աթարբեկյանի հիդրոկայանի շինարարական աշխատանքները:

Դեռ 1956 թվականին ավարտվել է կասկադի ամենաստորին աստիճանների՝ վերին ու ստորին Արգավանդի հիդրոկայանների և Նորագավիթի հիդրոկայանի նախագծումը:

1957 թվականին կավարտվեն և կգործարկվեն 3 շրջանային խոշոր ենթակայան 100 000 վոլտ լարումով իրենց համապատասխան էլեկտրահաղորդման գծերով: Հայկական էներգոսիստեմում տեղի է ունենում նորագույն առաջավոր տեխնիկայի հետագա արմատավորում:

Ռեսպուբլիկայի հումքային հզոր ռեսուրսներն իրենց օգտագործման համար պահանջում են ավելացնել էներգետիկ բազայի աճման տեմպերը: Մյուս կողմից նպատակահարմար է պակասեցնել Սևանա լճից բաց թողնվող ջրի քանակը, լիճը պահպանել բարձր թվանիշերի վրա՝ որպես ոռոգման համար օգտագործվող ջրի աղբյուր և որպես միավորված էներգոսիստեմի ռեզերվ ու բազմամյա կարգավորիչ: Դրա հետ միասին լիճը հանդիսանում է հարուստ աղբյուր արժեքավոր տեսակի ձկների աճեցման և արդյունահանման համար:

Տեխնիկայի և գիտության զարգացման ժամանակակից մակարդակի պայմաններում այդ բարդ և դժվար խնդրի լուծումը միանգամայն իրական է, առանց ռեսպուբլիկայի էկոնոմիկայի հետագա զարգացման և աշխատավորների բարեկեցության բարձրացման շահերը սահմանափակելու: Այդ ուղղությամբ գիտա-հետազոտական, նախագծային, շինարարական և մյուս կազմակերպությունները լայնածավալ աշխատանքներ են ձեռնարկել:

Հաշվի առնելով Սևանի լճի պահպանման բացառիկ կարևորությունը մեր ռեսպուբլիկայի համար, ՀԿՊ կենտկոմն ու Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետը ձեռնարկել են մի շարք միջոցառումներ Սևանա լճը հետագայում ավելի խնայողաբար ու ռացիոնալ օգտագործելու համար, ինչպես նաև լճի մակարդակը ավելի բարձր թվանիշերի վրա պահպանելու համար:

Այդ միջոցառումներից մեկը առաջին հերթին Սևան—Հրազդանի կասկադի

բոլոր հիդրոկայանների շինարարության արագ ավարտումն է և հիդրոկայանների շինարարության արագացումը ռեսպուբլիկայի մյուս գետերի վրա (օրինակ՝ Որոտանի, Դեբետի)։

Դրա հետ միասին առաջադրվում է պետական շրջանային էլեկտրակայանի՝ ԳՐԷՍ-ի շինարարության հարցը, բացի դրանից նախատեսվում է ջերմամատակարար էլեկտրոցենտրալի՝ ՏԷՑ-ի շինարարությունը, որը թույլ կտա ավելի էֆեկտիվ օգտագործել ռեսպուբլիկա ներմուծվող վառելանյութը։ Գազի մատակարարումը Հայաստանին թույլ կտա գազիֆիկացնել ռեսպուբլիկայի խոշոր կենտրոնները և նպաստավոր ազդեցություն կունենա էներգոբալանսի վրա։

Ոռոգման կարիքների համար Սևանա լճից բաց թողնվող ջրի քանակը կրճատելու և այն համալրելու համար նախատեսվում են մի շարք միջոցառումներ։ Մեծ աշխատանքներ են տարվում ոռոգիչ սիստեմների օգտակար գործողության գործակիցը բարձրացնելու նպատակով։ Լայնորեն ծավալվել են գիտական հետազոտությունները, հետախուզումները և ուսումնասիրությունները մյուս ավազանների ջրերը Սևանի լիճ փոխադրելու համար։

Ջրերի փոխադրումները, Սևանա լիճը պահպանելով բարձր թվանիշերի վրա՝ այն դարձնում են միաժամանակ բազմամյա կարգավորման ջրակուտակիչ (հիդրոակումլյատոր)։

Ռեալ, իրագործելի միջոցառում է հանդիսանում նաև ոռոգման կարիքների համար Արարատյան դաշտավայրի ստորերկրյա ջրերի օգտագործումը, որը համապատասխանորեն թույլ կտա կրճատելու ոռոգման համար Սևանա լճից բաց թողնվող ջրի քանակը։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի քառասնամյակը Հայաստանը դիմավորեց, հանրագումարի բերելով պատմական հսկայական նվաճումներն իր բոլոր նյութական և ստեղծագործական ուժերի նոր վերելքի իրադրության մեջ։

Ժողովրդական Տնտեսության Խորհրդի կազմակերպումը, տնտեսական կառավարման հնացած և զարգացումն արգելակող ձևերի վերացումը կօգնի լավագույն կերպով և կարճ ժամկետներում լուծելու այն կարևոր խնդիրները, որոնք կանգնած են Հայաստանի աշխատավորների առաջ կոմունիզմի կառուցման ճանապարհին։

---

# ՀԱՅԿԱԿԱՆ ԳՈՐԾԵՐԻ ԿՈՄԻՍԱՐԻԱՏԸ ԵՎ ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ԳԱՂԱՓԱՐՆԵՐԻ ՏԱՐԱԾՈՒՄԸ

Ս. ԱԼԻԽԱՆՅԱՆ

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան շրջադարձային կետ հանդիսացավ ժողովուրդների կյանքում։ Նա արմատապես փոխեց Ռուսաստանի բազմազգ ժողովուրդների հասարակական կարգը և պայմաններ ստեղծեց տիրող հետամնացությունը վերացնելու և Ռուսաստանը հզոր սոցիալիստական պետություն դարձնելու համար։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի շնորհիվ ստեղծվեց աշխարհում առաջին սոցիալիստական պետությունը, որը հռչակեց խաղաղության և ժողովուրդների բարեկամության քաղաքականություն, Ռուսաստանի բոլոր ժողովուրդների հավասարության ու սուվերենության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշի ներքո նրանց մեկ միասնական եղբայրական ընտանիքում համախմբելու քաղաքականություն։

Վ. Ի. Լենինի ղեկավարությամբ աշխարհում ամենադեմոկրատական Սովետական պետության ստեղծումն ապահովեց Ռուսաստանում ազգային հարցի արմատական լուծումը, սոցիալիստական ազգերի կազմավորումը։

1917 թվականի նոյեմբերի 22-ին Վ. Ի. Լենինը հայտարարեց, որ «Մենք պետք է ոչնչացնենք այն հին, արյունալի ու կեղտոտ անցյալը, երբ կապիտալիստ-կեղեքիչների Ռուսաստանը մյուս ազգերի նկատմամբ դահճի դեր էր կատարում։ Այդ անցյալը մենք կոչնչացնենք, մենք այդ անցյալից քարը-քարի վրա չենք թողնի» (Երկեր, հ. 26, էջ 420)։

Ազգային այս, և միայն այս քաղաքականության կիրառումը, որը մշակվել է պարտիայի առաջնորդ Լենինի ղեկավարությամբ, ապահովեց Ռուսաստանի ոչ ռուս բոլոր ժողովուրդների վստահությունը ռուսական պրոլետարիատի նկատմամբ, նրանց ներգրավումը պրոլետարական ռևոլյուցիայի մեջ՝ հանուն սովետական կարգերի հաստատման ամբողջ երկրում։ 1917 թվականի նոյեմբերի 8-ին Սովետների Համառուսաստանյան 2-րդ համագումարը Վ. Ի. Լենինի առաջարկությամբ ստեղծեց Ազգությունների Գործերի Ժողովրդական կոմիսարիատ, որը գլխավորեց Ի. Ստալինը։ Դա բոլշևիկյան պարտիայի ազգային քաղաքականության ծնունդն էր։ Ազգործժողկոմատը պետական ապարատի այնպիսի մի նոր օրգան էր, որի նմանը չէր եղել և չէր էլ կարող լինել բուրժուական կարգերում։ Բուրժուական պետական ապարատի, մասնավորապես իմպերիալիստական պետությունների գաղութային մինիստրությունների ամբողջ գործունեությունն ուղղված է եղել և ուղղված է գաղութային ճնշված ժողովուրդների հակաիմպերիալիստական և ազգային ազատագրական շարժումների դեմ։

Ազգությունների Գործերի ժողովրդական կոմիսարիատի խնդիրը, ընդհակառակը, Ռուսաստանի ճնշված ազգերի ազատագրման և ազգային հարցի արմատական լուծման վերաբերյալ պարտիայի և կառավարության քաղաքականությունը գործնականորեն կիրառելն էր, այդ քաղաքականության կենսագործման վրա պետական վերահսկողություն իրականացնելը։

Ազգությունների Գործերի ժողովրդական կոմիսարիատին առընթեր կազմակերպվեցին ազգային կոմիսարիատներ և բաժիններ, որոնց առաջնահերթ խնդիրն էր իրականացնել պարտիայի գիծը՝ Ռուսաստանի ժողովուրդներին Հոկտեմբերյան ռևոլյուցիայի դրոշի ներքո համախմբելու, բուրժուա-նացիոնալիստական պարտիաների և իմպերիալիստական պետությունների գործակալ «ազգային» կառավարությունների հակառևոլյուցիոն գործողությունները մերկացնելու և սովետական կարգեր հաստատելու գործում։

Ազգային կոմիսարիատները և նրանց բաժինները Ռուսաստանի ժողովուրդների մեջ Հոկտեմբերյան ռևոլյուցիայի գաղափարները տարածող և սովետական պետականության սկզբունքները կիրառող օրգաններ էին։ Իրենց ծագման շրջանում ազգային կոմիսարիատների և բաժինների ֆունկցիաներն այնքան լայն ու բազմակողմանի էին, որ ընդգրկում էին ազգերի կյանքի բոլոր կողմերը, նրանց վերաբերող բոլոր հարցերը։

Ազգային կոմիսարիատները, բաժինները և նրանց տեղական օրգանները պրոլետարիատի դիկտատուրայի ազգային այն հիմնարկներն էին, որոնցում Կոմունիստական պարտիայի հոգատարությամբ աճում և կոփվում էին ապագա ռեսպուբլիկաների պետական և պարտիական ապարատի կադրերը։

***

1917 թվականի դեկտեմբերին, Վ. Ի. Լենինի նախաձեռնությամբ, Ազգությունների Գործերի ժողովրդական կոմիսարիատին կից ստեղծվեց նաև Հայկական Գործերի կոմիսարիատ։

Վ. Ի. Լենինի առաջարկությամբ Ժողկոմսովետը Հայկական Գործերի կոմիսար էր նշանակել սովետական պետական ականավոր գործիչ, պրոֆեսիոնալ ռևոլյուցիոներ, Վ. Ի. Լենինի զինակից Վարլամ Ալեքսանի Ավանեսովին, իսկ կոմիսարի տեղակալ՝ բոլշևիկ բանաստեղծ Վահան Սուքիասի Տերյանին։

Հայկական Գործերի կոմիսարիատը Ռուսաստանի այն բոլոր նահանգներում և քաղաքներում, որտեղ կենտրոնացված էր զգալի թվով հայ բնակչություն, տեղական Սովետներին կից 1918—1920 թթ. կազմակերպեց իր տեղական բաժանմունքները, լիազորությունները և տեղական Սովետների ազգային փոքրամասնությունների բաժիններում՝ իր ենթաբաժինները կամ սեկցիաները։ Կազմակերպվեցին 8 բաժանմունք և 12 լիազորություն։

Որպես պրոլետարիատի պետության օրգան, Հայկական Գործերի կոմիսարիատն իր ողջ գործունեությունը ենթարկեց հայ ժողովրդին ֆիզիկական բնաջնջումից փրկելու, Հայաստանն իմպերիալիզմի լծից ազատագրելու, օտարերկրյա տերությունների գործակալ դաշնակների արյունոտ տիրապետությունը տապալելու և Սովետական իշխանություն հաստատելու համար Կոմունիստական պարտիայի մղած պայքարին։

Հայկական Գործերի կոմիսարիատը դեռ իր հիմնադրման օրերին ձեռնամուխ եղավ հայ ժողովրդի ազատագրման համար վճռական նշանակություն ունեցող լուրջ խնդիրների լուծմանը։



Ժողկոմսովետի նախագահ Վ. Ի. Լենինի անմիջական ցուցումներով, Վ. Ավանեսովը և Վ. Տերյանը նախապատրաստական անհրաժեշտ աշխատանք կատարեցին Արևմտյան Հայաստանի հարցը Ժողկոմսովետում քննելու և «Թուրքահայաստանի» մասին դեկրետ ընդունելու ուղղությամբ։ Հայկական Գործերի կոմիսարիատը խոշոր դեր պետք է խաղար այդ դեկրետի իրագործման հարցում։

Վ. Ի. Լենինը Հայկական Գործերի կոմիսարիատին հանձնարարեց համապատասխան նյութեր հավաքել և Բրեստ-Լիտովսկի հաշտության բանակցություններում հանդես գալ՝ հայ ժողովրդի շահերը թուրքական ագրեսիայից պաշտպանելու համար։ Հայկական Գործերի կոմիսարիատը ստանալով կառավարության այդ շտապ հանձնարարությունը, անմիջապես անհրաժեշտ նյութեր և տվյալներ հավաքեց և դրանք դրեց կոմիսարի տեղակալ Վ. Տերյանի տրամադրության տակ, որը Սովետական կառավարության կողմից Վ. Ի. Լենինի ստորագրած վկայականով մասնակցում էր Բրեստ-Լիտովսկի հաշտության բանակցություններին, որպես հայկական հարցով խորհրդական։

Հայկական Գործերի կոմիսարիատը իր հիմնադրման օրից անմիջապես զբաղվեց Հոկտեմբերյան ռևոլյուցիայի մեծ գաղափարները հայ ժողովրդի մեջ տարածելու գործով։

Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների հետ կապ հաստատելու և Սովետական իշխանության առաջին դեկրետները հայ ժողովրդի մեջ մասսայականացնելու նպատակով կոմիսարիատն իր 30 ներկայացուցիչներն է ուղարկում Անդրկովկաս, Հյուսիսային Կովկաս և Հայաստան։

«Մեզ, թեև մեծ դժվարությամբ, հաջողվեց զանազան քաղաքներից Կովկաս ուղարկել Սովետական իշխանության ավելի քան 30 ագիտատոր և պրոպագանդիստ ընկերներ,— գրում է Վ. Ավանեսովը... Նկատի ունենալով մեր առջև ծագած դժվարությունները և գործի շտապողականությունը, մենք որպես մեր կոմիսարներ Կովկաս ուղարկվող ընկերներին հանձնարարել ենք հայերեն թարգմանությամբ հրատարակել Ժողովրդական Կոմիսարների Սովետի և Կենտգործկոմի առավել կարևոր դեկրետները և կարգադրությունները...» (ЦГАОР, ф. 1318, д. 477, л. 41)։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի գաղափարները Ռուսաստանի ժողովուրդների մեջ տարածելու հիմնական զենքը ազգային լեզուներով հրատարակվող բոլշևիկյան թերթերը և կոմունիստական գրականությունն էին։ Հրատարակչական գործն այդ պատճառով ազգային կոմիսարիատների և բաժինների գործունեության մեջ շատ կարևոր բնագավառ էր։

Կոմունիստական պարտիայի Կենտկոմը ձեռք առավ բոլոր միջոցները Ազգործժողկոմատի և նրա ազգային կոմիսարիատների, նրանց տեղական օրգանների կողմից թերթեր հրատարակելու գործը արագացնելու ուղղությամբ։

Վ. Ի. Լենինն անձամբ զբաղվում էր ազգային լեզուներով բոլշևիկյան թերթերի հրատարակության և կոմունիստական գրականության, հատկապես Սովետական իշխանության դեկրետների թարգմանության և տարածման գործով։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի գաղափարները, Կոմունիստական պարտիայի ազգային քաղաքականությունը Ռուսաստանի ժողովուրդների մեջ պրոպագանդելու ուղղությամբ բացառիկ կարևոր դեր խաղաց Ազգությունների Գործերի ժողովրդական կոմիսարիատի պաշտոնական օրգան «Жизнь национальностей» թերթը։ Նա լուրջ օգնություն ցույց տվեց բոլշևիկյան

պարտիայի ազգային կազմակերպություններին, տալով նրանց ղեկավար ցուցումներ լենինյան ազգային քաղաքականության կենսագործման ասպարեզում։ Լրագիրը մեծ տեղ էր հատկացնում Ռուսաստանի ժողովուրդների պայքարի և ազգային կոմիսարիատների ու նրանց տեղական օրգանների աշխատանքների լուսաբանմանը։ Թերթը շատ խմբագրական հոդվածներ է տպագրել նաև հայ ժողովրդի մասին։ Հայաստանի և Հայկական Գործերի կոմիսարիատի գործունեության վերաբերյալ թերթում տպագրված են ավելի քան 70 հոդված և ինֆորմացիա, որոնք այժմ ստույգ աղբյուր են ինչպես Հայաստանի աշխատավորության պայքարի պատմության, այնպես էլ Հայկական Գործերի կոմիսարիատի և նրա տեղական բաժանմունքների գործունեության ուսումնասիրության համար։

Սովետական իշխանության և Կոմունիստական պարտիայի դեկրետները, դեկլարացիաները, որոշումներն ու կոչերը, Վ. Ի. Լենինի ճառերն ու հոդվածները հայ ժողովրդի մեջ տարածելու, հայ բուրժուա-նացիոնալիստական պարտիաների հակառևոլյուցիոն էությունն ու գործելակերպը մերկացնելու, հայ ժողովրդի նկատմամբ Սովետական իշխանության քաղաքականությունը լուսաբանելու համար հույժ անհրաժեշտ էր հրատարակել Հայկական Գործերի կոմիսարիատի պաշտոնական թերթ։ Այդ գործին էլ ձեռնամուխ եղավ կոմիսարիատը։ Հրատարակչական գործի կազմակերպման դժվարությունների մասին Վ. Տերյանը գրել է.

«Կոմիսարիատում աշխատող խիստ սակավաթիվ ընկերները ստիպված եղան բավականին շատ աշխատանք կատարել անհրաժեշտ տպարան սարքավորելու, գրական որոշ ուժեր գտնելու և հրատարակչական գործունեության ձեռնամուխ լինելու համար, որպեսզի հնարավորություն ունենան օգտագործելու տպագիր խոսքը հայ մասսաների մեջ կոմունիզմի գաղափարները տարածելու համար» (ЦГАОР, ф. 1318, д. 41, л. 88)։

1918 թվականի մարտի վերջին Ավանեսովը հատուկ գրությամբ դիմում է ՌՍՖՍՌ Կենտգործկոմին, որի մեջ ասված է.

«Սովետական իշխանության գաղափարը հայ բանվորների և գյուղացիների լայն խավերում պրոպագանդելու և Սովետական իշխանության օրգանների գործունեության մասին հայ մասսաների մեջ ճիշտ տեղեկություններ տարածելու նպատակով, որին ամեն կերպ փորձում են վարկաբեկել հայ համաձայնողական և բուրժուական պարտիաների թերթերը, Հայկական կոմիսարիատը որոշել է հրատարակել իր օրգանը հայերեն լեզվով և այն լայնորեն տարածել ամբողջ Ռուսաստանում։

Ձեռնամուխ լինելով վերոհիշյալ օրգանի հրատարակմանը, Հայկական կոմիսարիատը պատիվ ունի խոնարհաբար խնդրելու, որ իրեն վերոհիշյալ նպատակով թույլատրվի վերցնել այն տառերը, որոնք պահվում են Բորադանսկու տպարանում... և պատկանում են քաղ. Կրուտունյանցին» (ЦГАОР, ф. 1235, д. 163, л. 60)։

ՌՍՖՍՌ Կենտրոնական Գործադիր Կոմիտեն, հավանություն տալով Հայկական Գործերի կոմիսարիատի նախաձեռնությանը, բավարարում է նրա պահանջը։

Կենտգործկոմի 1918 թվականի ապրիլի 2-ի պատասխան գրության մեջ ասված է.

«Կենտրոնական Գործադիր Կոմիտեն համակրանքով է վերաբերվում Հայ-



կական Կոմիսարիատի որոշմանը՝ հայերեն լեզվով թերթ հրատարակել հայ ժողովրդի մեջ Սովետական իշխանության գաղափարները տարածելու նպատակով և թույլատրում է վերցնել այն տառերը, որոնք պահվում են Բորադանսկու տպարանում և պատկանում են Կրուտունյանցին» (Նույն տեղը, л. 61)։

Ձեռք բերելով հայկական տառերը, Կոմիսարիատը 1918 թվականի մայիսից ստեղծում է իր սեփական տպարանը։ Հրատարակչական գործի կազմակերպման մյուս դժվարությունը թղթի պակասությունն էր, բայց Սովետական կառավարության հոգատարության շնորհիվ տպարանը 1918 թվականի մայիսի սկզբին ապահովվեց նաև թղթով։

Բոլոր դժվարությունները դեռևս հաղթահարված չէին. բացակայում էին որակյալ գրաշարներ և մանավանդ թարգմանիչներ, քանի որ լույս տեսնելիք թերթի նյութերի զգալի մասը պետք է թարգմանվեր ռուսերեն բնագրերից։ Հաղթահարելով այս ու բազմաթիվ նման դժվարությունները՝ Ավանեսովի և Տերյանի գործադրած ջանքերի շնորհիվ 1918 թվականի հունիսի 22-ին լույս է տեսնում Հայկական Գործերի կոմիսարիատի պաշտոնական օրգան «Կոմունիստ» շաբաթաթերթի առաջին համարը։

«Կոմունիստ»-ը բոլշևիկյան պարտիայի և Սովետական իշխանության կենտրոնական թերթերից մեկն էր, որտեղ տպագրվում էին պարտիայի և կառավարության դիրեկտիվները, որոշումները, դեկրետները, կոչերը և պետական մյուս վավերագրերը, Վ. Ի. Լենինի զեկուցումները, ճառերն ու հոդվածները։

Հայ աշխատավորությանը մարքսիզմ-լենինիզմի ուսմունքին ծանոթացնելու նպատակով, «Կոմունիստ»-ը սիստեմատիկորեն տպագրում էր նաև տեսական ընդհանուր հարցերին նվիրված հոդվածներ, Մարքսի, Էնգելսի, Լենինի աշխատություններից հատվածներ, ինչպես նաև ինֆորմացիոն նյութեր Ռուսաստանի ազգային ծայրամասերում և կապիտալիստական երկրներում ծավալվող ռևոլյուցիոն շարժումների մասին։

«Կոմունիստ»-ն իր ջանքերն ամբողջովին նվիրում էր Հայաստանում Սովետական իշխանություն հաստատելու գործին։ Այդ նպատակով նա իր էջերում սիստեմատիկորեն մերկացնում էր հայ ժողովրդի բոլոր թշնամիներին, դիմակազերծ անելով գերմանա-թուրքական իմպերիալիզմի նվաճողական ու հայաջինջ քաղաքականությունը և Անտանտայի իմպերիալիստական պետությունների սուտ ու դիվային նենգությունները Անդրկովկասում և Հայաստանում։

«Կոմունիստ» թերթի բազմաթիվ հոդվածներում և խմբագրականներում դիմակազերծ էր արվում անդրկովկասյան կոնտրռևոլյուցիոն պարտիաների՝ դաշնակների, մենշևիկների և մուսավաթականների հակաժողովրդական, դավաճանական բնույթը, Անդրկովկասյան Սեյմի հակադեմոկրատական էությունը։ Թերթն ընդարձակ հոդվածներ էր տպագրում դաշնակցության մասին, պատմական անհերքելի փաստերով նրան մերկացնում էր որպես հայ ժողովրդի շահերը արևմտյան իմպերիալիզմին վաճառողի։

Թերթի առաջին համարում տպագրված է «Նամակ հայ գյուղացիներին և բանվորներին»՝ Հայկական Գործերի կոմիսարիատի կոչը, որը պատկանում է Վ. Տերյանի գրչին։

Նամակը բացատրում է Հոկտեմբերյան ռևոլյուցիայի իմաստն ու նշանա-

կությունը, մերկացնում նրա թշնամիներին, ցույց տալիս բոլշևիկյան պարտիայի և սովետական իշխանության ազատարար քաղաքականությունը, հայ գյուղացիներին և բանվորներին կոչ է անում համախմբվել Հոկտեմբերյան ռևոլյուցիայի դրոշի ներքո, մտնել նրա կարմիր գնդերի շարքերը, համոզված լինելով, որ Հայաստանի իրական ազատագրումը հնարավոր է միայն Սովետական Ռուսաստանի օգնությամբ։

Անդրկովկասում ռևոլյուցիոն շարժումների արագ տարածումը կատաղեցնում էր կոնտրռևոլյուցիոն պարտիաներին՝ մենշևիկներին, դաշնակներին, մուսաֆաթականներին։ Օտարերկրյա իմպերիալիստների այդ լակեյները ստեղծեցին հակասովետական բլոկ և կատաղի պայքար սկսեցին Սովետական Ռուսաստանի և Անդրկովկասի ռևոլյուցիոն բանվորների ու գյուղացիների դեմ։ Հենց սկզբից Պետրոգրադի պրոլետարիատի հաղթանակի լուրն առնելու պես, նրանք հակառակ Ադրբեջանի, Վրաստանի և Հայաստանի աշխատավորների կամքի, ձեռնամուխ եղան Անդրկովկասը Սովետական Ռուսաստանից անջատելու և այն Սովետական Ռուսաստանի դեմ պատերազմի պլացդարմ դարձնելու գործին։

— Մենք, ինչպես և առաջ, պիտի պնդենք,— նշված է նամակում, որ հայ աշխատավոր գյուղացու և բանվորի միակ բարեկամը Ռուսաստանի բանվորն ու գյուղացին են և այդ գյուղացիների ու բանվորների շա՜ը պաշտպանող, նրանց ձեռքով հաստատված Սովետական իշխանությունը։ «Մենք միշտ քարոզել ենք, և այժմ էլ պիտի անդադար քարոզենք, որ հայ աշխատավոր ժողովրդի փրկությունը Ռուսաստանի բանվորական և գյուղացիական խորհուրդների իշխանության հզորության մեջ է»։

Հայկական գործերի կոմիսարիատը այդ նամակում Սովետական իշխանության և Կոմունիստական պարտիայի անունից դիմելով հայ ժողովրդին՝ կոչ էր անում.

«Եվ ահա մենք, հայ կոմունիստ բոլշևիկներս, կոչ ենք անում Ձեզ, հայ
գյուղացիներ և հայ բանվորներ, միացեք Ռուսաստանի խորհուրդների կարմիր
գնդերին, ուժ տվեք նրանց, որովհետև բանվորական և գյուղացիական Ռու-
սաստանի սոցիալիստական կարմիր գնդերն են, որ պիտի մի գեղեցիկ օր
եղբայրական ձեռք մեկնեն տանջված ու կեղեքված, մահացու վտանգի մեջ
գտնվող հայ գյուղացուն ու բանվորին, միայն Ռուսաստանի բանվորական ու
գյուղացիական խորհուրդների իշխանության կարմիր գնդերն են, որ կարող
կլինեն ազատություն ավետել արյունաքամ երկրին» (ընդգծումը մերն է—
Ս. Ա.), (Վ. Տերյան, Երկեր, 1956 թ., էջ 600)։

Անդրկովկասի վիճակը մարքսիստորեն լուսաբանող հոդվածների շարքում պետք է դասել Հայկ Հովսեփյանի, Պողոս Մակինցյանի, Խորեն Բորյանի, Ավագ Կոծինյանի, Գարագաշի և ուրիշների հոդվածները։

Սովետական Բաքվի՝ անդրկովկասյան ռևոլյուցիոն շարժման փարոսի քախտը «Կոմունիստ»-ի ուշադրության կենտրոնում էր գտնվում։ «Կոմունիստ»-ը բազմաթիվ խմբագրական և այլ հոդվածներ է տպագրել, որտեղ Անդրկովկասի պրոլետարիատին կոչ էր անում կրծքով պաշտպանել Սովետական իշխանության անդրկովկասյան ամրոցը։

«Կոմունիստ» թերթի համարները Հայկական գործերի կոմիսարիատի կոլեգիայի հաստատած ցուցակով առաքվում էին Կոմիսարիատի տեղական բաժանմունքների, լիազորությունների և էմիսարների միջոցով Ռուսաստանի



այն վայրերը, որտեղ կային հայերի մեծ խմբեր, ինչպես նաև ընդհատակյա ճանապարհով Անդրկովկասի քաղաքները և Հայաստան։

Ազգործժողկոմատի ինֆորմացիոն բյուրոյի 1918 թվականի օգոստոսի հաշվետվության մեջ կարդում ենք, որ «չորս հազար օրինակ «Կոմունիստ» է ուղարկված Բաքու, Աստրախան, Ցարիցին, Սարատով, Հյուսիսային Կովկաս» (ЦГАОР, ф. 1318, д. 114, л. 15)։

Հայկական Գործերի կոմիսարիատը 1919 թվականին Արտաշես Կարին-
յանի խմբագրությամբ հրատարակում էր «Կարմիր դրոշակ» թերթը, որը «Կո-
մունիստ»-ի շարունակությունն էր։
«Կարմիր դրոշակ»-ը լույս էր տեսնում Անդրկովկասի համար նոր իրա-
դրության պայմաններում, երբ անգլո-ամերիկյան «ազատարարները» փոխա-
րինելով գերմանա-թուրքական ջարդարարներին՝ գաղութային նոր լուծ էին
դրել Անդրկովկասի ժողովուրդների վզին, գաղութակալական հին «արվեստով»
Բաքվի հրապարակներում կանգնեցրել էին կախաղաններ, բացել հասարակաց
տներ, կառուցել բանտեր։ Նոր տերերի մոտ լակեյական նենգ միջոցներով էին
ծառայում վրացական մենշևիկները, մուսավաթականները և դաշնակները։
Այստեղ ռևոլյուցիոն ուժերի համար ստեղծված մղձավանջն ու ժողովրդի
տնտեսական ծանր դրությունը սաստկանում էր։
«Կարմիր դրոշակ»-ը բացառիկ խոշոր դեր է կատարել Սովետական Ռու-
սաստանի դեմ անգլո-ամերիկյան իմպերիալիզմի լարած դավերը մերկացնե-
լու գործում։ Թերթը բազմաթիվ հոդվածներ է նվիրել Անդրկովկասի կոնտր
ռևոլյուցիոներների՝ դաշնակների, մենշևիկների և մուսավաթականների հակ
ազգային քաղաքականության մերկացմանը։
Թերթի յուրաքանչյուր համար լույս էր տեսնում Անդրկովկասի և Հայաս-
տանի աշխատավորությանը, կոմունիստական կազմակերպություններին
ուղղված մարտական կոչերով ու լոզունգներով. «Միմիայն պրոլետարական
հեղափոխության հաղթանակով կազատագրվի Հայաստանը», «Միմիայն պրո-
լետարական հեղափոխության հաղթանակով կազատագրվեն ճնշված ազգերը»,
«Կեցցե՜ հայ և թուրք պրոլետարների համերաշխ սոցիալիստական
կուռ դանակը, կորչե՛ն նրա թշնամի բուրժուաները, բեգերը և ազնվական-
ները» և այլն։ Թերթն ուներ մի շարք բաժիններ, որոնց միջոցով հայ ժողո-
վրդին հաղորդակից էր անում Սովետական Ռուսաստանի ներքին և արտա-
քին կյանքին, քաղաքացիական կռիվների ընթացքին, կապիտալիստական
երկրների բանվորական շարժմանը և այլն։ Թերթը հաճախ տպագրում էր
Վ. Ի. Լենինի ճառերն ու հոդվածները։ Օրինակ, նրա 3-րդ և 4-րդ համարնե-
րում տպագրվել է Վ. Ի. Լենինի «Երրորդ Ինտերնացիոնալը և նրա տեղը պատ-
մության մեջ» աշխատությունը։
Հայկական Գործերի կոմիսարիատը 1918—1921 թվականներին իր բա-
ժանմունքների միջոցով հայերեն հրատարակում է մի շարք թերթեր, որոնք
խոշոր գործ կատարեցին Մեծ Հոկտեմբերի գաղափարները հայ ժողովրդի մեջ
տարածելու գործում։
Այսպես, 1918 թվականին հրատարակվում է Հայկական Գործերի կոմի-
սարիատի Պյատիգորսկի բաժանմունքի օրգան «Կարմիր օրեր» թերթը, որի
խմբագիրն էր Շավարշ Ամիրխանյանը։ Թերթի ճակատին գրված էր. «Հյուսի-
սային Կովկասի Խորհրդային Սոցիալիստական Հանրապետության Ազգու-
թյունների Կոմիսարիատի Հայկական բաժնի օրգան»։ Այս թերթը հսկայական

դաստիարակչական աշխատանք կատարեց Հյուսիսային Կովկասում կուտակված հայ գաղթականության լայն զանգվածներում, հատկապես Սովետական իշխանության պաշտպանության համար մղվող քաղաքացիական կռիվներում հայ աշխատավորների մասնակցությունն ապահովելու գործում։

1918—1920 թվականներին բոլշևիկյան հայատառ թերթեր են հրապարակվում Սարատովում, Ռոստովում, Աստրախանում և այլուր։

Հայկական Գործերի կոմիսարիատի կենտրոնական ու տեղական մամուլում տպագրված մարտական, բոցաշունչ հոդվածներում, կոչերում անողոքաբար մերկացվում էին հայ ժողովրդի բոլոր թշնամիները։ Այդ թերթերը օգնում էին հայ ժողովրդին հասկանալու Հոկտեմբերյան ռևոլյուցիայի համաշխարհային պատմական նշանակությունը, բացատրում էին հայ ժողովրդի նկատմամբ Կոմունիստական պարտիայի և Ժողովրդական Կոմիսարների Սովետի վարած փրկարար քաղաքականությունը, մերկացնում անդրկովկասյան կոնտրռևոլյուցիայի հակասովետական բնույթը։



Հոկտեմբերյան ռևոլյուցիայի վեհ գաղափարների տարածման հզոր միջոցներից մեկը կոմունիստական գրականության հրատարակումը և առաքումն էր։ Հայկական Գործերի կոմիսարիատը Սովետական իշխանության առաջին դեկրետները, որոնց թարգմանությունն ու առաքմանը Վ. Ի. Լենինը անձամբ էր հետևում, թարգմանել էր մինչև տպարանի ստեղծումը, տեղերն էր ուղարկել իր կոմիսարների և պրոպագանդիստների միջոցով։ Սկսած 1918 թվականի սկզբից կոմիսարիատը կոմունիստական գրականության հրատարակման նախապատրաստական եռանդուն աշխատանք էր կատարում։ Դրա անհետաձգելի անհրաժեշտության մասին Վ. Ավանեսովը և Վ. Տերյանը գրել են.

«Հրատարակչական բաժինը Կոմիսարիատի ամենակարևոր բաժիններից մեկն է, եթե ոչ ամենակարևորը։ Դա պարզ կլինի, եթե նկատի առնենք սոցիալիստական գրականության լիակատար բացակայությունը հայերեն լեզվով։ Դա չափազանց դժվարեցնում է պարտիական աշխատանքը հայ լայն զանգվածների մեջ, որոնք սնվում են բուրժուական և համաձայնողական պարտիաների կողմից առատորեն հրատարակվող նացիոնալիստական ու կոնտրռևոլյուցիոն գրականությամբ։

Ուստի, մենք մեր առջև նպատակ ենք դրել՝ ստեղծել թեկուզ ամենաանհրաժեշտ գրականություն, առանց որի հնարավոր չէ բավարարվել, եթե միայն մենք ցանկանում ենք ազդեցություն ձեռք բերել հայ զանգվածների վրա և կասեցնել մեր թշնամիների ազդեցությունը» (ЦГАОР, ф. 1318, д. 474, л. 112)։

Անդրադառնալով հայերեն լեզվով կոմունիստական գրականության ստեղծման անհետաձգելի խնդրին՝ Վ. Տերյանը գրել է.

«Նկատի ունենալով իդեոլոգիական տիրապետությունը նեղ ազգայնական այն ոգու, որ երկար ժամանակ ժողովրդական լայն խավերին պրոպագանդում էին հայ բուրժուական պարտիաները, գրական հրատարակչական բաժինը ծայր աստիճան անհրաժեշտ է համարում գրավոր եռանդուն պրոպագանդայի և ամենից առաջ գիտական սոցիալիզմի կլասիկների հայերեն թարգմա-



նությունների հրատարակման միջոցով ռևոլյուցիոն կոմունիզմի ոգով լրացնել հայ գրականության գաղափարական բացը» (ЦГАОР, ф. 1318, д. 40, л. 89)։

Չնայած կադրերի խիստ պակաս էր զգացվում և Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների լավագույն ու պատրաստված ուժերը հնարավորություն չունեին մասնակցելու Կոմիսարիատի հրատարակչական աշխատանքներին, այնուամենայնիվ Հայկական կոմիսարիատը կարողացավ իր փոքրաթիվ ուժերով հսկայական աշխատանք կատարել։

Վ. Տերյանը, չնայած իր օրավուր ծանրացող հիվանդությանը և զբաղվածությանը, որոշեց անձամբ թարգմանել պրոլետարիատի հանճար Վ. Ի. Լենինի երկերը։ Նա անհապաղ թարգմանեց Լենինի «Պետություն և հեղափոխություն» և «Կարլ Մարքսի կենսագրությունը» հայտնի աշխատությունները։ Թարգմանական աշխատանք էին կատարում նաև Կոմիսարիատի գրեթե բոլոր աշխատողները։

1918 թվականի ընթացքում Հայկական Գործերի կոմիսարիատը թարգմանել և հրատարակել է 26 անուն գիրք՝ Մարքսի և Լենինի աշխատություններից և քաղաքական, գեղարվեստական գրականության այդ ժամանակվա լավագույն երկերից։ Թարգմանվել և մի քանի անգամ վերահրատարակվել են Սովետական իշխանության առաջին դեկրետները, դեկլարացիաները և դիմումները։

1919—1920 թվականների ընթացքում թարգմանվել, տպագրվել և տարածվել է 63 անուն գիրք, այդ թվում Լենինի հետևյալ աշխատությունները՝ «Նամակ ամերիկյան բանվորներին», «Կարլ Մարքս», «Ռուսաստանի քաղաքական պարտիաները և պրոլետարիատի տակտիկան», «Երրորդ Ինտերնացիոնալը և նրա տեղը պատմության մեջ», «Ինչպես պետք է կոչվի մեր պարտիան», «Թեզիսներ բուրժուական և պրոլետարական դեմոկրատիայի մասին», «Պետություն և հեղափոխություն», «Իմպերիալիզմը որպես կապիտալիզմի բարձրագույն ստադիա» և այլ գործեր։

Այսպիսով, Հայկական Գործերի կոմիսարիատը 1918—1920 թվականներին, չնայած տեխնիկական և թարգմանական դժվարություններին, փոքրաքանակ աշխատակիցների ուժերի գերագույն լարումով թարգմանեց և հրատարակեց մարքսիզմի կլասիկների մի շարք աշխատություններ, քաղաքական ու գեղարվեստական զանազան գրքեր, ինչպես և դասագրքեր հայկական դպրոցների համար։ Մոտ երեք տարվա ընթացքում միայն կոմիսարիատի տպարանում տպագրվեց ութսուն անուն գիրք, որոնց ընդհանուր տիրաժը հասնում էր 422 հազարի, իսկ բաժանմունքների հետ միասին Կոմիսարիատի հրատարակած գրականության տիրաժը անցնում էր կես միլիոնից։



Հայ ժողովրդի մեջ Հոկտեմբերյան ռևոլյուցիայի ամենահաղթ գաղափարները տարածելու մյուս կարևոր միջոցը բոլշևիկյան հրաբորբոք կենդանի խոսքն էր, միտինգները, ժողովները, դասախոսությունները, ընթերցանությունները, կոմիսարների, էմիսարների, ագիտատորների և պրոպագանդիստների ամենօրյա շփումը, աշխատանքը Սովետական Ռուսաստանի հայ բնակչության և հարյուր հազարավոր գաղթականության լայն զանգվածների հետ, ապա ամենուրեք ակումբների, գրադարանների, զանազան կարճատև դասընթացների և քաղդպրոցների լայն ցանցի ստեղծումը։

1918—1919 թվականներին բազմաթիվ դասախոսություններ և զեկուցում-

ներ են կարդացվել հենց Մոսկվայում, Հայկական Գործերի կոմիսարիատում։ Այստեղ զեկուցումներով հանդես են եկել Վ. Ավանեսովը, Ալ. Մյասնիկյանը, Վ. Տերյանը, Բ. Բորյանը, Արտ. Կարինյանը, Պ. Մակինցյանը. Հ. Հովսեփյանը և ուրիշներ։

Կոմունիստական պարտիայի քաղաքականության հրատապ հարցերի պրոպագանդան և Անդրկովկասի իրադրության մասին տրվող զեկուցումներն ու դասախոսություններն է՛լ ավելի ուժեղացան 1918 թվականի վերջին, երբ հայ կոմունիստների կարող ուժերից մի շարք ընկերներ տեղափոխվեցին Սովետական Ռուսաստան և հատկապես Մոսկվա, դրա շնորհիվ կոմունիստական կազմակերպությունները՝ Կոմիսարիատի բաժանմունքներում ավելի ամրապնդվեցին պատրաստված նոր ընկերներով։ 1919 թվականի մայիսի 2-ին Մոսկվայում բացվեց հայկական կոմունիստական սեկցիաների Ստ. Շահումյանի անվան պարտիական ակումբը։

Ստ. Շահումյանի անվան ակումբում յուրաքանչյուր կիրակի կարդացվում էին դասախոսություններ, անց էին կացվում դիսպուտներ, միտինգներ, քաղաքական այլ միջոցառումներ։

Հայկական Գործերի կոմիսարիատի և կոմունիստական կազմակերպությունների ղեկավարությամբ հայ աշխատավորությունը ամենուրեք մասնակցում էր բոլոր տոներին, միտինգներին, շքերթներին։

Չափազանց ուշագրավ է 1919 թվականին Մոսկվայում, Կարմիր հրապարակում կայացած մայիսմեկյան միտինգին հայ աշխատավորության մասնակցությունը։ Առավոտյան ժամի 10-ին Մոսկվայի Հայկական Գործերի կոմիսարիատի աշխատողները, աշխատանքային դպրոցի դասատուները, ուսանողները և աշակերտները մտնում են Կարմիր հրապարակ։

«Միտինգը,— գրում է «Կարմիր դրոշակ» թերթն իր № 2-ում, 1919 թվականի մայիսի 25-ին,— բացվեց բազմահազար բանվոր ու աշխատավոր մասսաների ուռաներով և առաջինը խոսեց ընկեր Լենինը, որի ճառը ծածկվեց բուռն օվացիաներով և ուռաներով»։

Բացի այդ, Հայկական Գործերի կոմիսարիատի և պարտիական կազմակերպությունների նախաձեռնությամբ անց էին կացվում ինտերնացիոնալ ժողովներ, միտինգներ, երեկույթներ։ Հաճախ ինտերնացիոնալ երեկոներ էին անցկացվում Սարատովի, Աստրախանի, Ցարիցինի բաժանմունքներում։

Այսպիսով, Հայկական Գործերի կոմիսարիատն իր հիմնադրման օրից առաջին հերթին զբաղվեց Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի գաղափարները հայ ժողովրդի մեջ տարածելու հարցով։ Այդ նպատակով նա ծավալեց հրատարակչական լայն գործունեություն, հրատարակեց բազմաթիվ թերթեր, հարյուրավոր գրքեր, բրոշյուրներ, պրոկլամացիաներ։ Օգտագործեց ոչ միայն գրավոր, այլև բանավոր խոսքը. հարյուրավոր պրոպագանդիստներ և ագիտատորներ ամենօրյա իրենց կենդանի խոսքով հայ աշխատավորության սիրտը ջերմացնում էին բոլշևիկյան ճշմարտությամբ և պայքարի կոչով բորբոքում նրանց մեջ ընդդեմ բոլոր կեղեքիչների։

Հայկական Գործերի կոմիսարիատի բեղմնավոր գործունեությունը լուրջ և գործոն օգնություն էր Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությանը՝ հայ ժողովրդի ազատագրման, Հայաստանում սովետական կարգեր հաստատելու համար նրա մղած պայքարում։

---

# ՄԱՅԻՍՅԱՆ ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅԱՆ ԳՆԱՀԱՏՈՒՄԸ ԲՈԼՇԵՎԻԿՅԱՆ ՀԱՅ ՄԱՄՈՒԼՈՒՄ

## (1920 Թ. ՄԱՅԻՍ—ՆՈՅԵՄԲԵՐ)

Հ. ՓԱԼԱՔՅԱՆ

Հայաստանում բանվորա-գյուղացիական ռևոլյուցիոն շարժումների հետագա ծավալման, Սովետական իշխանության հաստատման համար մղվող պայքարի հաղթանակի շահերի տեսակետից կարևոր նշանակություն ուներ Մայիսյան ապստամբության փորձի ընդհանրացումը, որը հնարավորություն կտար ոչ միայն ընդգծել այդ ապստամբության վիթխարի նշանակությունը, այլև խորամուխ լինել նրա պարտության պատճառների մեջ, հաշվի առնել նրա դասերը։

Ձեռնելով Մայիսյան ապստամբության գնահատման հետ կապված մի շարք հարցերում թույլ տրված հակամարքսիստական, օպորտունիստական այն սխալների մասին, որոնք բազմիցս խիստ քննադատության են ենթարկվել մեր պատմական գրականության մեջ, հարկ ենք համարում նշել հետևյալը. Մայիսյան ապստամբության նշանակության և նրա պարտության պատճառների մասին գրելիս հատուկ քննարկման չի ենթարկված այդ հարցերին վերաբերող այն հարուստ, արժեքավոր նյութը, որ կա 1920 թ. մայիս—նոյեմբեր ամիսների բոլշևիկյան հայ պարբերական մամուլում։ Իսկ այդ նյութերը կարևոր ու արժեքավոր են ո՛չ միայն պատմական առումով, ո՛չ միայն իբրև պատմության մարքսիստական ուսումնասիրության համար անհրաժեշտ փաստաթղթեր։ Հատկապես կարևոր է շեշտել, որ բոլշևիկյան հայ թերթերը ժամանակին ճիշտ կերպով բնութագրել են Մայիսյան զինված ապստամբության կարևորագույն նշանակությունը և նշել նրա պարտության մի շարք պատճառները։ Այս հանգամանքը զգալի դեր է խաղացել ոչ միայն դաշնակցական սպիտակ տեռորի պայմաններում սոցիալիստական ռևոլյուցիայի մոտալուտ հաղթանակի նկատմամբ աշխատավոր մասսաների հավատը վառ պահելու, նրանց նոր ռևոլյուցիոն մարտերի նախապատրաստելու գործում, այլև օգնել է պարտիական կազմակերպություններին ու բանվորա-գյուղացիական մասսաներին՝ հաշվի առնելու Մայիսյան ապստամբության դասերը իրենց հետագա պայքարում։ Միաժամանակ դա լավագույն ապացույցներից մեկն է բոլշևիկյան մամուլի կազմակերպչական դերի մասին։

Բոլշևիկյան հայ պարբերական մամուլում Մայիսյան ապստամբության հետ կապված հարցերի քննարկման կարևորությունն ավելի ակնառու կդառնա, եթե նկատի ունենանք նաև, որ այն ժամանակվա բուրժուական մամուլը փորձում էր յուրովի գնահատական տալ այդ ապստամբությանը՝ զրպարտելով նրա ղեկավարներին ու մասնակիցներին։

Պատասխանելով Մայիսյան ապստամբության առթիվ բուրժուազիայի ու նրա գրչակների թխած կոնտրռևոլյուցիոն հերյուրանքներին՝ «Բանվորի կռիվ»-ը իր առաջնորդողներից մեկում գրում էր. «...այս մարդուկները պոռում են ապստամբներին երեսն ի վայր. «Հայրենիքի դավաճաններ, վարձկաններ»... «Ալեքսանդրոպոլը հայության ամոթն է,— գրում է «Մշակը»: «Միացնենք ազգի բոլոր կենդանի ուժերը հայրենիքին սպառնացող վտանգը վերացնելու համար»,— գրում է Թիֆլիսի հաստափորների լրագիրը: «Ճիշտ է. բանվորության հաղթանակը՝ ձեր ամոթն է: Հայաստանի աշխատավորությունը կաշխատի ամոթով թողնել Հայաստանի ժողովուրդների թշնամիներին»[1]:

Բուրժուական մամուլը դաշնակցական կառավարությանը հորդորում էր համապատասխան դասեր քաղել Մայիսյան զինված ապստամբության փաստերից:

«Պայքար հակապետական կազմակերպությունների դեմ» վերնագրով խմբագրական հոդվածում հայ կադետների օրգան «Ժողովուրդ»-ը գրում էր. «Ալեքսանդրապոլի դեպքերից խրատական մի շարք դասեր պիտի առնի Հայաստանի ղեկավար հոսանքը...»[2], այսինքն՝ դաշնակցական կառավարությունը: Խմբագրականում մատնանշված են այդպիսի երեք հիմնական դասեր.

ա) Պետք է «ազատ» ու «դեմոկրատիկ» Հայոց հանրապետության մեջ խսպառ վերացվեն «անհատի» իրավունքները, ինքնուրույն մտածելակերպն ու գործունեությունը, որովհետև «անհատի անսահման ազատությունը ստեղծում է միայն անիշխանություն և կործանում ամեն տեսակ արժեքներ: Նման տեսակետ պիտի ունենան Հայաստանի ներկա ղեկավարները»: Պարզ է, որ այդ «անհատ»-ի տակ թերթուկը նկատի ուներ բոլշևիկներին, բանվորա-գյուղացիական ռևոլյուցիոն տարրերին:

բ) Զգալով այն վիթխարի ազդեցությունը, որ Հայաստանի աշխատավորության վրա ունեին Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան, ռուսական պրոլետարիատն ու չքավոր գյուղացիությունը, թերթը դաշնակցական կառավարությանը հորդորում էր առհասարակ վերջ տալ «այն այլանդակ ռուսասիրությանը, որից մեր ժողովրդի որոշ խավերը անգիտակցաբար շարունակում են կառչած մնալ»: Այստեղ խոսում էր հայ բուրժուազիայի սարսափն ու դասակարգային ատելությունը Հոկտեմբերյան ռևոլյուցիայի և Սովետական Ռուսաստանի հանդեպ:

գ) «Հայաստանի կառավարությունը մի շարք օրենքներով և կարգադրություններով պիտի վերացնի բոլոր հակապետական կազմակերպությունների գործունեությունը Հայաստանում»:

Մայիսյան ապստամբությունը որակելով իբրև տիրապետող դասակարգերի և դաշնակցական կառավարության համար մի մեծ փորձանք և նենգափոխված էությամբ ներկայացնելով բանվորա-գյուղացիական մասսաների ռևոլյուցիոն գոտեմարտի բուն նպատակները, բուրժուազիայի «Մշակ»-ը «Ինչպե՞ս բնորոշել Հայաստանի մայիսյան շարժումները» վերնագրով խմբագրականում ճգնում էր համոզել, թե «Հայաստանի դժգոհ ժողովրդի և զորքի ցանկությունն է եղել՝ ոչ թե տապալել իր Հանրապետությունը, այլ միայն վերակազմել մեր կառավարությունը և չափավորել դաշնակցության միահե-

---

[1] «Բանվորի կռիվ», Նոր-Նախիջևան, 1920 թ. № 19:
[2] «Ժողովուրդ», Երևան, 1920 թ. № 21, մայիսի 18:



ծանությունը»[1]: Ունենալով այս կեղծ, իրականությանը հակադիր նախադրյալից, թերթն առաջարկում էր հետագա ռևոլյուցիոն փորձություններից ու փոթորկալի փորձանքներից «խուսափելու» համար՝ հիմնական փոփոխությունների ենթարկել կառավարության կազմը՝ այնտեղ մտցնելով բուրժուական մյուս պարտիաների ներկայացուցիչներին և հոգալ նոր պառլամենտի ընտրության մասին:

Անհրաժեշտ էր մինչև վերջ մերկացնել բուրժուական մամուլի ֆալսիֆիկացիան, ջախջախիչ հակահարված տալ բուրժուազիայի գաղափարական հարձակումներին, բացահայտել դրանց կոնտրռևոլյուցիոն էությունը: Հարկավոր էր ամենալայն մասսաներին ասել ամբողջ ճշմարտությունը Մայիսյան ապստամբության մասին, օբյեկտիվորեն գնահատել այն, ցույց տալ նրա նշանակությունն ու դերը, վերլուծել ստեղծված նոր իրադրությունը:

Այդ խնդիրները կատարելիս բոլշևիկները լայնորեն օգտագործում էին բանավոր և գրավոր ագիտացիան ու պրոպագանդան, մասնավորապես մամուլը: Պարտիական կազմակերպություններին զգալի օգնություն ցույց տվեցին հատկապես «Բանվորի կռիվ»[2], «Կոմունիստ»[3] և «Կարմիր աստղ»[4] բոլշևիկյան հայերեն թերթերը:

Այս թերթերն էլ հենց լուսաբանում էին Մայիսյան ապստամբության հետ կապված հարցերը՝ ապստամբության գնահատումը, պարտության պատճառների վերլուծումը և փորձի ընդհանրացումը:

***

Ի՞նչ ցույց տվեց բոլշևիկների ղեկավարությամբ Հայաստանում կատարված բանվորա-գյուղացիական մասսաների Մայիսյան զինված ապստամբությունը: Նախ և առաջ այն, որ նրանք ըմբռնել են ռևոլյուցիոն ճանապարհով բուրժուազիայի բռնապետությունը տապալելու և բանվորա-գյուղացիական իշխանություն հաստատելու անհրաժեշտությունը: «Դաշնակցական Հայաստանը» վերնագրով հոդվածում «Կոմունիստ»-ը եզրակացնում էր. «Հեղափոխական մեր դարաշրջանը, դասակարգային կռվի երկարամյա փորձը և վերջապես Հայաստանին սահմանամերձ ադրբեջանյան սոցիալիստական կրակը ու մայիսի 1-ի միջազգային քաղաքական երկրաշարժը, հայ պրոլետարիատին միանգամից ազատելով դաշնակցական նացիոնալիզմի շղթաներից, դրել է նրան հեղափոխական դասակարգային կռվի ճանապարհի վրա»[5]:

Մայիսյան ապստամբությունը ցույց տվեց այնուհետև, որ բուրժուական պարտիաները և առաջին հերթին կառավարող պարտիան՝ դաշնակցությունն ապրում է լիակատար ձախողում, իսկ բոլշևիկների պարտիան նվաճել է հա-

---

[1] «Մշակ», Թիֆլիս, 1920 թ. № 45, հունիսի 23:
[2] «Բանվորի կռիվ» — օրգան ՌԿ(բ)Կ Ռոստով Նախիջևանի կազմակերպության հայկական սեկցիայի. լույս է տեսել 1920 թ. մարտի 3-ից մինչև նոյեմբերի 31-ը:
[3] «Կոմունիստ» — օրգան Ադրբեջանի Կոմկուսի կենտրոնական և Բաքվի կոմիտեների. առաջին համարը լույս է տեսել 1920 թ մայիսի 18-ին, հրատարակվում է մինչև այժմ:
[4] «Կարմիր աստղ» — օրգան ՌԿ(բ)Կ Կուբանո-Չեռնոմորյան սեկրետարիատին կից Արևելյան ազգությունների բաժնի. լույս է տեսել 1920 թ. օգոստոսի 1-ից մինչև 1921 թ. դեկտեմբերի 4-ը: № 38-ից (1920 թ. դեկտեմբերի 30) սկսած հրատարակվել է իբրև ՌԿ(բ)Կ Եկատերինոդարի հայկական սեկցիայի օրգան:
[5] «Կոմունիստ», Բաքու, 1920 թ. № 14:

մաժողովրդական հեղինակություն և վիթխարի ուժ՝ դառնալով պրոլետարիատի և չքավոր գյուղացիության ավանգարդն ու ղեկավարը: «Հայաստանի բանվորա-գյուղացիական մասսաները,— ասված է «Կոմունիստ»-ի նույն հոդվածում,— ... կարճ ժամանակի ընթացքում ճաշակելով դաշնակցական կարգերի դառը բաժակը, կազմակերպված Ռուսաստանի Կոմունիստական կուսակցության շարքերում, մի ավելորդ անգամ ապացուցեցին, որ շահագործողներն ու շահագործվողները երբեք դաշնակցել չեն կարող»: Եվ ապա՝ «Ալեքսանդրոպոլի 13 օրվա քաղաքացիական կռիվը, Դիլիջանի ապստամբությունը և Ղազախի կենդանի հեղափոխական իշխանությունը, այդ ցարական դաշնակցության մահվան սկիզբն է: Դա ապացույց է այն բանի, որ դաշնակցական Հայաստանը խորհրդային բովանդակություն ու հեղափոխական կերպարանք է ստանում, դա ցույց է տալիս, որ անդրկովկասյան մասշտաբով սոցիալիստական հեղափոխությունն ունի դաշնակից հեղափոխական մեծ մասսա հանձինս հայ գյուղացիների ու բանվորների»: «Վերջին անգամ» վերնագրով հոդվածում թերթը պատկերավոր համեմատությամբ բնութագրում է դաշնակցության սնանկությունը և հիմնավորում պրոլետարական ռևոլյուցիայի անխուսափելիությունն ու անհրաժեշտությունը՝ դաշնակցական բռնապետությունը տապալելու և հայ ժողովրդին սոցիալական-քաղաքական ազատագրություն տալու գործում, մի ազատություն, որը կարող էր նվաճվել միմիայն բոլշևիկյան պարտիայի ղեկավարությամբ: Քննադատելով դաշնակ հռետորներից մեկի այն հայտարարությունը, թե հայ ժողովրդի բախտը շինում է դաշնակցությունը, ինչպես մի վարպետ դարբին, որն իր մուրճով պիտի խրատի բոլոր նրանց, ովքեր դեմ կգնան «հայ ժողովրդի շահերին», այսինքն՝ դաշնակցությանը, թերթը գրում էր. «...Այսօր արդեն պարզ է, թե ով է վնասում հայ ժողովրդի բախտին: Վնասել է ինքը, ճիշտ որ այդ գլխավոր վարպետը, այսինքն՝ դաշնակցությունը: Եվ ահա դարբնոցի կռան խփող բանվորները իրենց ծանր կռանները բարձրացրել են այդ դավաճան վարպետի գլխին և շուտով նա ցած կընկնի: Դեն կշպրտեն այն բախտը, որ պատրաստում է վարպետ—դաշնակցությունը և կսկսեն նոր բախտ դարբնել:

Այդ նոր բախտի վարպետը Կոմունիստական կուսակցությունն է, այսինքն ինքը՝ Հայաստանի բանվորն ու գյուղացին:

Կորչե՛ն բոլոր դավաճանները: Կեցցե՛ հեղափոխական գյուղացին ու բանվորը»[1]:

Մայիսյան ապստամբության ժամանակ և նրանից հետո Հայաստանում մոլեգնում էր սպիտակ տեռորը: Գնդակահարվում, խոշտանգվում, բանտարկվում էին բոլշևիկները, ապստամբության մասնակից բանվորներն ու գյուղացիները: Դաշնակ մաուզերիստներն ավերում, թալանում էին նրանց տուն ու տեղը, գազանաբար սպանում էին նրանց կանանց ու երեխաներին: «Անդունդի եզրին» սիմվոլիկ վերնագրով հոդվածում տալով դաշնակցական բռնապետության պատկերը, «Բանվորի կռիվ»-ը գրում էր. «Հայ բանվորների և գյուղացիների մայիսյան հեղափոխությունը դաշնակցությունը խեղդեց ամենաբարբարոս վայրագություններով: Տասնյակ հայ գյուղերի բնակչության ամենագիտակից մասը կամ կոտորված է կամ բանտարկված... Դժոխք է Հայաս-

[1] «Կոմունիստ», 1920 թ. № 5:



տանում և այդ դժոխքի մեջ ծիծաղում է միայն «Արևելյան բյուրոյի» յոթգլխանի զազրելի դեմքը»[1]:

Սովետական կառավարությունը, Կոմունիստական պարտիան, ինչպես նաև Ադրբեջանի ու Վրաստանի բոլշևիկյան կազմակերպությունները բողոքի հզոր ձայն բարձրացրին դաշնակցական Հայաստանում բոլշևիկների և բանվորա-գյուղացիական մասսաների նկատմամբ կիրառվող տեռորի դեմ: Այդ մասին բազմաթիվ նյութեր կան մանավորապես Բաքվի «Կոմունիստ»-ում: Թերթում սիստեմատիկաբար գործում էր «Հայաստանի կառավարության գազանությունների դեմ» բաժինը, որտեղ հրապարակվում էին բոլշևիկյան կազմակերպությունների ընդունած բողոքի բանաձևերը[2]: «Կարմիր աստղ»-ը նույնպես տպագրեց մի շարք ինֆորմացիաներ՝ դաշնակների գազանությունների մասին[3], ինչպես նաև Եկատերինոդարի հայ բանվորների ու չքավոր գաղթականների բողոքի միտինգում ընդունված բանաձևը[4]:

Այդ կարգի նյութերում, ինչպես նաև բազմաթիվ այլ հոդվածներում, առաջնորդողներում, պամֆլետներում ու նամակներում բոլշևիկյան թերթերը ոչ միայն մերկացնում էին դաշնակների կառավարության և նրանց անգլոամերիկյան տերերի կոնտրռևոլյուցիոն, բանդիտական կերպարանքը, այլև հաստատ համոզմունք էին ներշնչում ռևոլյուցիոն մասսաներին՝ դաշնակցության մոտալուտ անկման և սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի նկատմամբ: Հաստատելով ռևոլյուցիոն պայքարի կենսունակությունն ու հետևողականությունը, «Մենք պահանջում ենք» վերնագրով առաջնորդողում «Կոմունիստ»-ը իրական կործանում էր գուժում մոլեգնող կոնտրռևոլյուցիայի հասցեին. «Ողորմելիներ, կարծում եք ոչնչացնելով մեր լավ ընկերներին—կոչնչացնեք հեղափոխությունը. ո՛չ, ամեն մի սպանված ընկերոջ տեղն են բուսնում հարյուրավոր, հազարավոր նոր մարտիկներ: Ամեն մի սպանված ընկերոջ արյան կաթիլները մի-մի նետ են դառնալու ու ցցվելու ձեր սրտում...»[5]:

Բոլշևիկյան հրապարակախոսության օրիգինալ նմուշներ են «Կոմունիստ»-ում տպագրված մահախոսականները՝ նվիրված Մայիսյան ապստամբության զոհերի անմահ հիշատակին: Դրանք ոչ թե խելակորույս հեծկլտանքներ էին կամ պատեհ առիթով ասված անհիմն գովասանքի շռայլանքներ, ինչպես վարվում էին բուրժուական թերթերը տիրապետող դասակարգերի այս կամ այն ղեկավարի կամ իդեոլոգի մահվան դեպքում, այլ շահագործվող մասսաներին հավատ ու կամք ներշնչող, նրանց հետագա հերոսական մարտերի կանչող կոչ, անողոք մարտահրավեր՝ նետված ամբողջ բուրժուական հասարակարգին: Ղ. Ղուկասյանի, Հ. Սարուխանյանի և Իշխանյանի մահվան կապակցությամբ գրված «Ընկերների հիշատակին» հոդվածում թերթը գրում էր. «...Այսօր ավելի ուժեղ պայքարի տենչն է բորբոքում մեզ. և ընկածների արյունը կանչում է մեզ վերջնական մարտի: Եվ մենք գիտենք՝ շատ հերոս ընկերներ մեռան, «բայց մեռան չկորան»:

Նրանք կենդանի են մեր հոգում, կենդանի են նաև այն դասակարգի համար, որի շարքերում կռվեցին և մեռան:

[1] «Բանվորի կռիվ», 1920 թ. № 31:
[2] Տես «Կոմունիստ», 1920 թ. №№ 111, 120 և այլն:
[3] Տես «Կարմիր աստղ», Կրասնոդար, 1920 թ. №№ 9, 21 և այլն:
[4] Տես «Կարմիր աստղ», 1920 թ. № 5:
[5] «Կոմունիստ», 1920 թ. № 83:

Քնեցե՛ք, մարտնչող արծիվնե՛ր» [1]։

Ստ. Ալավերդյանի գազանային գնդակահարման բոթն առնելուց հետո «Կոմունիստ»-ը տպագրեց «Ստեփան Ալավերդյան» մահախոսականը։ Դիպուկ համեմատությամբ նշելով, որ կարծես թե ճակատագրի ծաղրով այդ աննկուն ռևոլյուցիոները մորթվեց ոչ թե հին Ռուսաստանի բուրժուա-կադետական սրիկաների կողմից, այլ «ազատ» Հայաստանի արտոնյալ մարդակերների ձեռքով, թերթը գրում էր. «...էլի մեկ անկոտրում հեղափոխական պակասեց կոմունիզմի երկաթե շարքերից։ Եվ դա վերջինը չէ։ Ծանր է մեր ուղին, փշոտ և մահերով լիքը, բայց դա ամենալավ ուղին է մեզ համար»։ Այնուհետև թերթը դասակարգային վրեժխնդրության սպառնալիք էր նետում բուրժուա-կալվածատիրական սև ռեակցիային՝ «ազատ» Հայաստանի այդ արտոնյալ մարդակերներին, ընդգծելով, որ Հայաստանի աշխատավորները պետք է սանձեն դաշնակներին. «Անխնա և անողոք ձեռքով մենք կխլենք ձեզնից ձեր խայթը և մաուզերը։ Ձեր կատարած բոլոր չարագործությունների համար՝ պատասխան պիտի տաք։ Պատրաստվեցեք պատասխանելու» [2]։

Գնահատելով Մայիսյան զինված ապստամբությունը, «Կոմունիստ»-ը գրում էր. «Այսօր մենք բանվորա-գյուղացիական հեղափոխության մասնավոր ամեն մի անհաջողությունից... հետո էլ հավատով ու հաղթելու համոզմունքով կարող ենք ասել՝ հեղափոխությունը հաղթված է, կեցցե՜ հեղափոխությունը»։ Այնուհետև, ընդգծելով, որ ապստամբության ժամանակավոր պարտությունը չպետք է ընկճի մասսաների ռևոլյուցիոն կամքը, թերթը կազմակերպված դասակարգային կռվի էր կոչում նրանց՝ Կարմիր Բանակի, սոցիալիստական Ռուսաստանի օգնությամբ Հայաստանը բուրժուազիայի և օտարերկրյա իմպերիալիզմի լծից ազատագրելու համար։ «Ձեր հեղափոխությունը, հայ գյուղացիներ ու բանվորներ, մեռած չէ՛,— շարունակում էր թերթը,— ձեր հեղափոխությունը մասնավոր ու ժամանակավոր պարտություն է կրել։ Դուք պիտի սկսեք նոր արշավանք ու նոր ընդհանուր կազմակերպված դասակարգային պայքար... դեպի հեղափոխական կռվի մեծ ու ընդարձակ դաշտը, հակահեղափոխության հաջողությունից դեպի հեղափոխական կատարյալ հաղթանակ — այս է հեղափոխության կռվի ճանապարհը» [3]։

Մայիսյան ապստամբությունը քաղաքացիական պատերազմի հիանալի դպրոց հանդիսացավ Հայաստանի բանվորա-գյուղացիական մասսաների համար։ ՌԿ(բ)Պ Վրաստանի Կենտկոմի օրգան «Коммунист Грузии» թերթի բնորոշմամբ դա մի «պայծառ էջ է հայ ժողովրդի պատմության մեջ» [4]։ «Բանվորների, գյուղացիների և կոմունիստ ընկերների թափված արյունը իզուր չպիտի անցնի,— գրում էր «Կոմունիստ»-ը իր կոչերից մեկում։— Նա կկենդանացնի սովից, բռնությունից և կոտորածներից թուլացած Հայաստանը» [5]։ Մայիսյան ապստամբության օրերին Հայաստանի աշխատավորությունը տեսավ փրկության լույսը, դրա համար էլ նա տոկում և իր հեղափոխական կռվով ձգտում է նրան [6]։ «Պարտվեցին ապստամբները, նրանք սպանվեցին,

[1] «Կոմունիստ», 1920 թ. № 31։
[2] «Կոմունիստ», 1920 թ. № 80։
[3] «Կոմունիստ», 1920 թ. № 4։
[4] «Коммунист Грузии», 1920 № 9։
[5] «Կոմունիստ», 1920 թ. № 21։
[6] Տես նույն տեղում։



բայց չսպանվեց նրանց գործը,— գրում էր «Բանվոր»-ը,— ...Շնորհիվ մայիսի 1-ի ապստամբներին, շնորհիվ նրանց ցանած սերմերին մենք կարողացանք ունենալ նոյեմբերին մեր Կարմիր Հոկտեմբերը» [1]։

* * *

Մայիսյան ապստամբության պարտության պատճառների մասին գրելիս բոլշևիկյան հայ թերթերը առաջին հերթին նշում էին Արմենկոմի և Ռազմառևոլյուցիոն կոմիտեի անվճռականությունը, տատանվող, բարեհոգի վերաբերմունքը թշնամիների նկատմամբ, մի հանգամանք, որը հնարավորություն տվեց կոնտրռևոլյուցիոն ուժերին ժամանակ շահելու, համախմբվելու և պապ՝ արյան մեջ խեղդելու զինված ապստամբությունը։ Նշելով Մայիսյան ապստամբության ժամանակ թույլ տրված սխալները, «Կարմիր աստղ»-ը գրում էր. «Այստեղ ընկերները մի պատմական սխալ են անում... Նորակազմ բանվորական իշխանությունը չի ուզում իր ձեռքը արյունով ներկել և ակտիվ հակահեղափոխականներին ոչնչացնել։ Սակայն դաշնակցական կառավարությունը, որ դեռևս նստած էր Երևանում, ինչպես երևում էր արյունից այնքան էլ չէր վախենում. այդ տեսակետից նա ավելի էր փորձված» [2]։

Ապստամբած մասսաներին կոչ անելով ռևոլյուցիոն վճռականության և հետևողական, դասակարգային պայքարի՝ «Կոմունիստ»-ը հայ աշխատավորին դիմում էր հետևյալ խոսքերով. «Լսիր և ականջիդ օղ արա հետևյալը. «Առանց հայ բուրժուազիայի դեմ կռիվ մղելու, դու չես գտնի ո՛չ խաղաղություն, ո՛չ ազատություն։

Սեղմիր կոշտացած բռունցքդ ամուր ու զարկ հայ ազայի, հարուստի ու բոլոր տզրուկների ճակատին։ Թող այդ զարկերի տակ ընկնեն քո չարքաշ աշխատանքդ, քո արյուն քրտինքդ ծծող կեղեքիչները, թող ընկնեն քո կյանքի դահիճները։

Սկիզբ է առնում մի նոր ժամանակ, երբ պետք է վերջանան հայ աշխատավորության տառապանքներն ու սարսափները։

Հայաստանը պիտի լինի միայն խորհրդային երկիր» [3]։

Բնորոշ է, որ Մայիսյան ապստամբության դասերը վերլուծելիս, բոլշևիկյան հայ մամուլը ելակետ էր ընդունում զինված ապստամբությանը որպես արվեստի մոտենալու մարքս-լենինյան ցուցումները, որոնք, ինչպես նշում էր Վ. Ի. Լենինը, հանգում էին հետևյալին.

«1. Երբեք չխաղալ ապստամբության հետ, այլ սկսելով այն՝ հաստատ իմանալ, որ պետք է մինչև վերջը գնալ։

2. Անհրաժեշտ է ուժերի մեծ գերակշռություն հավաքել վճռական վայրում, վճռական մոմենտին, որովհետև հակառակ դեպքում թշնամին, ունենալով ավելի լավ նախապատրաստություն ու կազմակերպություն, կոչնչացնի ապստամբներին։

3. Քանի որ ապստամբությունն սկսված է, պետք է գործել ամենամեծ

[1] «Բանվոր»—օրգան ՌԿ(բ)Պ Դոնի շրջանային կոմիտեի հայկական սեկցիայի, Ռոստով-Նախիջևան, 1921 թ. № 13։
[2] «Կարմիր աստղ» - Կրասնոդար, 1920 թ. № 3։
[3] «Կոմունիստ», 1920 թ. № 7։

վճռականությամբ և անպատճառ, անպայման անցնել հարձակման: «Պաշտպանվելը զինված ապստամբության մահն է»:

4) Պետք է աշխատել թշնամուն հանկարծակիի բերել, գտնել այն մոմենտը, երբ նրա զորքերը ցրված են:

5) Պետք է աշխատել ամեն օր, թեկուզ փոքրիկ հաջողություններ ձեռք բերել (կարելի է ասել ամեն ժամ, եթե գործը վերաբերում է մի քաղաքի), ինչ էլ լինի՝ պահպանելով «բարոյական գերակշռությունը»»[1]:

Պրոպագանդելով զինված ապստամբության հաղթական կազմակերպման վերաբերյալ մարքսիզմ-լենինիզմի կարևորագույն մաքերը՝ «Կոմունիստ»-ը ուղղակի գրում էր. «Ամեն մի հեղափոխական, քաղաքացիական կռիվ ունի իր զարգացման որոշ օրենքները: Ու վերջանում է նա հաջողությամբ, առանց ավելորդ զոհերի միայն այն ժամանակ, երբ կռվողը հետևում է այդ օրենքներին»[2]: Այնուհետև, նշելով այդ օրենքներից մի քանիսը և ռևոլյուցիոն մասսաներին կոչ անելով հետևել դրանց, թերթը շարունակում էր. «Բավական չէ գիտակցել կռվի անհրաժեշտությունը և տարվել նրանով: Հեղափոխականը պիտի լինի նաև վճռական և անողոք դեպի թշնամին:

Ոչինչ այնքան կործանիչ չէ հեղափոխականի համար, որքան հեղափոխականի մեղմությունը:

Նախքան քաղաքացիական կռվի դուրս գալը լավ չափիր քո ուժը. բայց երբ մտար կռիվ, էլ ետ չնայես: Գնա առաջ, խորտակիր այն ամենը, ինչ որ դեմ է քեզ, խանգարում է քո կռվի հաջողությանը»:

Մայիսյան ապստամբության պարտության մյուս պատճառը բոլշևիկյան մամուլը համարում էր Արմենկոմի և Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեի կազմակերպչական աշխատանքի թուլությունը: Ինչպես հայտնի է, նրանք չկարողացան միավորել Հայաստանի տարբեր վայրերում բռնկված բանվորա-գյուղացիական զինված ապստամբությունները, ստեղծել միասնական ղեկավար կենտրոն: «Բոլորի համար պարզ է,— գրում էր «Կոմունիստ»-ը.— որ քաղաքացիական կռիվը և ընդհանրապես հեղափոխությունը պահանջում է մասսաների կազմակերպված կոմպակտ ուժ. և այնտեղ, ուր բացակայում է կազմակերպությունը, այնտեղ, հասկանալի է, հաղթանակի մասին խոսք լինել էլ չի կարող...»[3]:

«Բանվոր»-ը գրում էր. «Հեղափոխությունը սկսվեց Ալեքսանդրապոլում և տարածվեց ամբողջ Հայաստանում, բայց անկազմակերպ լինելու շնորհիվ պարտվեց, և հայ աշխատավոր մասսան չկարողացավ մայիսին 1-ին տոնել յուր Կարմիր Հոկտեմբերը»[4]:

Արմենկոմի և Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեի աշխատանքի այդ բացը ժամանակին նշել է նաև Մայիսյան ապստամբության ղեկավարներից մեկը՝ Ս. Ղարիբջանյանը: Ապստամբությունից անմիջապես հետո, բանտում, Մայիսյան ապստամբության մասին կատարած գրանցումների մեջ, ապստամբության պարտությունը Ղարիբջանյանը բացատրում է նաև նրանով, որ «չկար

1 Վ. Ի. Լ ե ն ի ն, Երկեր, հ. 26, էջ 211:

2 «Կոմունիստ», 1920 թ. № 8:

3 «Կոմունիստ», 1920 թ. № 18:

4 «Բանվոր», Խոստով-Նախիջևան, 1921 թ. № 13:



հաղթանակի առաջին պայմանը՝ ապստամբ մասսաների միասնություն», «չկար լավ կազմված միասնական պլան, ամուր ղեկավարություն»[1]:

Կարևոր է նշել նաև, որ Մայիսյան ապստամբության փորձը վերլուծելիս և նրանից բխող ռևոլյուցիոն դասերը պրոպագանդելիս բոլշևիկյան հայ մամուլը խնդիր էր դնում հետևել ՌԿ(բ)Պ օրինակին, որը տվել էր անցյալում կատարված պրոլետարական ռևոլյուցիայի պատմական փորձն օգտագործելու կլասիկ օրինակ: «Ռուսաստանի Կոմունիստական կուսակցությունը,— գրում էր «Կարմիր աստղ»-ը,— օգտագործելով պատմական անցյալը՝ չկրկնեց այլևս այն սխալները, որը գործել էին Փարիզյան կոմունայի ղեկավարները. նա, ինչպես այդ նկատել էին Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը «Կոմունիստական մանիֆեստի» նախաբաններից մեկում, հեղափոխական ճիշտ տակտիկա բռնելով՝ սկզբից ևեթ բոլորովին քանդեց հին պետական ապարատը և ամեն տեղ ստեղծեց նոր հեղափոխական կառավարության օրգաններ»[2]:

Մայիսյան ապստամբության փորձի ընդհանրացումը և նրա դասերի վերլուծումը բոլշևիկյան հայ պարբերական մամուլի կողմից ուներ ոչ միայն, ավելի ճիշտ՝ ոչ այնքան թեորիական, որքան պրակտիկ-քաղաքական նշանակություն. մանավանդ, եթե նկատի ունենանք, որ Մայիսյան ապստամբության ճնշումից հետո Հայաստանի մի շարք շրջաններում (Ղազախ-Շամշադինում, Զանգեզուրում, Դիլիջանում) բանվորա-գյուղացիական մասսաները, բոլշևիկների ղեկավարությամբ ու Կարմիր Բանակի զորամասերի օգնությամբ, շարունակում էին պայքարը Սովետական իշխանության համար: Քաղաքացիական կռիվները այդ վայրերում չդադարեցին մինչև Հայաստանում սովետական կարգերի հաստատումը:

Կոնտրռևոլյուցիոն ուժերին չհաջողվեց մինչև վերջ ջախջախել Հայաստանի կոմունիստական կազմակերպությունները: Խոր ընդհատակում նրանք վերսկսեցին իրենց աշխատանքները: «Կոմունիստները Հայաստանում» անստորագիր հոդվածում «Կարմիր աստղ»-ը գրում էր. «Ամենածանր ու դժվարին պայմաններում, մինչև իսկ այն ժամանակ, երբ պառլամենտը ընդունեց մի օրինագիծ, որով կառավարությունը անխնա կռիվ հայտարարեց բոլշևիկների դեմ, կուսակցության աշխատանքը ոչ մի րոպե կանգ չի առել. նա բաց է թողել թռուցիկներ, լրագրեր, ժուռնալներ և այլն... Կոմունիստական կուսակցությունը աճում է Հայաստանում և առաջ է գնում ուժեղ թափով: Մոտենում է Հայաստանի ազատագրման ժամը ստրկացումից և պարզ է, որ այդ Կոմունիստական կուսակցությանն է վերապահված ղեկավարելու բանվորա-գյուղացիական շարժումը Հայաստանում»[3]:

Հայաստանի կոմունիստական կազմակերպությունները, ՌԿ(բ)Պ Կենտկոմի, Կովկասյան բյուրոյի և ՀԿ(բ)Պ Կենտկոմի ղեկավարությամբ, բանվորներին ու աշխատավոր գյուղացիությանը մոբիլիզացնում էին հանուն սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի: Այդ պայքարում բոլշևիկները հմտորեն օգտագործում էին նաև մամուլը՝ պարտիայի փորձված և հատու զենքերից մեկը:

1 Գ. Բ. Ղ ա ր ի բ ջ ա ն յ ա ն — «Հայաստանի Կոմունիստական կազմակերպությունները Սովետական իշխանության հաղթանակի համար մղված պայքարում», Հայպետհրատ, 1955 թ., էջ 378:

2 «Կարմիր աստղ», 1920 թ. № 34:

3 «Կարմիր աստղ», 1920 թ. № 23:

## «ՊԱՐՏԻԱՅԻ ՄԻԱՍՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ»

*Հայպետհրատը լույս է ընծայել մի գրքույկ, որում ամփոփված են պարտիայի միասնության մասին Վլադիմիր Իլյիչ Լենինի ելույթները ՌԿ(բ)Պ X համագումարում։*

*Գրքույկում զետեղված են «Ճառ ՌԿ(բ)Պ X համագումարի բացման ժամանակ», «Հաշվետվություն ՌԿ(բ)Պ X համագումարին Կենտկոմի քաղաքական գործունեության մասին», «Եզրափակման խոսք ՌԿ(բ)Պ X համագումարին Կենտկոմի հաշվետվության առթիվ», «ՌԿ(բ)Պ X համագումարի բանաձևի սկզբնական նախագիծը պարտիայի միասնության մասին», «ՌԿ(բ)Պ X համագումարի բանաձևի սկզբնական նախագիծը սինդիկալիստական և անարխիստական թեքման մասին մեր պարտիայում», «Զեկուցում - պարտիայի միասնության և անարխո-սինդիկալիստական թեքման մասին ՌԿ(բ)Պ X համագումարում», «Եզրափակման խոսք պարտիայի միասնության և անարխո-սինդիկալիստական թեքման մասին զեկուցման առթիվ», «Դիտողություններ պարտիայի միասնության մասին բանաձևի Ռյազանովի առաջարկած ուղղման առթիվ» և «Ճառ ՌԿ(բ)Պ X համագումարի փակման ժամանակ»։*

*Այս ամենը ընթերցողին պարզ գաղափար են տալիս Կոմունիստական պարտիայի անխորտակելի միասնության, նրա համախմբվածության համար մեծ առաջնորդի մղած պայքարի, նրա ջանքերի մասին։ Վ. Ի. Լենինը պարտիայի միասնության մեջ էր տեսնում նրա ուժի և հզորության անհրաժեշտ պայմանը, այն բանի երաշխիքը, որ պարտիան հաջողությամբ կկատարի աշխատավորների առաջնորդի և կազմակերպչի յուր դերը։*

*ՌԿ(բ)Պ X համագումարը Լենինի առաջարկով որոշում ընդունեց պարտիայի ներսում վերջ տալ օպոզիցիային, ցրել բոլոր ֆրակցիոն խմբերը, թույլ չտալ ֆրակցիոն և ոչ մի ելույթ։ «Հարկավոր է,— ասում էր Վլադիմիր Իլյիչը,— միասնական համերաշխ աշխատանք, միասնական կամք»։*

*Համագումարը ընդունեց պարտիայի միասնության մասին որոշում, որը գրել է Վ. Ի. Լենինը։ Որոշման մեջ ասված է. «Որպեսզի խիստ կարգապահություն կենսագործվի պարտիայի ներսում ու ամբողջ սովետական աշխատանքում և առավելագույն միասնություն ձեռք բերվի ամեն մի ֆրակցիոնականություն վերացնելիս, համագումարը Կենտրոնական Կոմիտեին լիազորում է կարգապահությունը խախտելու կամ ֆրակցիոնականության վերածնելու կամ այն թույլ տալու դեպքում կիրառել պարտիական տույժերի բոլոր միջոցները, ընդհուպ մինչև պարտիայից վտարելը, իսկ Կենտկոմի անդամների վերաբերմամբ՝ նրանց փոխադրելը թեկնածուների և նույնիսկ, որպես ծայրահեղ միջոց, վտարել պարտիայից» (էջ 64)։*

*Այս գրքույկն ընթերցողներին կօգնի ճիշտ պատկերացում կազմելու պարտիայի միասնության անհրաժեշտության մասին, որին Վ. Ի. Լենինը չափազանց մեծ կարևորություն էր տալիս և վճռական ու անխնա պայքար ծավալում բոլոր նրանց դեմ, ովքեր փորձում էին սասանել բանվոր դասակարգի ավանգարդի միասնությունը։*

---

Խմբագրության հասցեն՝
Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք,
Հեռ. 2—03—18, 2—56—92, 2—04—66.
Адрес редакции: Ереван, здание
ЦК КП Армении. тел. 2—03—18,
2—56—92, 2—04—66.

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ
ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր),
ԲԱՐԱՅԱՆ Լ. Հ., ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ ՀՈՎՀ. Մ.,
ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՀԱՅՐՅԱՆ
Գ. Ս., ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ ԱՐ. Ն., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ
Վ. Ս., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս.։

ՎՖ 10278 Պատվեր 2559 Տիրաժ 5800
Ստորագրված է տպագրության 12/XI 1957 թ.։
Տպ. 8 մամուլ, մամուլում 63.840 նիշ։
ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Գլխհրատի № 6 տպարան, Երևան, Լենինի պող. № 51։

